## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն



# Содержание



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇՈՎ

Բոլորում է ընթացիկ հնգամյակի երրորդ տարին: Ամեն տեղից՝ քաղաքներից ու գյուղերից, գործարաններից ու հանքերից, կոլտնտեսություններից ու սովխոզներից, գիտական հաստատություններից ուրախալի լուրեր են հաղորդվում ձեռք բերված նվաճումների մասին: Դրանք վկայում են, որ սովետական ժողովուրդը իրականացնելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները՝ լուծում է մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն և առաջնահերթ խնդիրը:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները, նվաճելով իշխանությունը, ձեռնամուխ եղան նոր հասարակարգի կառուցմանը:

Մարդկային հասարակության պատմությունը երբեք չի տեսել էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի վերելքի այնպիսի թռիչք, որպիսին կատարել ու կատարում է Սովետական Միությունը: Ավելի քան կես դարի փորձը ցույց է տալիս, որ սոցիալիստական պլանային էկոնոմիկան, ի տարբերություն կապիտալիստականի, չգիտի ո՛չ ճգնաժամ, ո՛չ էլ արտադրության անկում: Այն առաջ է ընթացել և ընթանում է հաստատուն ու լայն քայլերով: Եվ այդ հիմնականում արդյունք է այն բանի, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը խորտակելով շահագործողների տիրապետությունը, աշխատավորներին փրկեց սոցիալական բոլոր կապանքներից, լայն հնարավորություն ընձեռեց անհատի ընդունակությունների և տաղանդի ազատ զարգացման, նրա ստեղծագործական նախաձեռնության ծավալման համար: Կապիտալի աշխարհում բանվորի մշտական ուղեկիցը գործազրկության ուրվականն է, որը ահ ու սարսափ է թողնում նրա վրա: Սոցիալիստական հասարակարգում աշխատավորը վաղուց է ազատվել այդ չարիքից և վստահ է իր վաղվա օրվա նկատմամբ:

Պատմության մեջ մեծագույն, սոցիալիստական հեղափոխությունը ղեկավարած կոմունիստական կուսակցության գլուխը կանգնած էր հանճարեղ մտածող, աննկուն հեղափոխական Վլադիմիր Իլյիչ Լենինը: Նա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ոգեշնչողն ու կազմակերպիչն էր: Իմպերիալիստական դարաշրջանի պատմական նոր պայմաններում Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմի տեսությունը և այն նոր աստիճանի բարձրացրեց: Այդ տեսությունը գաղափարապես զինեց կուսակցությանը,

բանվոր դասակարգին՝ պայքարելու բուրժուազիայի տիրապետության դեմ, նրվաճելու քաղաքական իշխանությունը:

Սովետական մարդու վեհ նպատակն է՝ սրբությամբ կատարել իր պարտքը հայրենիքի հանդեպ, հասարակության հանդեպ: Այդ անաղարտ զգացմունքները նրան մղում են դյուցազնական սխրանքների՝ կատարելագործել արտադրության տեխնիկան, բարելավել տեխնոլոգիան, բարձրացնել ավտոմատացման մակարդակը, դրանով իսկ նպաստել ժողովրդական տնտեսության զարգացման ծրագրի իրագործմանը:

Մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունների վառ վկայությունն են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1968 թվականի ինն ամսվա պլանների կատարման արդյունքները: Դրանք հակիրճ շարադրված են ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության այս տարվա հոկտեմբերի հաղորդագրությունում, որի յուրաքանչյուր թիվ պարունակում է մեծ բովանդակություն:

Աշխատավորական լայն զանգվածները, ծավալելով սոցիալիստական մրցություն հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար՝ նոր բնագծի են հասել հանրային արտադրության ավելացման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում: Արդյունաբերության աշխատողները գերակատարել են արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի իրացման ծավալի ու արտադրության ինն ամսվա պլանները: Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրության աճը կազմել է 8,2 տոկոս: Բայց պատկերն ավելի ցայտուն է, երբ այդ տոկոսի ետևը մենք կարդում ենք բացարձակ թվեր: 1965 թ. հունվար—սեպտեմբեր ամիսներին ՍՍՀՄ-ում արտադրվել է էլեկտրաէներգիա 341 միլիարդ կիլովատ-ժամ, արդյունահանվել է նավթ՝ 180, ածուխ՝ 432 միլիոն տոննա, գազ՝ 93,6 միլիարդ խորանարդ մետր, ձուլվել է չուգուն՝ 49,4, պողպատ՝ 67,6 միլիոն տոննա, թողարկվել է ավտոմեքենա 460, տրակտոր 263 հազար հատ, արտադրվել է 53 միլիոն տոննա ցեմենտ: Այս տարվա ինն ամսում արտադրվել է էլեկտրաէներգիա 440 միլիարդ կիլովատ-ժամ, արդյունահանվել է նավթ՝ 230, ածուխ՝ 445 միլիոն տոննա, գազ՝ 125 միլիարդ խորանարդ մետր, ձուլվել է չուգուն՝ 59, պողպատ՝ 79,5 միլիոն տոննա, թողարկվել է ավտոմեքենա՝ 595, տրակտոր՝ 315 հազար, մետաղահատ հաստոց՝ 149 հազար հատ: Արտադրության այդպիսի աճումը ցույց է տալիս, որ Սովետական Միությունը դարձել է զարգացած էներգետիկայի, ժամանակակից մետալուրգիայի, առաջնակարգ մեքենաշինության, էլեկտրոնիկայի և քիմիայի երկիր: Այսօր սովետական ինդուստրիան ի վիճակի է լուծելու արտադրական ու տեխնիկական առավել բարդ խնդիրներ, ապահովելու երկրի ամբողջ էկոնոմիկայի զարգացման արագ տեմպ, զինված ուժերը հագեցնելու ռազմական նորագույն տեխնիկայի բոլոր տեսակներով:

Պահպանելով ծանր ինդուստրիայի աճի առավել բարձր տեմպեր, կուսակցությունը վերցրել է բնակչության նյութական ու կուլտուրական պահանջմունքները անմիջականորեն բավարարող արդյունաբերության ճյուղերի զարգացման, դրանց տեխնիկական վերակառուցման, հումքային ու էներգետիկ բազայի ամրապնդման և ընդլայնման կուրս: Դրա հիանալի պտուղներն արդեն ակնհայտ են: 1965 թվականի առաջին 9 ամսում արտադրվել է գործվածք՝ 4110 միլիոն քառակուսի մետր, կարի արդյունաբերության իրեր՝ 6,8 միլիարդ



ռուբլու, ռադիոընդունիչ և ռադիոլա՝ 2,612 հազար, հեռուստացույց՝ 1,166 հազար հատ, կահույք 1,3 միլիարդ ռուբլու: Այս տարվա նույն ժամանակաշրջանում արտադրվել է միայն բամբակի գործվածք՝ 4581 միլիոն քառակուսի մետր, կարի արդյունաբերության իրեր՝ 9,8 միլիարդ ռուբլու, ռադիոընդունիչ և ռադիոլա՝ 5102 հազար, հեռուստացույց՝ 4171 հազար հատ, կաշվե կոշիկ 441 միլիոն զույգ, յուղ, պանիր և այլ կաթնամթերքներ (կաթի վերածած) 36 միլիոն տոննա:

Արդյունաբերության բնագավառի աշխատողները երկրին տալիս են ոչ միայն շատ ապրանքներ, այլև հետզհետե բարելավում դրանց որակը, ընդլայնում ասորտիմենտի տեսակները, իջեցնում ինքնարժեքը, յուրացնում արտադրանքի նորանոր արուրքներ:

Լայն սպառման ապրանքների արտադրության զարգացման հետ միասին մեր կուսակցությունն ու կառավարությունը աշխատավորության բարեկեցության աճը հիմնականում ապահովում են բանվորների ու ծառայողների աշխատավարձի, կոլտնտեսականների դրամական ու բնամթերային եկամուտների բարձրացման, թոշակների ավելացման, հարկերի կրճատման ու վերացման միջոցով, ինչպես և բնակչության որոշ կարիքները ձրի բավարարելու նպատակով հանրային ֆոնդերի հատկացումների ավելացմամբ:

Դրա շնորհիվ աշխատավորների ռեալ եկամուտները, բնակչության մեկ շնչի հաշվով, 1966—1968 թվականներին կաճի ավելի քան 20 տոկոսով, կամ տարեկան միջին հաշվով՝ 6,6 տոկոսով:

Գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացման հիման վրա, մեքենայացման և մելիորացիայի լայն զարգացման շնորհիվ զգալիորեն աճել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Միայն անցյալ տարի գյուղին մատակարարվել է տրակտորներ՝ 287, հացահատիկի կոմբայններ՝ 96, բեռնատար ավտոմեքենաներ՝ 134 հազար հատ, հանքային պարարտանյութեր՝ 34 միլիոն տոննա: Մինչև այս տարվա հոկտեմբերի 25-ը պետության ռեսուրսներում ստացվել են 68,3 միլիոն տոննա (4,2 միլիարդ փութ) հացահատիկ, այդ թվում 47560 հազար տոննա ցորեն: Գերակատարվել են պարենային կուլտուրաների, հնդկացորենի, բրնձի, գարու և լոբազգի կուլտուրաների գնումների պլանները: Կատարվել են մսի, կաթի, ձվի և բրդի մթերումների տարեկան պլանները, որը անցյալ տարվա մակարդակից բարձր է: Այդ գյուղի աշխատավորության եռանդուն գործունեության շնորհիվ է, որ Միության մսեղենի արդյունաբերության ձեռնարկությունները այս տարվա ինն ամսում արտադրել են 4,9 միլիոն տոննա միս (առանց կոլտնտեսությունների արտադրանքի), որը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 175 հազար տոննայով ավելի է:

Այս տարվա հոկտեմբերի վերջին տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ընդգծելով գյուղատնտեսության բնագավառում մեր ձեռք բերած հաջողությունները, միաժամանակ նշեց ուղիներ նրա առաջընթացի համար, որը կապահովի հնգամյակի խնդիրների անթերի լուծումը:

Հնգամյակի երրորդ տարում նշանակալից հաջողություններ են ձեռք բերել Սովետական Միության գիտահետազոտական կազմակերպություններն ու հաստատությունները, գիտնականների պանծալի բանակը: Լուծվել են գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմներ, ստեղծվել և արմատավորվել են նոր, բարձր արտադրողական տեխնիկա, առաջավոր տեխնոլոգիա և արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ:

Աշխարհում առաջին անգամ Սովետական տիեզերական ապարատը («Զոնդ—5» ավտոմատ կայանը), 1968 թ. սեպտեմբերին, պտտվելով լուսնի շուրջը, տիեզերական երկրորդ արագությամբ հաջողությամբ վերադարձավ երկիր, բերելով մեծ ծավալի գիտական ինֆորմացիա: Այս տարվա հոկտեմբերի 26-ին հզոր մղիչ հրթիռի միջոցով Երկրի արհեստական արբանյակի ուղեծիր դուրս բերվեց «Սոյուզ—3» տիեզերանավը, որը վարում էր Սովետական Միության քաղաքացի, տիեզերագնաց օդաչու, Սովետական Միության հերոս, ՍՍՀՄ վաստակավոր փորձարկու-օդաչու, գնդապետ Գեորգի Տիմոֆեևիչ Բերեգովոյը:

«Սոյուզ—3» տիեզերանավի թռիչքը տևեց չորս օր: Տիեզերագնաց օդաչու Գեորգի Բերեգովոյի կատարած գիտական ու տեխնիկական հետազոտությունների ծրագիրը ավարտվեց հաջողությամբ: Հոկտեմբերի 30-ին «Սոյուզ—3-ը» վայրէջք կատարեց Սովետական Միության տերիտորիայի առաջադրված շրջանում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ազատություն բերեց անցյալում ցարական Ռուսաստանի ճնշված բոլոր ժողովուրդներին: Կոմունիստական կուսակցությունը անշեղորեն իրագործելով ազգային քաղաքականության լենինյան ծրագիրը, հաստատեց մեր երկրի բոլոր ժողովուրդների սոցիալիստական եղբայրությունը: Հաղթահարելով տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, անցյալի ազգային երկպառակության մնացորդները, ցարական Ռուսաստանի նախկին ծայրամասերը վերածվեցին հզոր ինդուստրիալ սոցիալիստական հանրապետությունների: Ընթանալով սոցիալիզմի ուղիով, նրանք պատմական կարճ ժամանակաշրջանում յոթ մղոնանոց քայլ կատարեցին իրենց էկոնոմիկայի զարգացման, գիտության ու կուլտուրայի բարգավաճման բնագավառներում:

Մեծ հոկտեմբերի կենարար արևի ճառագայթները 1920 թվականի նոյեմբերի 29-ին հասան նաև հայկական լեռնաշխարհը: Նոր կյանքի հավերժական գարուն բացվեց հայ ժողովրդի համար, որը դարեր շարունակ զրկված լինելով պետականությունից, հալածվելով օտարերկրյա ոսոխների և սեփական շահագործողների կողմից, կանգնել էր անդունդի եզրին: Այդ ողբերգական պահին նրան օգնության ձեռք մեկնեցին կոմունիստական կուսակցությունը, Սովետական Ռուսաստանը: Իր ուսերից թոթափելով օտար նվաճողների և դաշնակցական բախտախնդիրների լուծը, հայ ժողովուրդը վերականգնեց իր պետականությունը, փրկվեց ֆիզիկական բնաջնջումից և ձեռնամուխ եղավ երկրի վերաշինմանն ու զարգացմանը:

Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, մեր երկրի բոլոր ժողովուրդների, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության շնորհիվ Հայաստանը դարձել է բարձր զարգացած ինդուստրիալ, տեխնիկապես հագեցված առաջավոր գյուղատնտեսական, ծաղկող գիտության ու կուլտուրայի Սովետական Սոցիալիստական Հանրապետություն: Նա անցել է ընդամենը 48 տարվա ճանապարհ: Բայց դրանք եղել են քրտնաջան աշխատանքի ու մաքառումների տարիներ, տարիներ որոնց ընթացքում շինարար, ստեղծագործ հայ ժողովուրդը գրեթե ամայի տեղում քարը քարի վրա դնելով կառուցել է արդյունաբերական հսկաներ, տասնյակ գյուղեր, ավաններ ու քաղաքներ, ծաղկեցրել անապատներ, ստեղծել կուլտուրայի օջախներ, գիտական հաստատություններ, որոնցից շատերը համաշխարհային հռչակ են վայելում:



Սովետական Հայաստանի առաջընթացը ցույց տալու համար հարկ չկա շատ հեռու գնալու, բավական է միայն այս հնգամյակի անցած ժամանակաշրջանի ցուցանիշները վկայակոչել: 1965 թվականի հունվար-սեպտեմբեր ամիսներին Սովետական Հայաստանում արտադրվել է էլեկտրաէներգիա՝ 2131 միլիոն կիլովատ-ժամ, հանքային պարարտանյութ (պայմանական միավոր) 16,1, կաուստիկ սոդա՝ 31,6 հազար տոննա, ավտոդողեր՝ 887 հազար, մետաղահատ հաստոցներ՝ 6913, դարբնոցա-մամլիչներ՝ 860 հատ, լուսավորման լամպեր՝ 68,3 միլիոն հատ, սարքեր, ավտոմատների և հաշվիչ տեխնիկայի միջոցներ՝ 27,8 միլիոն ռուբլու, միս (պետական միջոցներից)՝ 12,8 հազար տոննա, երշիկեղեն՝ 4,8 հազար տոննա, կահույք՝ 10,4 միլիոն ռուբլու, կոշիկ 5,5 միլիոն զույգ, տրիկոտաժ վերնազգեստ՝ 3079 հազար հատ: Այս տարվա նույն ժամանակամիջոցում արտադրվել է էլեկտրաէներգիա՝ 3691,2 միլիոն կիլովատ-ժամ, հանքային պարարտանյութ՝ 89,7, կաուստիկ սոդա՝ 44,3 հազար տոննա, ավտոդողեր՝ 980 հազար, մետաղահատ հաստոցներ՝ 8.200, դարբնոցա-մամլիչներ՝ 1.093, լուսավորման էլեկտրալամպեր՝ 91,4 միլիոն հատ, սարքեր, ավտոմատների և հաշվիչ տեխնիկայի միջոցներ՝ 29,6 միլիոն ռուբլու, միս (պետական միջոցներով)՝ 15,1 հազար, երշիկեղեն՝ 7,6 հազար տոննա, կահույք՝ 13 միլիոն ռուբլու, տրիկոտաժ-վերնազգեստ՝ 6,3 միլիոն հատ, կոշիկ՝ 7,3 միլիոն զույգ: Բուռն թափով առաջ է ընթանում հանրապետության գունավոր մետալուրգիայի զարգացումը, որ նրա ինդուստրիայի պարծանքն է, առաջատար ճյուղը: Սովետական Հայաստանի արդյունաբերական արտադրանքների բազմաթիվ տեսակներ այսօր արտահանվում են Եվրոպայի, Ասիայի, Ամերիկայի, Աֆրիկայի շատ երկրներ:

Բարձր գնահատելով Սովետական Հայաստանի աշխատավորության հաջողությունները տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությանը պարգևատրեց Լենինի երկրորդ շքանշանով: Այդ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության մեծ հոգատարությունն է հայ ժողովրդի նկատմամբ և բարձր գնահատականը՝ կոմունիզմի կառուցման գործում նրա ձեռք բերած հաջողությունների: Հայաստանի բոլոր աշխատավորները անհուն երախտագիտությամբ ընդունեցին հանրապետությանը Լենինի երկրորդ շքանշանով պարգևատրելու հրամանագիրը և միահամուռ կերպով պայքարի են ելել կուսակցության առաջադրանքները անթերի կատարելու համար:

Հնգամյակի երրորդ տարվան համընկավ Էրեբունի-Երևան քաղաքի հիմնադրման 2750-ամյակը: Քսանյոթ դարից ավելի պատմություն ունեցող Երևանն ապրել է իր ժողովրդի ճակատագրով և վերածնվել նրա հետ՝ 1920 թվականի նոյեմբերին, դարձել Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մայրաքաղաքը: Չնայած դարերի խորքից է գալիս Երևանը, բայց նա երիտասարդ է: Ընդամենը քառասունութ տարվա պատմություն ունեն նրա վարդագույն թաղամասերը, 220 արդյունաբերական ձեռնարկությունները, գիտության, կուլտուրայի և արվեստի հաստատությունները: Անցած բազում տարիներին երբեք չի նշվել Էրեբունի-Երևանի հոբելյանը: Միայն սովետական իրավակարգում հայ ժողովրդին բախտ վիճակվեց առաջին անգամ նշելու իր մայրաքաղաքի՝ Երևանի տարեկիցը: Սոցիալիստական Երևանը խորհրդանշում է հայ ժողովրդի վերածնունդը, նրա ծաղկումը: Ահա թե ինչու Երևանի 2750-ամյակը հանդիսացավ համաժողովրդ-

դական տոնախմբություն, որին մասնակցեցին ոչ միայն մեր հանրապետության աշխատավորները, այլև Սովետական Միության բոլոր հանրապետությունների մայրաքաղաքների, հերոս քաղաքների պատվիրակությունները ու սփյուռքահայության ներկայացուցիչները: Աշխարհի չորս կողմը տարածված հայ աշխատավորական զանգվածները Սովետական Հայաստանը համարում են իրենց հայրենիքը, Երևանը՝ մայրաքաղաքը, նրանք իրենց հայացքները ուղղելով Հայաստանին, այն համարում են իրենց վերջնական հանգրվանը, որի վրա ծածանվում է մեծ հոկտեմբերի ազատարար կարմիր դրոշը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Բրեժնևը ՀամԼԿԵՄ Կենտկոմի հանդիսավոր պլենումում արտասանած ճառում անդրադառնալով Սովետական Միության տնտեսական նվաճումներին, ասաց. «Նայեցեք, այսօր ինչպիսի բնագիծ է դուրս եկել մեր հայրենիքը. պողպատի ձուլումը հասնում է 107 միլիոն տոննայի (1968 թ. խմբ.), նավթի հանույթը այս տարի կանցնի 300 միլիոն տոննայից, ածխի հանույթը կկազմի գրեթե 600 միլիոն տոննա, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 640 միլիարդ կիլովատժամ»: Սկսվել է Սայանո-Շուշինսկոյի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը: Նրա հզորությունը հավասար կլինի տասը Դնեպրոգէսի: Նորանոր նավթամուղեր ու գազամուղեր են ձգվում Տունդրաների, Տայգաների և անապատների վրայով, որոնք երկրի ամենահեռավոր ծայրերից նավթն ու գազը հասցնում են արդյունաբերական կենտրոնները:

Մեր հայրենիքի հաջողությունները, սոցիալիստական հասարակարգի հսկայական հնարավորությունները, նրա արմատական առավելությունները կապիտալիզմի նկատմամբ նպաստում են համաշխարհային սոցիալիստական համագործակցությանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամրապնդմանը:

Հիմնվելով իր տնտեսական ու ռազմական հզորության վրա և բարձր ծածանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, Սովետական Միությունը անշահախնդիր օգնություն է ցույց տալիս նոր ազատագրված երկրներին, նպաստում ազգային-ազատագրական շարժումներին և սանձում իմպերիալիստական սև ուժերին, որոնք փորձում են ետ շրջել պատմության անիվը, գլոբալ պատերազմների ու դավադրությունների միջոցով առանձին երկրներում վերականգնել կապիտալիստական կարգերը: ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների օգնության շնորհիվ Վիետնամի հերոս ժողովուրդը գնալով ավելի ուժեղ հարվածներ է հասցնում ամերիկյան զավթիչներին և աննկուն կերպով մարտնչում իր ազատագրության ու անկախության համար: Սոցիալիստական համագործակցության երկրների կողմից անգնահատելի օգնություն ստացավ նաև եղբայրական Չեխոսլովակիայի ժողովուրդը, որ խափանեց ռեակցիոն՝ հակահեղափոխական ուժերի դավադրությունը և պաշտպանեց իր սոցիալիստական կարգերը:

Մեր օրերում սոցիալիզմի թշնամիների գաղափարական պայքարի հիմնական զենքը հակակոմունիզմն է, զրպարտանք սոցիալիստական կարգերի, մարքս-լենինյան կուսակցությունների հասցեին: Կապիտալիստական աշխարհի ռեակցիոն ուժերի հիմնական նպատակն է՝ պառակտել սոցիալիստական լագերը, թշնամանք սերմանել ՍՍՀՄ ժողովուրդների միջև: Այսպիսի պայմաններում մեր կուսակցությունը իր հիմնական խնդիրներից մեկը համարում է՝ հարձակողական, անողոք պայքարը հակակոմունիզմի դեմ, բուրժուական գաղափարախոսության բոլոր դրսևորումների դեմ:



Թշնամիների դեմ մղած իր պայքարում մեր կուսակցությունն առաջնորդվել ու առաջնորդվում է Լենինի դրոշով: Ընթանալով Լենինի ուղիով, սրբությամբ կատարելով նրա պատգամները, Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ընկած ժամանակաշրջանում մեր երկիրը հասել է պատմական չտեսնված հաղթանակների և ձեռք է բերել զարգացման այնպիսի աստիճան, որը նրան հնարավորություն է տալիս հաստատակամորեն առաջ տանելու կոմունիզմի կառուցումը:

Ահա թե ինչու, ինչպես ասված է Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ «Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը անմահ է, ինչպես անմահ են նրա գաղափարները, անմահ են նրա կատարած գործերը: Նա իր ամբողջ կյանքը նվիրեց պրոլետարիատին, աշխատավորական զանգվածներին, աշխարհի հեղափոխական նորացմանը ծառայելու վեհ գործին: Լենինը արտահայտեց բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի իղձերն ու հույսերը, պատասխանեց այն արմատական հարցերին, որոնք հրամայաբար թելադրում էր կյանքը: Լենինի ղեկավարությամբ մեր կուսակցությունը բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին առաջնորդեց պայքարելու շահագործողական հասարակարգի տապալման, լավագույն կյանքի, սոցիալիզմի համար»:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումում ընդգծված է, որ ընթանալ լենինյան կուրսով, այդ նշանակում է կատարել այն ամենը, ինչ նպաստում է բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության միասնության ամրապնդմանը, մեր երկրի էկոնոմիկայի էլ ավելի զարգացմանը, պաշտպանության հզորացմանը, մարքս-լենինյան կուսակցությունների համախմբմանը: Մեր կուսակցությունը, ՍՍՀՄ բազմազգ ժողովուրդը սերտ միասնություն կազմած, այդպես էլ անում են: Ընթանալով լենինյան ուղիով, մեր երկրի աշխատավորները նորանոր հաջողություններ են ձեռք բերում կոմունիզմի կառուցման, մեր մեծ երկրի առավել հզորացման ու բարգավաճման բնագավառներում:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումը լսելով և քննարկելով Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը՝ ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի արտաքին քաղաքականության գործունեության մասին, միահամուռ հավանություն տվեց Քաղբյուրոյի արտաքին քաղաքականությանն ու պաշտպանեց այն: Կենտկոմի պլենումը խորին գոհունակությամբ նշեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության արտաքին քաղաքականությունը արժանանում է մեր ամբողջ կուսակցության, բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, սովետական ժողովրդի միահամուռ պաշտպանությանն ու հավանությանը: Այդ քաղաքականությունը էլ ավելի է համախմբում մարքս-լենինյան կուսակցությունները, ամրապնդում սոցիալիստական լագերի երկրների միասնությունը, նպաստում իմպերիալիստական կեղեքումից ազատագրված երկրների զարգացմանը:



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԿԱՊՉԵՆԿՈ Ն. Կ.

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊՐԱԿՏԻԿԱՆ

*ՌԿ(բ)Կ-ի Կենտրոնական կոմիտեի արտակարգ պլենումի՝ Վ. Ի. Լենինի մահվան առթիվ հրապարակված դիմումում ասված է. «Լենինը կարողանում էր, ինչպես ոչ ոք, տեսնել և՛ մեծը, և՛ փոքրը, գուշակել պատմական հսկայական բեկումները, և՛ միաժամանակ հաշվի առնել ու օգտագործել յուրաքանչյուր փոքրիկ մանրուք. Նա կարողանում էր, երբ պետք էր լինում, մոլեգնաբար հարձակվել և, երբ պետք էր լինում, նահանջել՝ նոր հարձակում պատրաստելու համար։ Նա չգիտեր ոչ մի քարացած ֆորմուլա, ոչ մի փարագույր չկար նրա իմաստուն, ամենատես աչքերի համար» («ՍՄԿԿ-ն բանաձևերում», 1964, էջ 1028)։ Այսպիսին էր նա իր ստեղծած կուսակցության ու պետության, բազմամիլիոն աշխատավորների համար, որոնք նոր կյանք են կերտում, պայքարում սոցիալական ու ազգային ազատագրության համար։*

*Վ. Ի. Լենինի հանճարն ու մեծությունը, նրա քաղաքական ու պետական գործունեությունը ընդունել ու բարձր են գնահատել անգամ կոմունիզմի թշնամիները։ Ուինստոն Չերչիլը, որի վերաբերմունքը մեր հեղափոխության նկատմամբ ավելի քան որոշակիորեն արտահայտված է նրա նշանավոր հերոստրատյան կոչի մեջ՝ «Խեղդել կոմունիզմն իր օրորոցի մեջ» գրել է— «Երբ նրա միտքը ճառագայթում էր, անմիջապես տեսնում էր ամբողջ աշխարհը, նրա ամբողջ պատմությունը, նրա վշտերը, հիմարությունը, խայտառակությունը և, առաջին հերթին, անարդարացիությունը... Նրա ինտելեկտը լայնածավալ էր և որոշ փուլերում՝ հոյակապ։ Նա ընդունակ էր այն աստիճան համապարփակ ըմբռնողության, որին հազվադեպ է հասնում մարդը... Լենինի միտքն արտասովոր էր և օգտագործվում էր նրա ոչ պակաս բացառիկ կամքով» («Правда», 23 апреля, 1929 г.)։*

*Վ. Ի. Լենինի գործունեության մեջ զարմանալի ներդաշնակությամբ զուգակցվում էին մտածող տեսաբանի խորությունը և գործնական քաղաքագետի չգերազանցված հատկությունները։ Լենինյան տաղանդի այդ բացառիկությունը դրսևորվում էր առաջնորդի գործունեության բոլոր ոլորտներում, սովետական պետության արտաքին քաղաքականությունը ղեկավարելու ասպարեզում։ Այն անջնջելի դրոշմ է թողել սովետական երկրի արտաքին քաղաքականության վրա նաև մեր օրերում։*

*Վ. Ի. Լենինի տեսական ու գործնական ժառանգությունը մեր ժողովրդի,*



*հեղափոխական ազատագրական ամբողջ շարժման ամենաարժեքավոր հարստությունն է։ Այդ ժառանգությունը բազմակողմանի է ու անսպառ, դա մի հզոր զենք է աշխարհի վերափոխման համար մղվող պայքարում։ Զարմանալի չէ, որ կապիտալիստական կարգի պաշտպանների համար Լենինի գաղափարներն այսօր պակաս սարսափելի ու վտանգավոր չեն, քան նրա կենդանության օրով։ Լենինիզմը եղել ու մնում է ամենակատաղի հարձակումների օբյեկտ, ամենակատարելագործված կեղծարարությունների ու զրպարտության առարկա։ Ընդ որում, առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում այն բանին, որ ամեն տեսակ, ամեն հնարավոր միջոցներով վարկաբեկվի ու խեղաթյուրվի լենինյան հայացքներն արտաքին քաղաքականության և միջազգային հարաբերությունների վերաբերյալ, նսեմացվի դրանց նշանակությունն արդիականության համար։ Պակաս ջանք չի գործադրվում խեղաթյուրելու սովետական պետության արտաքին քաղաքականության ոլորտում Վ. Ի. Լենինի պրակտիկ գործունեությունը։*

*Այժմ միանգամայն պարզ ու որոշակի են դարձել արտաքին քաղաքականության բնագավառում հակալենինյան գաղափարների ու հայացքների գլխավոր ուղղությունները։ Սոցիալիզմի քաղաքական ու գաղափարական հակառակորդները լենինյան արտաքին քաղաքականության գաղափարական-տեսական հիմունքների դեմ նենգ պայքար են մղում, ամենից առաջ, հակակոմունիզմի դրոշով։ Նրանց գործադրած ձևերն ու մեթոդները տարբեր են, ինչպես և տարբեր է նրանց, այսպես կոչված՝ «օբյեկտիվության» աստիճանը։ Սակայն նրանց բոլոր երանգավորումները սկզբունքային նշանակություն չունեն, որովհետև ինչպես «չափավոր լիբերալները», այնպես էլ մոլեռանդ հակակոմունիստները, վերջին հաշվով, ըստ էության, հետապնդում են միևնույն նպատակը՝ սոցիալիզմի միջազգային դիրքերի թուլացումը, սոցիալիստական կարգի բուն հիմքերի խարխլումը։*

*Ժամանակակից ռևիզիոնիստներն արտաքուստ իբրև թե հանդես են գալիս ի պաշտպանություն լենինիզմի, բայց իրականում, լենինյան ժառանգության վերաբերմամբ ոչ-դոգմատիկ մոտեցման պատրվակով ձգտում են ամլացնել լենինիզմի հեղափոխական բովանդակությունը։ Նրանք նորից փորձում են վերածնել լենինիզմի «ազգային-սահմանափակ», «զուտ-ռուսական» նշանակության մասին վաղուց արդեն սնանկացած սնամեջ տեսությունները։ Խոսքով արժանին հատուցելով Լենինին, նրանք դրա հետ միասին կոչ են անում «դուրս գալ» լենինյան ժառանգության «շրջանի սահմաններից», հաղթահարել «ժամանակավոր նեղ» շրջանակները, որոնցով իբրև թե սահմանափակված է այդ ժառանգությունը։ Նման դատողությունների տակ թաքնված է այն միտքը, թե լենինյան գաղափարներն իբրև թե չեն համապատասխանում մեր դարաշրջանի պահանջներին, թե նրանց հիման վրա հնարավոր չէ տալ ժամանակակից միջազգային կյանքի բարդ պրոցեսների ճիշտ բացատրությունը։*

*Վերջապես, Վ. Ի. Լենինի մշակած՝ սոցիալիզմի արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքները կատաղի հարձակումների են ենթարկվում նաև Մաո Ցզե-դունի խմբի կողմից, որի գաղափարական-քաղաքական պլատֆորմը մանրբուրժուական-ավանտյուրիստական կոնցեպցիաների զուգորդությունն է մեծապետական շովինիզմի գաղափարախոսության հետ։ Մաոցզեդունական խումբը, որն ամբողջովին կտրված է մարքսիզմ-լենինիզմից, լայն կամպանիա է մղում, որի նպատակն է չին ժողովրդի և չինական կոմունիստների գիտակցությունից դուրս հանել լենինյան գաղափարները և դրանք նենգափոխել, այսպես կոչված՝ «Մաո Ցզե-դունի գաղափարներով», որոնք հռչակվում են որպես «մարքսիզմ-լենինիզմի գագաթ»։*

*Միջազգային կոմունիստական շարժումը, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը վճռականորեն պաշտպանում են լենինյան ուսմունքի մաքրությունը, հաստատորեն պայքարում միջազգային քաղաքականության ասպարեզում լենինյան գաղափարները խարխլելու կամ խեղաթյուրելու ամեն տեսակ փորձերի դեմ, որտեղից էլ որ սկիզբ առնեն դրանք։ Իսկական մարքսիստ-լենինյանները լենինյան գաղափարները դիտում են որպես*

Միևնույն ժամանակ բուրժուական գաղափարախոսները քիչ ջանք չեն գործադրում փորձելով հերքել կամ թե կասկածի տակ դնել լենինյան դրույթն արտաքին ու ներքին քաղաքականության կապի ու հարաբերակցության մասին։ Ընդ որում, նրանք կանգ չեն առնում նաև փաստերն ուղղակի խեղաթյուրելու առաջ։ Մասնավորապես, լայնորեն քարոզվում է այն հայացքը, որի համաձայն մարքսիզմ-լենինիզմն իբրև թե արտաքին քաղաքականությունը դիտում է որպես ներքին քաղաքականության զուտ ավտոմատիկ դրսևորումը միջազգային ասպարեզում։ Այսպիսով արտաքին քաղաքականությունը դառնում է ոչ ավելի և ոչ պակաս ներքին քաղաքականության օրենքների ու մեթոդների սոսկական փոխադրումը մյուս պետությունների հետ ունեցած հարաբերությունների բնագավառը։

Ներքին և արտաքին քաղաքականության հարաբերակցության նման խիստ գռեհիկ մեկնաբանությունն ընդհանուր ոչինչ չունի այն բանի հետ, ինչպես այն հասկանում էր Վ. Ի. Լենինը։ Նրա համար արտաքին քաղաքականությունը չէր հանդիսանում ներքին քաղաքականության սոսկ արտաքին և զուտ մեխանիկական անդրադարձումը համաշխարհային ասպարեզում։ «Չկա ավելի սխալ և ավելի վնասակար իդեա, քան արտաքին քաղաքականության խզումը ներքին քաղաքականությունից»,— ընդգծում էր նա (Երկեր, հ. 25, էջ 90)։ «Արտաքին քաղաքականությունը» առհասարակ քաղաքականությունից առանձնացնելը կամ թե, ավելին, արտաքին քաղաքականությունը ներքինին հակադրելը,— գրում էր նա,— արմատապես անճիշտ, ոչ-մարքսիստական, ոչ-գիտական միտք է» (ПСС, т. 30, стр. 93)։

Միջազգային հարաբերությունների պրոբլեմների Վ. Ի. Լենինի մոտեցման մեջ միշտ էլ եղել է այն բանի ըմբռնումը, որ արտաքին քաղաքականությունը դասակարգային-պետական շահերի արտահայտման ու դրսևորման առանձնահատուկ, սպեցիֆիկ ձև է։ Միջազգային հարաբերությունների ոլորտում սոցիալ-տնտեսական զարգացման, դասակարգային պայքարի օրենքներն ունեն իրենց սպեցիֆիկ առանձնահատկությունները, որոնք այստեղ այլ կերպ են բեկվում, քան պետության ներսում։ Ինքնին հասկանալի է, որ արտաքին քաղաքականությունն իրագործվում է յուրովի պայմաններում, էապես տարբերվելով այն պայմաններից, որոնք հատուկ են ներքին քաղաքականությանը։ Այս և մի շարք այլ հանգամանքներ վկայում են, որ արտաքին քաղաքականությունը չի կարող լինել և չի հանդիսանում ներքին քաղաքականության սոսկական սավերագիծը միջպետական հարաբերությունների ոլորտում։

Մարքսիզմ-լենինիզմն ամենևին չի նսեմացնում արտաքին քաղաքականության դերն ու նշանակությունը, ժխտում նրա հարաբերական ինքնուրույնությունը, նրան չի վերագրում ինքնաբավ բնույթ, անջատում ներքին տընտեսական ու սոցիալական պրոցեսներից, չի գերագնահատում այն։

Մարքսիստական-լենինյան տեսությունը ելնում է այն բանից, որ արտաքին քաղաքականության առավել խոր արմատները պետք է, վերջին հաշվով, որոնել ներքին քաղաքականության մեջ։ Սակայն դրանցից, ակներևաբար, չի հետևում, որ պատմական այս կամ այն կոնկրետ պայմաններում արտաքին քաղաքականությունը չի կարող որոշել ներքին քաղաքականության հիմնական ուղղությունները, շատ էականապես ազդել նրա վրա։

Ներքին և արտաքին քաղաքականության սերտ փոխադարձ կապից հետևում է, որ արմատապես սխալ կլիներ աչքաթող անել կամ թե թերագնահատել արտաքին քաղաքականության հակադարձ ազդեցությունը ներքին քաղաքականության վրա։ Ժամանակակից պայմաններում, երբ անչափ աճել է այնպիսի պրոբլեմների նշանակությունը, ինչպես նոր համաշխարհային պատերազմը կանխելու համար մղվող պայքարը, երբ երկու հակադիր հասարակական սիստեմների պատմական հակամարտությունը դարձել է միջազգային հարաբերությունների գլխավոր բովանդակությունը, դասակարգային պայքարի ծանրության կենտրոնը համաշխարհային մասշտաբով փոխադրվում է



միջազգային ասպարեզ, մեծանում է արտաքին քաղաքականության դերը հասարակական կյանքում։ Այդ են վկայում աշխարհում տեղի ունեցող պրոցեսները։

Վ. Ի. Լենինը շարունակ ընդգծում էր, որ «...մարքսիզմը պահանջում է հաշվի առնել օբյեկտիվ պայմաններն ու նրանց փոփոխությունները, որ հարցը պետք է դնել կոնկրետ կերպով, այդ պայմանների համեմատ... (Երկեր, հ. 26, էջ 550)։

Օգտագործելով դասակարգային վերլուծության մեթոդը, Վ. Ի. Լենինը բացահայտեց իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականության իսկական էությունը։ Նա ցույց տվեց, որ սոցիալիստական արտաքին քաղաքականության տեսության մշակումը անհնարին է առանց իմպերիալիստական տերությունների վարած քաղաքականության ուսումնասիրության ու մերկացման։

Իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականությունը չի արտացոլում ինչ-որ վերացականորեն մեկնաբանվող «ազգային շահեր», որոնց բուրժուական պրոպագանդան ձգտել ու ձգտում է ներկայացնել որպես այս կամ այն պետության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի շահերի արտահայտություն։ Իմպերիալիստական պետության արտաքին քաղաքականությունը պաշտպանում է մոնոպոլիստական բուրժուազիայի նկրտումները, անտեսելով ազգի իսկական ներկայացուցիչների՝ բանվոր դասակարգի, աշխատավորների շահերը։

Միայն սոցիալիստական պետության մեջ դասակարգային հակամարտությունների վերացման շնորհիվ վերանում է հակասությունը երկրի ազգային և դասակարգային շահերի միջև։ Դասակարգային շահերը միաձուլվելով ազգայինի հետ, ստանում են նոր որակ, նոր բովանդակություն։ Միայն սոցիալիզմի պայմաններում արտաքին քաղաքականությունը լիովին հանդես է գալիս որպես երկրի ազգային շահերի արտահայտություն, որի սոցիալական հիմքն անչափ ընդլայնվում է, ստանում ժողովրդական, դեմոկրատական բնույթ։

Վ. Ի. Լենինի տեսական ու պրակտիկ գործունեության կարևորագույն արդյունքներից մեկը սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքների գիտական մշակումն ու հիմնավորումն էր։ Ըստ որում, ճիշտ չէր լինի կարծել, որ սոցիալիզմի արտաքին քաղաքականությանը վերաբերող հիմնադիր գաղափարները Լենինն առաջ է քաշել սոսկ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից և սովետական պետության երևան գալուց հետո։

Իրականում կոմունիստական կուսակցությունը Հոկտեմբերյան հեղափոխությունը կատարեց արդեն զինված արտաքին-քաղաքական հստակ ու կոնկրետ ծրագրով, որը նա առաջարկեց աշխատավորական մասսաներին։ Նախահոկտեմբերյան ժամանակաշրջանում Լենինի գրած մի շարք աշխատություններում (Իմպերիալիզմը իբրև կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին, Սոցիալիստական հեղափոխությունը և ազգերի ինքնորոշման իրավունքը, Ռուսական հեղափոխության արտաքին քաղաքականությունը և այլն) քննվել էին սոցիալիստական պետության ապագա արտաքին քաղաքականության վերաբերող կարևոր պրոբլեմները։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո սոցիալիզմի արտաքին-քաղաքական սկզբունքները հարստացան լենինյան նոր գաղափարներով։

Վ. Ի. Լենինի մշակած սոցիալիզմի արտաքին քաղաքականության հիմնական դրույթներից է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը։ Հենվելով Մարքսի և Էնգելսի աշխատությունների վրա, ստեղծագործորեն ընդհանրացնելով միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի փորձը, Լենինն զգալի չափով ընդլայնեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարի բովանդակությունը, ցույց տվեց նրա դերը միջպետական հարաբերու-

թյուններում, բացահայտեց նրա անհարիրությունը բուրժուական նացիոնալիզմին, մշակեց ազգայինի ու միջազգայինի հարաբերակցության հարցը բանվոր դասակարգի քաղաքականության մեջ։

Վ. Ի. Լենինը բացառիկ նշանակություն էր տալիս ինտերնացիոնալիզմի ճիշտ ըմբռնմանը և մեկնաբանմանը։ «...պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— գրում էր նա,— պահանջում է, նախ՝ մի երկրում պրոլետարական պայքարի շահերը ենթարկել այդ պայքարի ընդհանուր շահերին համաշխարհային մասշտաբով. երկրորդ՝ բուրժուազիայի դեմ հաղթանակն իրագործող ազգից պահանջվում է հանուն միջազգային կապիտալի տապալման մեծագույն ազգային զոհաբերությունների դիմելու ընդունակություն և պատրաստակամություն» (Երկեր, հ. 31, էջ 171)։

Թե Լենինի կենդանության օրով և թե հետագայում պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որպես սոցիալիզմի արտաքին քաղաքականության հիմնական սկզբունք, ենթարկվել ու ենթարկվում է ամենակատաղի հարձակումների, ամենանրբին կեղծարարության։ Իմպերիալիզմի գաղափարախոսները հայտարարում են, թե իբրև պրոլետարական ինտերնացիոնալն անհամատեղելի է միջազգային իրավունքի հանրաճանաչ նորմերի հետ։ Նրանք փորձում են այդ սկզբունքը պատկերացնել որպես ուրիշ պետությունների ներքին գործերին բացահայտորեն միջամտելու դոկտրինա։ Ահա թե այդ սկզբունքն ինչպիսի կերպարանք է ստանում ամենաթունդ հակակոմունիստներից մեկի, արևմտագերմանական պրոֆեսոր Վ. Գրոտիանի մեկնաբանությամբ. «Սոցիալիստական պետության կամ սոցիալիստական պետությունների հարձակողական պատերազմներն այսպես կոչված՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասն են (Walter Grottian. Lenins Anleitung zum Handeln· Köln und Opladen, 1962, S. 102)։ Ամերիկյան հայտնի գաղափարախոս և քաղաքական գործիչ Ջ. Քեննանը պնդում է, որ կոմունիստների կողմնակցությունը սոցիալիզմին ու պրոլետարական ինտերնացիոնալիզմին իբրև թե պարտավորեցնում է «միջամտությունն ուրիշ երկրների ներքին գործերին՝ նրանց պետական կարգը և ապրելակերպը փոփոխելու նպատակով» («Foreign Affairs», January 1960, p. 173)։

Սոցիալիզմի արտաքին-քաղաքական տեսությունն ու պրակտիկան վճռականորեն հերքում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի նման խեղաթյուրված մեկնաբանությունը։ Այդ սկզբունքն ընդհանուր ոչինչ չունի սոցիալիզմի բռնի տարածման կոնցեպցիայի հետ, և իր բնույթով խորթ է «հեղափոխության արտահանման» տխրահռչակ տեսությանը, որը հակասում է մարքսիզմ-լենինիզմին, բանվոր դասակարգի իսկական շահերին։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը պահանջում է բանվոր դասակարգի ազգային բոլոր ջոկատների փոխադարձ պաշտպանություն և համերաշխություն։ Միևնույն ժամանակ անմտություն կլիներ չհարգել և չպաշտպանել համաշխարհային հեղափոխական շարժման ամեն մի առանձին ջոկատի, կոմունիստական կուսակցության, սոցիալիստական պետության ինքնուրույնությունը և իրավահավասարությունը։ Ոչ պակաս կարևոր է և այն, որ առավել արդյունավետ և հուսալի եղանակով հակազդեցություն ցույց տրվի ռազմական, թե խաղաղ միջոցներով հակահեղափոխության արտահանմանը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի այդ երկու կողմերը փոխադարձաբար կապված են մեկը մյուսին և անբաժանելի են իրարից։

Սոցիալիստական առաջին պետության երևան գալուց հետո միջազգային հարաբերությունների զարգացման փորձը ցույց տվեց, որ հակահեղափոխության արտահանումը իրագործելու ուղղությամբ կատարված փորձերը իմպերիալիստական գլոբալ ստրատեգիայի անկապտելի բաղկացուցիչ մասն են։ Եթե առաջ այդ փորձերի մեջ հիմնական շեշտը դրվում էր ռազմական ուժի անմիջական օգտագործման վրա, ապա հետագայում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման և ամրապնդման շնորհիվ, երբ աշխարհում փոխվեց ուժերի հարաբերակցությունը ի վնաս իմպերիալիզմի, գլխավոր տեղն սկսեցին գրավել այսպես կոչված՝ «խաղաղ» միջոցները։ Իմպերիալիզմի այս



նոր տակտիկան չի փոխում սոցիալիզմի երկրների հանդեպ նրա քաղաքականությունը։ Այդ իսկ պատճառով միանգամայն բնական է, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի արտաքին քաղաքական ֆունկցիան՝ որպես հակահեղափոխության արտահանման թույլ չտալու միջոց ոչ միայն չի պակասում, այլ, ընդհակառակն, ավելանում է։

Շահագործման ու ճնշման լուծը թոթափած ժողովուրդների համար պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարները ունեն տեսական ու գործնական կարևոր նշանակություն։ Միջազգային փորձի տեսակետից ինչպես Ռուսական կայսրության խորտակումը, այնպես էլ սովետական բազմազգ պետության առաջացումն ու ամրապնդումն ապացուցեցին ազգային հարցի վերաբերյալ լենինյան ուսմունքի և քաղաքականության լիակատար ճշտությունը։

Ոչ ոք այնպես չէր հասկանում (և այդ բանը սովորեցնում էր կուսակցությանը) ազգային սպեցիֆիկ շահերի և առանձնահատկությունների նկատմամբ ուշադիր և զգայուն վերաբերմունքի անհրաժեշտությունը, ինչպես Լենինը։ «Մեր փորձը,— ընդգծում էր նա,— մեր մեջ անխորտակելի համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է կոնֆլիկտների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակի ինտրիգների երկյուղը, ստեղծում է, մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների, այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե՛ փոքրիշատե հաջող զարգացումն այն ամենի, ինչն արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (Երկեր, հ. 36, էջ 341—342)։

Ընդգծելով ազգային շահերի և առանձնահատկությունների հաշվառման կարևորությունն ու նշանակությունը, Լենինը միաժամանակ մատնացույց էր անում, որ «սոցիալիզմի շահերը, համաշխարհային սոցիալիզմի շահերը բարձր են ազգային շահերից, բարձր են պետության շահերից» (Երկեր, հ. 27, էջ 464)։ Այսպես էր ինտերնացիոնալիստ և հայրենասեր Լենինի սկզբունքային դիրքը։ Անշուշտ, լենինյան տվյալ դրույթը չի կարելի մեկնաբանել այն իմաստով, որ ազգային և միջազգային շահերի միջև իբրև թե գոյություն ունի ինչ-որ հակասություն։ Հակասությունն առաջ է գալիս միայն այն դեպքում, երբ ազգային շահերն արհեստականորեն հակադրվում են միջազգայինին, որն ըստ էության բուրժուական նացիոնալիզմի արտահայտությունն է։

Միջազգային-քաղաքական բացառիկ կարևոր նշանակություն ուներ այն փաստը, որ աշխատավորների իշխանության ստեղծումից անմիջապես հետո սովետական պետությունը իր արտաքին քաղաքականության հիմքում դրեց այնպիսի ընդհանուր-դեմոկրատական սկզբունքներ, ինչպես իրավահավասարություն, պետական ամբողջականության, անկախության և սուվերենիտետի հարգումը, ուրիշ երկրների ներքին գործերին չմիջամտելը։ Եթե անցյալում և այժմ կապիտալի աշխարհում տվյալ սկզբունքները միայն հայտարարվում են, ապա սոցիալիստական երկրներում մարմնավորվեցին պետական արտաքին քաղաքականության պրակտիկայում։

Համաշխարհային ասպարեզում սովետական արտաքին քաղաքականությունը հեղաբեկում առաջացրեց միջազգային հարաբերությունների սիստեմում։ Այս կամ այն ձևով այդ բանը հարկադրված են խոստովանել նույնիսկ կոմունիզմի քաղաքական և գաղափարական հակառակորդները։ «...Ռուսական հեղափոխությունը,— գրում է օրինակ Ջ. Քեննանը,— անվիճելիորեն արագացրեց Եվրոպայի գաղութային կայսրության (կարդա՝ Գաղութատեր պետությունների,— Ն. Կ.) քայքայման պրոցեսը և նրա քաղաքական ազդեցության անկումը աշխարհի մյուս մասերում... ոչ եվրոպական տերությունների համար ռուսական հեղափոխության, որպես օրինակի, ներգործությունը հսկայական նշանակություն ուներ» («Foreign Affairs», October, 1967, p. 14)։

Մշակելով սոցիալիստական արտաքին քաղաքականության հիմունքները, Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր դարձնում կապիտալիստական աշխարհի

հետ սոցիալիստական պետության փոխհարաբերությունների պրոբլեմին: Նա ձևակերպեց և գիտականորեն հիմնավորեց տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը:

Խաղաղ գոյակցության լենինյան կոնցեպցիան հիմնված է դասակարգային սկզբունքի վրա: Այդ կոնցեպցիան բխում է աշխարհում հեղափոխական պրոցեսի զարգացման նպատակներից ու պահանջներից, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի շահերից: Այդ կոնցեպցիան չի կարող մեկնաբանվել ու կիրառվել լենինյան այն հիմնական դրույթներից մեկուսի, որոնք վերաբերում են համաշխարհային հեղափոխական շարժման զարգացման ուղիներին ու ձևերին: Դրա հետևանքով ներքին անխզելի կապ կա խաղաղ գոյակցության սկզբունքի և լենինյան ուսմունքի մյուս բաղկացուցիչ մասերի միջև:

Առաջ քաշելով խաղաղ գոյակցության սկզբունքը, Վ. Ի. Լենինը ելնում էր ոչ միայն սոցիալիստական հասարակարգի խաղաղասիրական էությունից ու բնույթից: Նա հաշվի էր առնում իմպերիալիզմի ագրեսիվ էությունը և խաղաղ գոյակցության գաղափարը կապում էր ոչ թե իմպերիալիզմի բնույթի մեջ տեղի ունեցած ինչ-որ փոփոխությունների հետ, այլ այն խոր տենդենցների, որոնք ժամանակակից համաշխարհային զարգացման վճռական գործոններից են:

Խոսքը վերաբերում է, «...պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (այսինքն՝ մի երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անընդունակ դիկտատուրայից) միջազգայինի (այսինքն՝ առնվազն մի քանի առաջավոր երկրների պրոլետարիատի դիկտատուրա, որն ընդունակ լինի վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա) վերածելու խնդիրը» (Երկեր, հ. 31, էջ 169—170):

Սոցիալիզմի արտաքին քաղաքականության սկզբունքներն օրգանապես կապված են մեկը մյուսի հետ, և այդ փոխադարձ կապը բնորոշվում է նշված սկզբունքների դասակարգային բովանդակությամբ: Ամբողջովին անհիմն են բուրժուական գաղափարախոսների, լենինիզմի այլ կեղծարարների փորձերը պրոլետարական ինտերնացիոնալիզմը և խաղաղ գոյակցությունը պատկերացնել որպես իրար փոխադարձաբար բացառող հակոտնյաներ: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի վրա հենված հետևողական միջազգային քաղաքականությունը ոչ միայն չի պահանջում հրաժարվել խաղաղ գոյակցությունից, այլ, ընդհակառակը, ենթադրում է վճռական պայքար մղել տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջև խաղաղ գոյակցություն հաստատելու համար: Խաղաղ գոյակցության քաղաքականության իրագործումը հնարավոր է միայն իմպերիալիզմի ագրեսիվ պլանների և ոտնձգությունների դեմ պայքարելու համար բոլոր երկրների աշխատավորական լայն զանգվածներին ինտերնացիոնալ համախմբման հիման վրա: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի և խաղաղ գոյակցության սկզբունքների լենինյան ճիշտ մեկնաբանությունը բացառում է որևէ հակասություն կամ բախում նրանց միջև:

Վ. Ի. Լենինի համար առհասարակ քաղաքականությունը և մասնավորապես արտաքին քաղաքականությունն իր մեջ զուգորդում էր երկու տարր՝ գիտության տարրը, և արվեստի տարրը (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 64): Սովետական պետության արտաքին քաղաքականության ղեկավարման իր պրակտիկ գործունեության մեջ Լենինը ցույց տվեց այդ երկու տարրերի օրգանական միաձուլման չգերազանցված նմուշներ: Միջազգային ամենաբարդ պրոբլեմների վերլուծությունը, որոնց հիման վրա մշակվում էր երիտասարդ սովետների երկրի արտաքին քաղաքականության պրակտիկ գիծը, միշտ էլ աչքի էր ընկնում խորությամբ և ներթափանցումով երևույթների բուն էության մեջ: Իսկ այդ գծի մարմնավորումը արտաքին-քաղաքական կոնկրետ ակցիաների մեջ բնութագրվում էր իսկական դիվանագիտական արվեստով: Ահա թե Լենինի վերաբերյալ, որպես պետական մեծ գործչի ինչ է գրում ամերիկյանականավոր պատմաբան ու ժուռնալիստ Լ. Ֆիշերը. «Լենինը քաղաքականության մեջ մտցրեց կիրք, հավատ և ինտուիցիա: Եվ այդ հատկությունները գործունակ էին, որովհետև նա դրանք ենթարկում էր գիտական մտքին... Լենինն ընդունակ էր նույնպես լավ հասկանալու գյուղացու, զինվորի, բանվորի ամենօրյա մտքերը, ինչպես և ֆրանսիական քաղաքական գործչի մտածողությունը... Լենինը լայն աջակցություն նվաճեց իմաստության ցուցադրումով... Լենինը ճկուն էր, երբ այդ հարկավոր էր և կայուն, երբ այդ անհրաժեշտ էր»:



Հոդվածի շրջանակներում հնարավոր չէ ամբողջովին բացահայտել Վ. Ի. Լենինի պրակտիկ գործունեությունը սովետական պետության արտաքին քաղաքականության ղեկավարման գծով: Այդ մասին գրված են ոչ-քիչ գրքեր, գրքույկներ, հոդվածներ և այլն: Սակայն բավական է հիշեցնել սովետական արտաքին քաղաքականության պատմության այնպիսի էջեր, ինչպես խաղաղության դեկրետի հռչակումը, Վ. Ի. Լենինի պայքարը Բրեստի հաշտությունը կնքելու համար, առաջին արդարացի պայմանագրերի ու համաձայնագրերի կնքումը Սովետական Ռուսաստանի և մյուս պետությունների միջև, սովետական երկրի դուրս գալը միջազգային մեկուսացումից, նրա կողմից դիվանագիտական հարաբերությունների հաստատումը կապիտալիստական երկրների հետ, նրա մասնակցությունն ու դերը Ճենովայի և Հաագայի կոնֆերանսներին և այլն: Հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինի անվան հետ անխզելիորեն կապված այդ բոլոր իրադարձությունները բավական են որպեսզի ամբողջովին պատկերացնենք նրա գործունեությունը սովետական պետության արտաքին քաղաքականությունը գործնականորեն ղեկավարելու գործում:

III

Ղեկավարվելով սոցիալիստական արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքներով, հենվելով պատմական ամենահարուստ փորձի վրա, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ժամանակակից պայմաններում իրագործում է իր արտաքին-քաղաքական ծրագիրը, լուծում իր առջև ծառացած միջազգային խնդիրները: Էապես փոխվել են այդ խնդիրների ոչ միայն ծավալն ու բնույթը, այլև անչափ աճել են դրանց կենսագործման իրական հնարավորությունները: Սոցիալիզմի ուժերը ներկայումս գնալով ավելի են որոշում միջազգային հարաբերությունների զարգացման գլխավոր ուղղությունները ու տենդենցները: Սոցիալիզմի, նրա արտաքին քաղաքականության անմիջական ներգործության տակ փոխվում է նաև այդ հարաբերությունների բնույթը:

Սոցիալիզմի արտաքին քաղաքականության նպատակների և սկզբունքների լենինյան ըմբռնումը նոր պայմաններում պահանջում է նոր մոտեցում, առաջադրված խնդիրների նոր լուծում: Ներկայիս միջազգային բարդ իրադրության պայմաններում արտաքին քաղաքականության ասպարեզում ՍՄԿԿ, սովետական կառավարության ամենօրյա պրակտիկ գործունեությունը կենտրոնացվում է ՍՄԿԿ ծրագրում, կուսակցության վերջին համագումարների և նրա Կենտրոնական կոմիտեի պլենումների բանաձևերում ու որոշումներում առաջ քաշված խնդիրների լուծման վրա: Սովետական Միության արտաքին-քաղաքական գործունեության հիմնական ուղղությունները ձևակերպել է ՍՄԿԿ XXIII համագումարը: «Սովետական պետության արտաքին քաղաքականությունը,— ասված է համագումարի բանաձևում,— նպատակ ունի սոցիալիստական մյուս պետությունների հետ միջազգային նպաստավոր պայմաններ ապահովել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար, ամրապնդել սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, նրանց բարեկամությունն ու եղբայրությունը, պաշտպանել ազգային-ազատագրական շարժումները և բազմակողմանի համագործակցություն իրագործել երիտասարդ զարգացող պետությունների հետ. հետևողականորեն պաշտպանել սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, վճռական հակահարված հասցնել իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին, մարդկությունը փրկել համաշխարհային նոր պատերազմից» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 295):

Այժմ հույժ կարևոր է դարձել իմպերիալիստական ուժերի ոտնձգություններին վճռականորեն և ակտիվորեն հակազդելու պրոբլեմը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնությունն ու համախմբվածությունը,

մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա ամրապնդելու խնդիրները։

Ներկայիս միջազգային իրադրության բարդությունը հետևանք է իմպերիալիստական ուժերի ակտիվացման, որն իր արտահայտությունն է գտել վիետնամական ժողովրդի դեմ Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիայի, իսրայելական զավթիչների կողմից արաբական տերիտորիաների շարունակվող օկուպացիայի, ԳՖՀ-ում նեոֆաշիստական և ռևանշիստական տենդենցների աճման, սոցիալիստական սիստեմը ներսից թուլացնելու իմպերիալիզմի փորձերի մեջ։ Բազմաթիվ փաստեր վկայում են, որ իմպերիալիզմը մտադիր չէ հրաժարվելու սոցիալիզմի դեմ միջազգային լարվածությունը շիկացնելու, ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարի բոլոր ձևերը սրբելու գծից։ «Իմպերիալիստական ռեակցիան,— ընդգծվում է Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— ճգնելով հաղթահարել տնտեսական ու քաղաքական ցնցումները, դուրս գալ սոցիալական անլուծելի հակասությունների փակուղուց, ավելի ու ավելի է կանգնում ռազմական ավանտյուրաների ու պրովոկացիաների ուղու վրա։ Իմպերիալիզմը կործանման սպառնալիքի տակ է դնում միլիոնավոր մարդկանց կյանքերը, քաղաքակրթության և կուլտուրայի պտուղները»։ Սովետական Միությունը, սոցիալիզմի մյուս եղբայրական երկրներն իրենց քաղաքականության մեջ ամբողջովին հաշվի են առնում միջազգային իրադրության զարգացման մեջ եղած այդ տենդենցները։

Միջազգային լարվածությունն ուժեղացնելու գծի հետ միասին իմպերիալիստական շրջանները ակտիվացնում են գաղափարական պայքարը սոցիալիզմի դեմ, ձգտելով մոլի հակակոմունիստներից մինչև մանրբուրժուական նացիոնալիստներին, ռևիզիոնիստներից մինչև դոգմատիկներին միաձուլել մեկ հոսանքի մեջ, որը կոչված է սրբելու ու տանելու նոր հասարակարգի հիմքերը։ Սոցիալիզմի դեմ մղվող պայքարին իմպերիալիզմն ձգտում է տալ համաշխարհային բնույթ, պայքարի ճակատը փոխադրել սոցիալիստական երկրների ներսը։ Խոսքը, ըստ էության, վերաբերում է մեր դարի առաջին կեսին հասարակական զարգացման արդյունքների վերանայմանը։

Աշխարհում տեղի ունեցած և տեղի ունեցող սոցիալական պրոգրեսիվ փոփոխությունների, վերջին հաշվով, անվերադարձ բնույթի նկատմամբ մարքսիստ -լենինյանների հաստատ համոզմունքը ոչ մի դեպքում հիմք չի տալիս կարծելու, թե իբր իմպերիալիստական ուժերի ձեռնարկած գաղափարախոսական դիվերսիաները ոչ մի վտանգ չեն ներկայացնում սոցիալիստական երկրների համար և որ կարելի է լուրջ ուշադրություն չդարձնել դրանց վրա։ Բազմաթիվ փաստեր վկայում են, որ իմպերիալիստական քաղաքականության ղեկավարները հանուն իրենց շահերի օգտագործում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման որոշ դժվարություններ։ Նրանց հիմնական նպատակն է՝ թուլացնել սոցիալիստական երկրների միջև եղած կապերը, բաժանել նրանց։ Հենց այդ տեսանկյունով պետք է գնահատել բուրժուական պրոպագանդայի ուժեղացող հարձակումները Վարշավայի պայմանագրի կազմակերպության, սոցիալիստական պետությունների քաղաքական ու տնտեսական փոխադարձ կապերի ամբողջ սիստեմի վրա։

Վերջին ժամանակներս բուրժուական մամուլում, արևմտյան տերությունների պետական և քաղաքական գործիչների ելույթներում ավելի ու ավելի համառորեն անց է կացվում այն իդեան, թե իբր սոցիալիստական ու կապիտալիստական երկրների միջև հակասությունները կորցնում են իրենց նախկին սրությունը, ետ են մղվում։ Այս դատողությունների տակ թաքնված է բավական պարզ միտք՝ քանի որ սոցիալիզմի երկրներին հիմա, իբրև թե, ոչ ոք չի սպառնում, ապա նրանք այլևս ռազմա-քաղաքական ամուր դաշինքի կարիք չունեն։

Սակայն պատմական փորձը, ինչպես նաև իրադարձությունների իրական զարգացումն աշխարհում ուրիշ բան են վկայում։ Կապիտալիստական և սոցիալիստական երկրների միջև քաղաքական-գաղափարական հակասությունները ոչ միայն չեն հարթվում, այլ, ընդհակառակը, ավելի են սրվում և դա անմիջական արտահայտություն է գտնում միջազգային քաղաքականության ոլորտում։ Առաջվա նման գոյություն ունի իմպերիալիստական լայն ագրեսիայի վտանգ, չեն դադարում հակահեղափոխության արտահանման փորձերը։ Դրա համար սոցիալիստական երկրների միասնությունը և համախմբվածությունը, Վարշավայի պայմանագրի երկրների պաշտպանական ուժն ավելի ամրապնդելու անհրաժեշտությունը ժամանակի պահանջն է։

Սոցիալիզմի համար պայքարի արտաքին-քաղաքական միջազգային ճակատը միշտ եղել ու մնում է հին աշխարհի ուժերի դեմ պայքարի առավել լարված, եթե ոչ ամենալարված տեղամասը։ Այստեղ բացեիբաց բախվում են երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմների, երկու քաղաքականության, սոցիալիզմի ու կապիտալիզմի շահերը։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների փորձը ցույց է տալիս, որ սոցիալիզմի քաղաքականության ուժն ու ներգործությունն անխզելի են լենինյան հիմնադիր սկզբունքներից։ Այդ սկզբունքներից ամեն մի հեռացում անխուսափելիորեն հանգեցնում է այն բանին, որ արտաքին քաղաքականությունը կորցնում է իր սոցիալիստական բնույթը և գործիք դառնում մարդկանց նեղ խմբակի կամքի ու շահերի իրականացման համար, ինչպես օրինակ, այդ տեղի ունի Չինաստանում։

Սոցիալիստական հասարակության մեջ կոմունիստական կուսակցության ղեկավար դերն արտահայտվում է նաև նրանով, որ նա մշակում է երկրի արտաքին քաղաքականության կուրսը և ապահովում է նրա անշեղ կենսագործումը։ Անսասան է կուսակցության լենինյան ղեկավարության արտաքին քաղաքականության սկզբունքը։

Սոցիալիզմի արտաքին քաղաքականությունն ավելի քան հինգ տասնամյակի պատմություն ունի։ Այդ ժամանակաշրջանում այն մեծ ուղի է անցել և կուտակել է հարուստ փորձ, որի գանձարանում իրենց ավանդն են ներդրել սոցիալիստական ինչպես մեծ, այնպես և փոքր երկրները։ Այդ քաղաքականության հիմքում դրված լենինյան սկզբունքները բռնել են ժամանակի քննությունը։ Սոցիալիզմի քաղաքականությունը, ամբողջությամբ վերցրած ինչպես և բուն սոցիալիզմը, հաջողությամբ բռնել է պատմական քննությունը և ապացուցում է իր կենսունակությունն ու ուժը։

(Արտատպված է «Международная жизнь», ամսագրի 1968 թ. № 9-ից։





**ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ Հ. Ու.**

Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ԲԱԽՏՈՐՈՇ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔՈՒՄ

Ժողովուրդների կյանքում տեղի ունեցած, թեկուզ տվյալ պահին խիստ կարևոր, շատ ու շատ իրադարձություններ տարիների նստվածքի թանձր մշուշում հաճախ կորցնում են իրենց նշանակությունը, ետ մղվում, կամ նույնիսկ մոռացվում: Սակայն լինում են իրադարձություններ, դեպքեր, որոնք երբեք չեն մոռացվում տարիների վազքից, այլ սերտորեն շաղկապվելով տվյալ երկրի ու ժողովրդի պատմության հետ, պայմանավորելով այդ պատմության հետագա ընթացքը, ավելի հստակ ու պարզորոշ են դրսևորում իրենց կարևորությունը: Ժամանակն ավելի է ընդգծում դրանց դրական կամ բացասական նշանակությունը:

Այդպիսի անմոռաց մի իրադարձություն է Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելու հիրավի պատմական ակտը, որը բախտորոշ նշանակություն ունեցավ ոչ միայն արևելահայության, այլև մեր ժողովրդի բոլոր հատվածների համար:

Այսօր, 140-ամյա բարձունքից նայելով այդ իրողությանը, կրկին ու կրկին խորհելով այդ մասին, պետք է անվերապահորեն ընդունենք, որ թշնամական օղակում բզկտվող հայության փրկության միակ ուղին, ինչպես երկար որոնումներից հետո իմաստուն կերպով կռահեցին մեր լուսավոր նախնիները, հյուսիսային մեծ հարևանի՝ Ռուսաստանի հետ միասնության մեջ էր: Այդ իմաստությունը ձեռք բերվեց անհույս դեգերումների ու բազում տառապանքների դաժան բովում և հաստատվեց մեր պատմության հետագա ողջ ընթացքով:

Իր ազատության ու անկախության համար հայ ժողովուրդը վաղուց ի վեր կենաց ու մահու կռիվ է մղել օտար նվաճողների դեմ: Հանրահայտ են IV—VI դարերում մեր ժողովրդի անձնազոհ ու հերոսական մաքառումները սասանյան Պարսկաստանի և Բյուզանդիայի, VII—X դարերում արաբական խալիֆաթի, XI դարում դարձյալ Բյուզանդիայի, XI—XV դարերում սելջուկների, թաթար մոնղոլների, խաչակիրների և այլ նվաճողների դեմ:



Երկար ժամանակ զրկված լինելով պետականությունից, հեծելով օտար լծի տակ, XVI—XVII դարերում Հայաստանը նոր ավերիչ պատերազմների թատերաբեմ դարձավ Արևելքի այն ժամանակվա երկու հզոր բռնապետությունների՝ օսմանյան Թուրքիայի և շահական Պարսկաստանի միջև և 1639 թ. բաժանվեց երկու մասի:

Թուրք-պարսկական զավթիչները, նվաճելով Հայաստանը, ամեն կերպ ձգտում էին հայությանը զրկել տնտեսական ու քաղաքական զարգացման տարրական հնարավորություններից, վարում ապազգայնացման քաղաքականություն: Մեր երկիրը կառավարող Թուրք-պարսկական պաշտոնյաները արգելել էին նույնիսկ Հայաստան անվան գործածությունը. Նրանք փորձում էին այն ընդմիշտ ջնջել աշխարհագրական քարտեզից, մարդկանց հիշողությունից, վերացնել հայոց լեզուն ու մշակույթը; ամեն հայկականը: Արևելյան բռնապետությունների միջև Հայաստանի անդամահատումը, հայ ժողովրդի առանց այն էլ փոքրաթիվ ուժերի մասնատումը, մեծագույն չարիք դարձավ մեր հայրենիքի համար:

Ազատատենչ ժողովուրդը չհաշտվեց այդ վիճակի հետ: Ֆիզիկական բնաջնջման և ապազգայնացման անխուսափելի վտանգից փրկվելու նպատակով նա համառ, անձնազոհ, անհավասար պայքար ծավալեց Թուրք-պարսկական տիրապետության դեմ: Հայ ժողովրդի ազատագրական պայքարը գլխավորող գործիչները քաջ գիտակցում էին, որ ստեղծված պայմաններում հաջողության հասնելու գրավականը հուսալի դաշնակից ունենալն է: Այդ էր պատճառը, որ սակավին XVII դարի կեսերից սկսած, ազատագրական շարժման հոգևոր և աշխարհիկ բոլոր ռահվիրաներն իրենց հայացքն ուղղում էին մոտիկ ու հեռու հորիզոնները, բաղձալով գտնել այն նեցուկը, որի օգնությամբ կարող էր հաղթանակով պսակվել հայ ժողովրդի ազատագրական պայքարը: Հիշենք Իսրայել Օրու, Հովսեփ Էմինի, Դավիթ Բեկի և ազատագրական շարժման մյուս գործիչների ու հոսանքների գործունեությունը: Հայտնի է, որ այդ նպատակով բախվեցին արևմտաեվրոպական տերությունների դարպասները, բայց նրանցից ոչ մի օգնություն չստացվեց: Արևմտյան Եվրոպան հուսախաբ արեց հայ ժողովրդին, երբեք չարդարացան Եվրոպայից ունեցած նրա ակնկալությունները: Միայն այն բանից հետո, երբ XVIII դարի սկզբներից հայ ժողովրդի ազատագրական պայքարին արձագանքեց Ռուսաստանը, այն նոր կռվաններ ստացավ:

Անշուշտ, չպետք է անգիտանալ, որ ցարական Ռուսաստանը հարավում ուներ իր զավթողական նպատակները, ծրագրերը: Սակայն նա միաժամանակ օբյեկտիվորեն նպաստում էր Թուրք-պարսկական լծից հայ ժողովրդի ազատագրական բաղձանքների իրականացմանը: Էնգելսը նշում էր, որ ...Ռուսաստանը իրոք առաջադիմական դեր է կատարում Արևելքի նկատմամբ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. 27, изд. II, стр. 241):

Այդ էր պատճառը, որ հայությունը մարդկային, նյութական ու բարոյական ամենալայն աջակցություն էր ցույց տալիս Կովկասում ռուսական զենքի հաղթանակին, նպաստում Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու գործին: Այդ միացումը տեղի էր ունենում միջազգային խիստ լարված, ուղղակի շիկացած մթնոլորտում: XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին Անդրկովկասը սուր պայքարի օջախ էր դարձել Ռուսաստանի, Պարսկաստանի, Թուրքիայի, ինչպես և Անգլիայի ու Ֆրանսիայի միջև:

Թուրքիան և Պարսկաստանը ձգտում էին ոչ միայն ամրապնդել իրենց տի-

րապետությունը Անդրկովկասում, այլև փորձում էին տիրանալ Կովկասին։ Ստանալով Անգլիայի և Ֆրանսիայի գաղտնի ու բացահայտ աջակցությունը, նրանք սպառնում էին Ռուսաստանի հարավ-արևելյան սահմաններին։ Այդ էր պատճառը, որ թուրքական ու պարսկական զավթիչների նվաճողական պլանները հանդիպում էին և՛ կովկասյան ժողովուրդների, և՛ Ռուսաստանի վճռական հակահարվածին։ Ցարական Ռուսաստանը ջանում էր ոչ միայն ամրապնդել իր հարավային սահմանները, այլև, ելնելով իր տնտեսական ու քաղաքական շահերից, ընդլայնել դրանք, Թուրքիային ու Պարսկաստանին դուրս մղել Անդրկովկասից, ազատ նավագնացություն ունենալ Սև ու Կասպից ծովերում, ձեռք բերել նոր շուկաներ, հարավային սահմանները հասցնել Ախուրյան—Արաքս—Քուռ բնագիծը։ Ռուսական կայսրության այս ձգտումների դեմ Պարսկաստանի և Թուրքիայի հետ մեկտեղ հանդես էին գալիս Անգլիան և Ֆրանսիան։ Վերջիններս լուրջ հավակնություն ունեին Մերձավոր Արևելքը ընդգրկել իրենց ազդեցության ոլորտի մեջ, այնտեղ հաստատել իրենց առևտրական մենաշնորհը և Ռուսաստանի առաջ ամուր փակել Սև ու Կասպից ծովերից դուրս գալու ելքը։ Նրանք վճռականապես դեմ էին Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու քաղաքականությանը։ Ինչպես Եվրոպայում, այնպես և Մերձավոր Արևելքում, ուժեղ ներհակություններ կային Անգլիայի ու Ֆրանսիայի միջև։ Նրանցից յուրաքանչյուրն աշխատում էր ինքը գերիշխել Մերձավոր Արևելքում, տիրանալ շուկաներին։ Այդպիսին էր իրադրությունը Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու ժամանակաշրջանում։ Պատահական չէր, որ Ռուսաստանին Արևելյան Հայաստանի միացման ժամանակ, անգլո-ֆրանսիական միջամտության հետևանքով, լուրջ դժվարություններ ծագեցին։ Ռուսական բանակի կովկասյան կորպուսի զորքերը, որոնք վայելում էին հայ աշխարհազորայինների ամենագործուն աջակցությունը, հարկադրված եղան մոտ քառորդ դար պայքարել պարսկական լուծն Արևելյան Հայաստանից դեն նետելու համար։ Ռուսական զորքերը երեք անգամ՝ 1804, 1808 և 1827 թ.թ. արշավեցին Արևելյան Հայաստանում պարսկական տիրապետության միջնաբերդը դարձած Երևանի վրա, մինչև որ կարողացան վերջնականապես ազատագրել այն։

Ռուս-պարսկական 1804—1813 թթ. պատերազմի ընթացքում արդեն Ռուսաստանին էին միացվել Արևելյան Հայաստանից Ղազախի, Շամշադինի, Լոռի-Փամբակի, Շիրակի և Զանգեզուրի գավառները։ 1826 թ. հուլիսին սկսված ռուս-պարսկական պատերազմի ժամանակ Երևանի ու Նախիջևանի խանությունների վերջնական ազատագրումը օրակարգի հարց էր դարձել։ Եթե 1804—1813 թթ. ռուս-պարսկական պատերազմի ընթացքում Պարսկաստանին օգնելու հիմնական միսիան իր վրա էր վերցրել Ֆրանսիան, ապա 1826—1828 թթ. Պարսկաստանին հրահրողի, ոգեշնչողի ու օգնողի դերում հանդես էր գալիս Անգլիան։ Անգլիան ոչ միայն մեծ քանակությամբ զենք ու ռազմամթերք էր տրամադրում Պարսկաստանին, այլև իր զինվորական հրահանգիչների միջոցով վարժեցնում էր պարսկական բանակը, նրա զինվորական մասնագետները վերակառուցում ու ամրացնում էին ռազմական բերդերը, իսկ անգլիական գործակալները ընդդեմ Ռուսաստանի քայքայիչ գործունեություն էին ծավալում Անդրկովկասում։

Չնայած պարսկական ու անգլիական համատեղ ջանքերին, պատերազմական գործողությունները զարգացան հօգուտ ռուսական զորքերի և նրանց հետ



զինակցած հայերից, վրացիներից ու ադրբեջանցիներից կազմված աշխարհազորային ջոկատների։

Արդեն 1826 թ. աշնանը ետ շպրտվեցին Անդրկովկասի ռուսական տիրապետության սահմանները ներխուժած պարսկական զորքերը, իսկ 1827 թ. ամառային և աշնանային ռազմական գործողությունների ժամանակ ազատագրվեցին Նախիջևանի ու Երևանի խանությունները։ Այսպես, 1826 թ. հունիսի 26-ին ռուսական զորքերը գրավեցին Նախիջևանը, հուլիսի 7-ին Աբբասաբադ բերդը, իսկ սեպտեմբերի 20-ին Սարդարաբադը։ Դրանից հետո սեպտեմբերի 25-ին ռուսական զորքերը պաշարեցին Երևանի հինավուրց բերդը, որն ամրացրել էին եվրոպական զինվորական մասնագետները և պարսիկները մեծ հույս ունեին նրա անառիկության վրա։ Բերդի պաշարումը գլխավորող գեներալ Պասկևիչը պարսկական հրամանատարությանը առաջարկեց առանց կռվի հանձնվել։ Սակայն պարսիկները մերժեցին։ Ռուսական հրետանին մի քանի օր շարունակ ռմբակոծում էր Երևանի բերդը, քանդում նրա պարիսպներն ու աշտարակները։ 1827 թ. հոկտեմբերի 1-ի առավոտյան ծխի ու փոշու ամպերի մեջ մշուշված Երևան են մտնում հաղթական ռուսական զորքերն ու հայ կամավորները, գերի վերցնում բերդի պաշտպանությունը գլխավորող Հասան խանին, մեծ թվով պարսկական բարձրաստիճան պաշտոնյաներ, ավելի քան 3.000 սարբազներ, մեծ քանակությամբ զենք, զինամթերք, պարեն և այլ ռազմավար։

Այդ իրողություններին ականատես հայ և ռուս գործիչները նկարագրում են հայերի աններևակայելի ուրախությունը Երևանի ազատագրման առթիվ։ Դեկաբրիստ սպա Ե. Ե. Լաչինովը գրում է, որ հուզիչ է ազատագրված հայերի հոգով ու սրտով արտահայտած հրճվանքը։ Մեռնող հայրերը իրենց որդիներին կտակում էին զանգակների ուրախ ձայնով գերեզմանում լուր տալ իրենց, երբ հայերի համար կծագի բախտավորության արևը, երբ ռուսները կազատագրեն նրանց ծանր լծից և կհամախմբեն Հայաստանի ցիր ու ցան, դժբախտ զավակներին։ Ե. Լաչինովը վկայում է, որ աննկարագրելի էին սրտաշարժ տեսարանները, երբ շատ հայ ընտանիքներ դիմավորում էին ռուսներին։ Նրանք ռուս զինվորներին հյուրասիրում էին հացով ու գինով, անկեղծորեն արտահայտում իրենց նվիրվածությունը ռուսներին։ Լաչինովի այն հարցին, թե հայերը գո՞հ են իրենց նոր վիճակից, նրանք պատասխանում են. «մեզ թվում է, թե մենք նոր ենք ծնվել»։

Հայությունը Երևանի ազատագրումը դիտում էր որպես իր հայրենիքի ազատագրության խորհրդանիշ։ Հայրենասեր բանաստեղծ Հարություն Ալամդարյանն այդ առիթով գրել է. «Շնորհավորում եմ Հայաստան աշխարհի փրկությունն անգութ պարսիկների երկաթե հնոցից»։ «Աչքներդ հազար լույս,—Հեռավոր Հնդկաստանից այսպիսի սրտաբուխ մաղթանքներով էր իր հայրենակիցներին շնորհավորում հայրենակարոտ գրող, լուսավորիչ Մեսրոպ Թաղիադյանը։ Հանրահայտ են այն անկեղծ, սրտառուչ և ջերմ էջերը, որ սերունդներին կտակեց մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը։

Երևանի գրավումից հետո ծավալելով ռազմական գործողությունները և հետապնդելով խուճապահար նահանջող հակառակորդին, ռուսական առաջապահ զորամասերը հոկտեմբերի 13-ին մտան Թավրիզ, որը մեծ շփոթ ու իրարանցում առաջացրեց պարսկական արքունիքում և անգլիական դեսպանությունում։ Անգլիական դեսպանի խորհրդով Աբաս-Միրզան հաշտություն

խնդրեց Պասկևիչից: Սակայն բանակցությունները պարսիկների մեղքով ձախողվեցին, և ռուսական զորքերը վերսկսեցին հարձակումը: Կարճ ժամանակամիջոցում նրանք գրավեցին Խոյը, Ուրմիան, Սալմաստը, Մարաղան, Արդաբիլը և շարժվեցին դեպի Թեհրան: Այստեղ արդեն Պասկևիչին ներկայացավ անձամբ անգլիական դեսպանը և շահի անունից հայտնեց հաշտության ռուսական պայմանագրի անվերապահ ընդունման մասին: 1828 թ. փետրվարի 10-ին, Թավրիզ-Թեհրան ճանապարհի վրա ընկած Թուրքմենչայ գյուղում կնքվեց հաշտության պայմանագիր, որով պարսկական շահը ընդմիշտ ռուսական կայսրության կազմում ճանաչեց Երևանի ու Նախիջևանի խանությունները, Օրդուբադի գավառը և վերահաստատեց 1813 թ. Գյուլիստանի պայմանագիրը: Թուրքմենչայի պայմանագրի մի այլ կետով պարսկահպատակներին իրավունք էր վերապահվում գաղթել ու բնակություն հաստատել ռուսական տիրապետության սահմաններում:

Պետք է նշել, որ Թուրքմենչայի պայմանագիրը բավական նպաստավոր եղավ թե՛ Ռուսաստանի և թե՛ անդրկովկասյան ժողովուրդների, մասնավորապես հայության համար: Արևելյան Հայաստանը պարսկական լծից ազատագրելու և Ռուսաստանին միացնելու գործում անգնահատելի դեր կատարեցին ռուսական բանակի կովկասյան կորպուսի զորքերը և նրանց հետ սերտ զինակցած, դարավոր թշնամու դեմ անձնվիրաբար կռվող հայ կամավորները: Ռուս ժողովրդի ծոցից ելած բազմաթիվ շարքային զինվորների անձնազոհ ու հերոսական պայքարը պարսկական սարբազների դեմ փրկեց հայ ժողովրդի արևելյան հատվածին ֆիզիկական բնաջնջման ու ապազգայնացման ահավոր վտանգից: Այդ պատմական ակտի մեջ, անշուշտ, խոշոր ավանդ ունեցան նաև Կովկաս աքսորված դեկաբրիստները, որոնք մարմնավորում էին այն ժամանակվա ռուսական հասարակական առաջավոր միտքն ու ռազմական արվեստը: Հայաստանի ազատագրման համար մղված մարտերում աչքի ընկան դեկաբրիստներ՝ Ն. Պ. Ակուլովը, Դ. Ա. Արցիբաշևը, Պ. Ա. Բեստուժևը, Ի. Գ. Բուրցովը և ուրիշներ, ինչպես և 1825 թ. դեկտեմբերի 14-ի ապստամբությանը մասնակցած ամբողջական զորամիավորումներ: Աստիճանազրկված դեկաբրիստ սպաներին ու շարքային զինվորներին ցարական կառավարությունը Կովկաս էր ուղարկում պատերազմի դաշտում արյան գնով իրենց «մեղքերը» քավելու համար: Սակայն հերոսաբար կռվելու հետ մեկտեղ, նրանք իրենց հետ Կովկաս բերեցին առաջավոր դեկաբրիստական գաղափարները և ռուս ժողովրդի ջերմ համակրանքը՝ Անդրկովկասյան ժողովուրդների ու նրանց ազատագրական պայքարի հանդեպ: Այսպիսով, իրադարձությունների զուգադիպությամբ պարսկական ու թուրքական լծից ազատագրվելու և Ռուսաստանին միանալու համար հայ ժողովրդի մղած պայքարը համընկավ դեկաբրիստների շարժման հետ, որը դրական ու բարերար ազդեցություն ունեցավ հայության, ռուս և հայ ժողովուրդների բարեկամության զարգացման ու ամրապնդման համար:

Հայաստանի ազատագրությանը մասնակցած դեկաբրիստների հետ միասին մեր ժողովրդի հիշողության մեջ անմոռաց մնացին այն ժամանակվա ռուսական ռազմական, քաղաքական-հասարակական ու մշակութային մի շարք առաջավոր գործիչների անունները: Դրանց թվում էր հայ ժողովրդի անկեղծ բարեկամ, գրող ու պետական գործիչ Ա. Ս. Գրիբոյեդովը, որը շուրջ մեկ տասնամյակ ամենագործուն մասնակցություն ունեցավ հայության ազատագրման



գործում: Մեծ սխրանքներ է գործել նաև 1812 թվականի Հայրենական պատերազմի հերոս, հայրենասեր բանաստեղծ, գեներալ Դենիս Վասիլևիչ Դավիդովը: Ռուս-պարսկական երկրորդ պատերազմի ժամանակ կովկասյան կորպուսի կազմում էր նշանավոր նկարիչ Վ. Մաշկովը: Նա այստեղ ստեղծեց այդ օրերի իրադարձություններն ու ռուս զինվորների սխրագործություններն անմահացնող շատ կտավներ, որոնցից մի քանիսը պահվում են Երևանի քաղաքային թանգարանում:

Բարձր գնահատելով ռուս ժողովրդի մարտական օգնությունը, ռուսական զորքերի դերը Հայաստանը պարսկական լծից ազատագրելու, Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու գործում, պետք է ըստ ամենայնի նշել նաև հայերի նյութական-տնտեսական, բարոյական ու ռազմական աջակցությունը: Բազմաթիվ վկայություններ կան այն մասին, թե ինչպես հայերը, վտանգելով կյանքը, իրենց սննդամթերքի վերջին պաշարները և այլ միջոցներ տրամադրում էին ռուսական զորամասերին: Ռուսական զորքերի հաջողությունները որոշակիորեն պայմանավորված էին հարյուրավոր հայ հետախույզների, կամավորների և սուրհանդակների խիզախ ու անձնուրաց գործունեությամբ: Կյանքի գնով նրանք ռուսական հրամանատարությանը ստույգ տեղեկություններ էին հաղորդում թշնամու ռազմական ուժերի, նրանց դասավորության, մըտադրությունների մասին, օգնում կազմելու ռազմա-ստրատեգիական այնպիսի պլաններ, որի շնորհիվ հնարավոր էր հաղթանակել՝ փոքրաթիվ ուժերով:

Սակայն ամենից կարևորը հայ աշխարհազորային ջոկատների, կամավորական գումարտակների ու գնդերի մարտական օգնությունն էր ռուսական զորաբանակներին: Մինչ ռուս-պարսկական երկրորդ պատերազմը, աշխարհազորային հայկական ջոկատները համալրվում էին տարերայնորեն, իսկ ռուսական զորքերի երևանյան երրորդ արշավանքի նախօրյակին այդ շարժումն ստացավ կազմակերպված և կանոնավոր բնույթ: 1827 թ. երևանյան արշավանքի ժամանակ Անդրկովկասի ժողովուրդները ստեղծեցին կամավորական դրուժիններ՝ կանոնավոր զորային միավորումների իրավունքով: Այդ նպատակով կովկասյան կորպուսի հրամանատարությունը հատուկ կանոնադրություն մշակեց («Առաջադրություն հայոց գումարտակների ձևավորման համար»), ուր նշված էին կամավորական դրուժինների կազմակերպման կոնկրետ պայմանները:

Հայկական կամավորական գումարտակների կազմավորման համար ծավալված շարժման գլխավորողներն էին ռուսական կողմնորոշման ջերմ պաշտպաններ, ականավոր հոգևոր ու քաղաքական գործիչ Ներսես Աշտարակեցին, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի տեսուչ, բանաստեղծ Հարություն Ալամդարյանը և ուրիշներ: Կամավորական ջոկատներն ունեին իրենց ազգային դրոշը, տարազը, զինավարժությունններն ու հրամանները տարվում էին հայերեն լեզվով, իսկ հրամանատարները զինվորական աստիճան ունեցող հայեր էին: Թիֆլիսում կազմավորված առաջին կամավորական ջոկատները մինչև Երևան հասնելը տասնապատկվեցին: Աշխարհազորայինները արտակարգ ոգևորությամբ ու խիզախորեն էին կռվում հայրենիքի ազատության համար: Նրանց քաջագործությունների ու արիությունների մասին մեծ դրվատանքով են խոսել ռուս զինվորական շատ գործիչներ, հարյուրավոր հայ կամավորներ արժանացան կառավարական պարգևների: Պարսկական տիրապետության դեմ ծավալված ժողովրդական զինված պայքարի լայն թափի մասին է վկայում նաև այն փաստը, որ դրան մասնակցում էին բազմաթիվ հայ կանայք ու աղջիկներ: Դարերով

սարկացած հայ գեղջկուհիներն իրենց հայրերի, եղբայրների, ամուսինների ու որդիների հետ, զենքը ձեռքներին անձնվիրաբար կռվում էին հայրենիքի ազատության ու սեփական պատվի պաշտպանության համար։ Հայրենասեր ու անձնազոհ շատ հայուհիներ այդ կռիվներում ընկան հերոսի մահով, սերունդների հիշողության մեջ թողնելով իրենց պայծառ անունները։

Կանգնած լինելով պատմական դաժան երկընտրանքի առջև, հայ ժողովուրդը կողմնորոշվեց դեպի Ռուսաստանը և չսխալվեց։ Չսխալվեց, որովհետև Ռուսաստանի օգնությամբ ազատագրվեց պարսկական բռնապետության դաժան լծից և մտավ զարգացման անհամեմատ ավելի բարձր աստիճանի վրա գտնվող ռուսական տիրապետության տակ։ Ռուսաստանում գոյություն ունեին վարչական կենտրոնացված կարգեր, կային կայուն օրենքներ։ Անշուշտ, ռուսական տիրապետության տակ Հայաստանում չվերացան սոցիալական, ազգային ու դասակարգային ճնշումները, սակայն գյուղացիներն ու արհեստավորները ազատվեցին պարսիկ խաների բարբարոսական հարստահարումներից ու կամայականություններից, սկսեցին զարգանալ գյուղատնտեսությունը, արհեստներն ու առևտուրը։ Միանալով Ռուսաստանին, Արևելյան Հայաստանն աստիճանաբար թևակոխեց զարգացման կապիտալիստական ուղին, որը նպաստեց երկրի արտադրաուժերի վերելքին։ Ստեղծվեց վարչա-տերիտորիալ մի ամբողջական միավոր՝ Հայկական մարզ, որը հետագայում դարձավ հայ ժողովրդի ամենից ավելի հաստատուն ու ապահով կենտրոնը։ Օտար նվաճողների ասպատակությունների ու բռնագաղթեցումների հետևանքով Հայաստանում նոսրացել էր հայ բնակիչների թիվը։ Գրեթե հայաթափվել էին պատմական շատ օրրաններ։ Անգամ հայկական այնպիսի խոշոր կենտրոններում, ինչպիսիք Արարատյան դաշտն ու Երևանն էին, ավելի շատ այլազգիներ կային, քան հայեր։ Միայն 1828 թ. փետրվարի 10-ի Թուրքմենչայի և 1829 թ. սեպտեմբերի 2-ի Ադրիանապոլսի պայմանագրերի ստորագրումից հետո, հայերին թույլատրվեց որոշակի ժամկետում Պարսկաստանից և Թուրքիայից ներգաղթել ռուսական տիրապետության սահմանները։ 1828—1830 թթ. ընթացքում Պարսկաստանից և Թուրքիայից, Արևելյան Հայաստան և Անդրկովկասի այլ մասերը ներգաղթեցին շուրջ 140 հազար հայեր։

Ռուսաստանի հետ միանալու շնորհիվ Արևելյան Հայաստանն ազատվեց տնտեսական լճացումից ու քայքայումից և իր զարգացմամբ անհամեմատ առաջ անցավ հարևան Պարսկաստանից ու Թուրքիայից։ Ընդգծելով Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու առաջադիմական նշանակությունը, չպետք է մոռանալ, որ հայ ժողովուրդը ցարիզմի տիրապետության տակ չստացավ և չէր կարող ստանալ ազատություն ու անկախություն։ Ինչպես ցարական Ռուսաստանի կազմում եղած մյուս ժողովուրդները, այնպես էլ հայ ժողովուրդը ենթարկվում էր ազգային, գաղութային ճնշման, զրկված էր ինքնավարությունից և ազատությունից։ Սակայն, միանալով Ռուսաստանին, հայ ժողովուրդն իր բախտը կապեց ռուս ժողովրդի, ռուսական հեղափոխական շարժումների հետ և ռուս պրոլետարիատի հետ դաշնակցած գրոհեց հին աշխարհի դեմ։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ ստանալով սոցիալական ազատագրություն, ազգային պետականություն, Հայաստանը դարձավ ծաղկուն սոցիալիստական հանրապետություն։

**ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ Գ. Ա.**

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության պետ

# ԱՌԱՋԻԿԱ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ ԵՎ ՄԵՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ 1970 թ. հունվարի 15-ին անց է կացվելու հերթական՝ հինգերորդ համամիութենական մարդահամար, որի տարեթիվը համընկնում է աշխարհի շատ պետությունների մարդահամարների տարեթվի հետ։

Մեր երկրում առաջին մարդահամարն անցկացվեց 1920 թ. օգոստոսին՝ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ։ Երկրորդ մարդահամարը անցկացվեց 1926 թ. դեկտեմբերի 17-ին, երրորդը՝ 1939 թ. հունվարի 27-ին, իսկ չորրորդը՝ 1959 թ. հունվարի 15-ին։ Հիշենք, որ ցարական Ռուսաստանում միակ լրիվ մարդահամարն անց է կացվել 1897 թ.։

Մարդահամարների անցկացումը սոցիալ-քաղաքական և ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող պետական միջոցառում է, որը տալիս է բնակչության թվի ու կազմի ամենաճիշտ տվյալներ։ Այդ միջոցառման արդյունքները հիմնական ելակետային հիմք են՝ պետական կառավարման օրգանների աշխատանքի, ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման, բնակչության նյութական բարեկեցության և կուլտուրայի բարձրացման, գիտական հետազոտությունների ու ժողովրդական տնտեսության մի շարք կարևորագույն պրոբլեմների լուծման համար։

Վերջին, 1959 թ. մարդահամարից հետո մեր երկրում տեղի են ունեցել քաղաքական ու տնտեսական մեծ փոփոխություններ։ Սովետական Միության ժամանակակից տերիտորիայի սահմաններում ազգաբնակչության թիվը 1897 թ. կազմել է 124,6, 1926 թ.՝ 147,0, 1939 թ.՝ 170,6, 1959 թ.՝ 208,8, իսկ առ 1-ը հունվարի 1968 թ. (ըստ հաշվարկումների)՝ 236,7 միլիոն մարդ։ Այդ թվում Հայկական ՍՍՀ-ում 1897 թ.՝ 798 հազար, 1926 թ.՝ 881, 1939 թ.՝ 1282, 1959 թ.՝ 1763 և առ 1-ը հունվարի 1968 թ.՝ 2306 հազար մարդ։ Թվերը ցույց են տալիս, որ մեր երկրի ազգաբնակչությունը 1968 թ. հունվարի 1-ի դրությամբ, 1926 թ. դեկտեմբերի 17-ի նկատմամբ աճել է մոտ 1,6 անգամ, իսկ Հայաստանինը՝ 2,6 անգամ։

Անցած ժամանակաշրջանում մեր երկիրը հետամնաց ագրարային երկրից վերափոխվեց և դարձավ աշխարհի հզոր, ինդուստրիալ տերություններից մեկը։ Ինդուստրիայի աննախընթաց զարգացումն իր հերթին բերեց նոր քաղաքների և քաղաքատիպ ավանների առաջացում և քաղաքային բնակչության զգալի աճ։ Այսպես. եթե 1897 թ. մարդահամարի տվյալներով մեր երկրում քաղաքի ազգաբնակչությունը կազմում էր ամբողջ բնակչության ընդամենը 15,0, 1926 թ.՝ 17,4, 1939 թ.՝ 33, 1959 թ.՝ 48 տոկոսը, ապա այժմ ըստ հաշվարկումների, այն կազմում է 55 տոկոսը։ Հայաստանում քաղաքային բնակչության թիվը 1897 թ. կազմում էր ամբողջ բնակչության 12,2, 1926 թ.՝ 19,0, 1939 թ.՝ 28,6, 1959 թ.՝ 50,0 տոկոսը. ներկայումս այն կազմում է 56 տոկոսը։

Պետք է նշել, որ 1959 թ. մարդահամարից հետո ՍՍՀՄ-ում առաջացել են 227 նոր քաղաքներ և 545 քաղաքատիպ վայրեր։ Առավել մեծ փոփոխություններ են տեղի ունեցել մեր հանրապետությունում։ Եթե 1959 թ. սկզբին Սովետական Հայաստանում կային 14 քաղաք (այդ թվում 4 հանրապետական ենթակայության) և 21 քաղաքատիպ ավան, ապա այժմ մենք ունենք 23 քաղաք (այդ թվում 14-ը հանրապետական ենթակայության) և 27 քաղաքատիպ ավան։

Ավելի արագ տեմպերով է աճել հանրապետության առանձին քաղաքների բնակչությունը։ Այժմ Երևանում ապրում է մոտ 700 հազար մարդ կամ 1959 թ. համեմատությամբ 35 տոկոսով ավելի։ Բնակչության թիվն այդ տարիներին զգալի չափով ավելացել է նաև մյուս քաղաքներում, ընդ որում Կիրովական քաղաքում՝ 72, Դիլիջանում՝ 34 տոկոսով, նորաստեղծ քաղաքներից Աբովյանում՝ 3,6, Չարենցավանում՝ 3,3 անգամ և այլն։

Հանրապետության էկոնոմիկայի աննախընթաց վերելքի մասին են խոսում նաև հետևյալ տվյալները։ Եթե 1957 թ. սկզբին ժողովրդական տնտեսության մեջ (առանց կոլտնտեսային արտադրության զբաղված էր 346 հազար բանվոր և ծառայող, ապա 10 տարի անց, 1967 թ. սկզբին, այն կազմեց 682 հազար, իսկ այժմ (ըստ հաշվարկների)՝ ավելի քան 710 հազար մարդ, ընդ որում հասարակական արտադրության մեջ կանանց ընդգրկումը նույն ժամանակաշրջանում 37 տոկոսից հասել է 41 տոկոսի։

Անցած ժամանակաշրջանում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել բնակչության սեռահասակային կազմի, կրթական մակարդակի, կուլտուրայի, զբաղվածության, ընտանեկան վիճակի մեջ։

Վիճակագրության կատարելագործման և վիճակագրական տվյալների մշակման գործում էլեկտրական և էլեկտրոնային հաշվողական մեքենաների լայն կիրառումն այժմ թույլ է տալիս բավականին ճշգրիտ տվյալներ ունենալ ծննդի, մահացության, աշխատունակ բնակչության զբաղվածության և ազգաբնակչության վիճակում կատարված փոփոխությունների մասին։

Այդ տվյալները հնարավորություն են տալիս մարդահամարների միջև ընկած ժամանակաշրջանում (հաշվարկումների միջոցով) որոշել ազգաբնակչության քանակը և մի շարք այլ հարցեր՝ կապված նրա տեղաշարժերի ու զբաղվածության հետ։

Եթե հաշվարկումները կարելի է կատարել ազգաբնակչության քանակական աճի և նրա տեղաշարժի վերաբերյալ, ապա նույնը, առանց մարդահամարի ստույգ տվյալների, չի կարելի կատարել ազգաբնակչության տարիքային կազմի, ընտանեկան վիճակի, ազգության, սեռի, կուլտուրական մակար-



դակի բարձրացման, զբաղվածության և այլ հարցերի ուղղությամբ։ Այս հարցերի պատասխանը կարող է տալ միայն մարդահամարը։

Քաղաքական և ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող պետական այդպիսի կարևոր միջոցառումը հաջողությամբ կարելի է անցկացնել, եթե այն լավ նախապատրաստվի, ապահովվի նրա տվյալների լրիվությունը և աշխատավորության ակտիվ մասնակցությունն այդ գործին։

Առաջիկա մարդահամարի անցկացումը հանձնարարված է պետական վիճակագրության օրգաններին, սակայն կազմակերպչական աշխատանքների հիմնական ծանրությունը ընկնելու է նաև աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետների և համապատասխան կուսակցական և պրոֆմիութենական կազմակերպությունների վրա։

ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի բյուրոն, հանրապետության Մինիստրների սովետը և ՀԱՄԽ-ը մեծ նշանակություն տալով անցկացվող մարդահամարին, համատեղ որոշում են ընդունել մարդահամարին նախապատրաստվելու միջոցառումների մասին, հաստատելով նախապատրաստական ժամանակաշրջանի օրացուցային ծրագիրը։ Այդ որոշումով՝ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներին, աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետների գործադիր. կոմիտեներին հանձնարարված է լայն բացատրական աշխատանք ծավալել բնակչության շրջանում և ապահովել նախապատրաստական ժամանակաշրջանում նախատեսված բոլոր միջոցառումների կատարումը։

Այժմ, երբ ամենուրեք սկսված են մարդահամարի նախապատրաստական աշխատանքները, աշխատավորների դեպուտատների տեղական սովետները պետք է արագորեն կարգի բերեն ու ավարտեն քաղաքների ու ավանների փողոցների անվանակոչումը, տների համարակալումը, քաղաքային վայրերում տնային գրքերի, իսկ գյուղերում՝ ծխամատյանների կարգավորումը այն հաշվով, որպեսզի առկա բնակչությունը քաղաքներում լրիվ գրանցված լինի տնային գրքերում, գյուղերում՝ ծխամատյաններում։ Առանձնապես ուշադրություն պետք է դարձնել երեխաների և դեռահաս (մինչև 16 տարեկան) երիտասարդների գրանցմանը, մանավանդ փորձը ցույց է տալիս, որ շատ տեղերում այդ հասակի ազգաբնակչությունը մեծ մասամբ չի գրանցված։ Սա սոսկ տեխնիկական գործ չէ, այլ հրամայական պահանջ՝ որպեսզի քաղաքային վայրերում տնատիրությունների և գյուղական բնակավայրերի ցուցակները 1969 թ. հունվարի 1-ից ճշտորեն կազմվեն։ Այդ ցուցակների ճշգրտությունը մարդահամարի ճիշտ և լրիվ անցկացման առաջին նախապայմանն է։

Թե ինչի կարող է հանգեցնել հիշյալ ցուցակների ոչ լրիվությունը, կարող ենք ցույց տալ մի քանի օրինակով։ Ըստ պաշտոնական հաշվարկումների, Երևան քաղաքի ազգաբնակչությունն առ 1-ը հունվարի 1968 թ. կազմում է 687 հազար մարդ, բայց քաղաքային սովետի գործադիր կոմիտեն գործնական հաշվարկումներից ելնելով սահմանում է 700 հազարից ավելի։ Եվ դա, մեր կարծիքով, հնարավոր է, որովհետև ստուգումները ցույց են տալիս, որ քաղաքի ազգաբնակչության որոշ մասը, նույն թվում դեռահասները և երեխաները, դեռևս գրանցված չեն տնային գրքերում։ Ստուգումներից պարզվել է նաև, որ Աշտարակ քաղաքի ազգաբնակչության 35 և Պեմզաշեն ավանի ազգաբնակչության 70 տոկոսը գրանցված չեն տնային գրքերում։ Նույնպիսի վիճակ գոյություն ունի Հրազդան, Թալին, Չարենցավան և այլ քա-

ղաքներում ու քաղաքատիպ վայրերում։ Տարօրինակ է, բայց փաստ, որ Չարենցավանում մշտական բնակչության մեծ մասն աշխատում է արդյունաբերական ձեռնարկություններում, ստանում է նոր բնակարաններ, սակայն տնային գրքերում գրանցված չէ։ Այս լուրջ թերության վերացումը տեղական սովետների, միլիցիայի անձնագրային սեղանների, արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների ղեկավարների առաջնակարգ խնդիրն է։

Զգալի թերություններ կան նաև փողոցների անվանակոչման, տների և բնակարանների համարակալման գործում։ Ճիշտ է, քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեները այդ աշխատանքների կարգավորման նպատակով որոշումներ են ընդունել, սակայն հետևողականություն չեն ցուցաբերում դրանց կիրառման գործում։

Այդ թերությունների վերացման և մարդահամարի հաջող նախապատրաստման գործում մեծ է կուսակցական կազմակերպությունների դերը։ Նրանք պետք է վերահսկեն ընդունված որոշումների անթերի կատարումը, պարբերաբար քննության առնեն մարդահամարի նախապատրաստման ընթացքը, կոնկրետ միջոցառումների դիմեն եղած թերությունները շտապ վերացնելու և մարդահամարը ժամանակին ու բարձր մակարդակով անցկացնելու համար։

Մարդահամարը մասսայական մեծ միջոցառում է, որին բացի վիճակագրական օրգանների աշխատողներից, մասնակցելու են մեծ թվով հաշվարարներ, վերահսկիչներ և այլ աշխատողներ։ Բավական է նշել, որ հանրապետության բնակավայրերի տերիտորիան բաժանվելու է մոտ հինգ հազար հաշվարարական տեղամասերի, ուր պետք է աշխատեն մոտ 6.500 հաշվարարներ, հրահանգիչներ-հսկիչներ և մարդահամարի բաժինների վարիչներ, նրանց տեղակալներ և այլ աշխատողներ, չհաշված պրոպագանդիստների, ագիտատորների, կազմակերպիչների այն մեծ բանակը, որը պետք է կազմակերպչական և բացատրական ակտիվ աշխատանք ծավալի ազգաբնակչության մեջ։

Արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, սովխոզների, կոլտնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները պետք է վիճակագրական օրգաններին այժմվանից լայն օգնություն ցույց տան՝ տեղերում հաշվարարներ և հրահանգիչներ ընտրելու գործում։ Այդ կարևոր աշխատանքում պետք է ընդգրկվեն այնպիսի մարդիկ, որոնք պատասխանատվության բարձր գիտակցությամբ վերաբերվեն ստանձնած գործին, ապահովեն իրենց հանձնարարված տեղամասի ազգաբնակչության լրիվ ընդգրկումը, հարցաթերթիկների լրիվ և որակով լրացումը, նրանց նախնական մշակումն ու ժամանակին հանձնումը։

Մարդահամարի կապակցությամբ ստեղծվող քաղաքային ու շրջանային բաժինների վարիչների, նրանց տեղակալների, հաշվարարների և հաշվիչ վերստուգիչների կազմում պետք է լայնորեն ընդգրկել ակտիվ ինտելիգենտների, ուսանողների, մեծահասակ աշակերտների, ուսուցիչների, պաշտոնաթող սպաների, թոշակառուների և, առանձնապես, այն մարդկանց, որոնք մասնակցել են 1959 թ. մարդահամարին։

Մարդահամարի անցկացման գործում մեծ է նաև մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, դասախոսական պրոպագանդայի դերը։ Դրանց միջոցով այժմվանից պետք է բացատրական լայն աշխատանք տանել մարդահա-



մարի քաղաքական և տնտեսական նշանակության մասին, կազմակերպվեն զրույցներ և կոնսուլտացիաներ՝ մարդահամարի կարգի, նրա հարցաթերթիկների առանձին կետերի նշանակության, հարցերի ճիշտ և լրիվ պատասխան տալու անհրաժեշտության մասին։ Անհրաժեշտ է պարբերական մամուլի էջերում, ռադիոյի և հեռուստատեսության միջոցով վեր հանել մարդահամարի նախապատրաստական շրջանում տեղ գտած թերությունները, միջոցներ նշելով՝ դրանց շուտափույթ վերացման համար։

Պրոպագանդայի և ագիտացիայի բոլոր միջոցների գործադրմամբ պետք է հասնել այն բանին, որ հանրապետության բոլոր քաղաքացիները տեղյակ լինեն մարդահամարի մասին, գիտենան, որ մարդահամարն անց է կացվում 1970 թ. հունվարի 14-ից լույս 15-ը, ըստ բնակավայրի և ոչ թե աշխատանքի տեղի, որ նրանք պարտավոր են ճիշտ պատասխանել բոլոր հարցերին, որոնք առաջադրված են հարցաթերթիկներում։

ՍՍՀՄ կառավարության հանձնարարությամբ կենտրոնական վիճակագրական վարչությունը 1967 թ. ապրիլ ամսում երկրի 9 տարբեր շրջաններում անցկացրեց փորձնական մարդահամար։ Անդրկովկասում այդպիսի մարդահամար անցկացվեց Բաքու քաղաքի Կիրովի անվան շրջանում։ Փորձնական մարդահամարի նպատակն էր գործնականում ստուգել մարդահամարի հարցաթերթիկում պարունակված հարցերի լրիվությունն ու անհրաժեշտությունը։ Ստուգվեց նաև մարդահամարի անցկացման կարգը՝ քաղաքացիների ինքնագրանցման և դրա համար առանձնացված հատուկ հաշվարարների միջոցով։ Ստուգվեց նաև թե հնարավոր չէ՞ արդյոք հարցերի մի մասը լրացնել ընտրովի կարգով քաղաքացիների 25 տոկոսին արված հարցումների միջոցով։

Փորձնական մարդահամարի նյութերի ամփոփումը ցույց տվեց, որ կազմված հարցաթերթիկի հարցերն այժմեական են և բխում են երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հետագա խնդիրներից։ Փորձնական մարդահամարի նյութերը հիմնավորեցին այն տեսակետը, որ դա պետք է անցկացնել ոչ թե քաղաքացիների ինքնագրանցման, այլ այդ նպատակով առանձնացված հաշվարարների միջոցով, քանի որ այս կարգը տալիս է պետական միջոցների և նյութական արժեքների ավելի մեծ խնայում, իսկ ստացվող նյութերն ավելի որակով են և լրիվ։ Փորձնական մարդահամարը միաժամանակ ցույց տվեց, որ մի շարք հարցերի պատասխանը կարելի է ստանալ ընտրովի կարգով ազգաբնակչության 35 տոկոսին արված հարցումներից, քանի որ այդ հարցերի լրիվ (100 տոկոսային) և ընտրովի (25 տոկոսային) հարցումների ժամանակ արդյունքները շատ մոտավոր են ստացվել՝ 95—98 տոկոսային ճշտությամբ։

Այս բոլոր աշխատանքները կատարելուց և երկրի գիտնականների ու դեմոգրաֆների հետ խորհրդակցելուց հետո, մշակվեց և ՍՍՀՄ կառավարության հաստատմանը ներկայացվեց գալիք մարդահամարի հարցաթերթի վերջնական ձևը։

Հիշեցնենք, որ վերջին՝ 1959 թ. մարդահամարի հարցաթերթը բաղկացած էր 15 հարցերից։ Այն՝ անցկացվեց մարդկանց ընդհանուր հարցումների միջոցով՝ հաշվարարների օգնությամբ։ Գալիք մարդահամարի հարցաթերթը բաղկացած է 18 հարցից, որից 11-ի պատասխանը պետք է ստանալ բնակչությունից համատարած հարցումների միջոցով, իսկ հարցաթերթի 7 հարցերի պատասխանը պետք է ստանալ բնակչության 25 տոկոսից հարցմամբ։ Ի

ղեմ՝ անատիրությունների ընտրությունը կատարվելու է մեխանիկորեն, չորսից մեկի հաշվով:

Բնակչության ընդհանուր հարցման 11 հարցերը հետևյալներն են՝ (տալիս ենք հարցադրում ըստ բնագրի):

1. Առնչությունն ընտանիքի գլխավորի հետ (կինը, ամուսինը, տղան, աղջիկը, մայրը, հայրը, քույրը, եղբայրը կամ քրոջ որդին և այլն):

2. Մշտական այստեղ բնակվողի, բայց ժամանակավոր բացակայողի համար գրել՝ ա) բացակայության պատճառը, բ) որքան ժամանակ է բացակայում:

3. Ժամանակավոր բնակվողի համար գրել՝ ա) մշտական բնակավայրը, բ) որքան ժամանակ է բացակայում մշտական բնակավայրից:

4. Սեռը (արական, իգական):

5. Քանի տարին է լրացել, իսկ մեկ տարեկանից փոքր երեխայի համար ամիսը:

6. Ներկայումս գտնվում է ամուսնության մեջ, թե ոչ:

7. Ազգությունը: Օտարերկրյա հպատակների համար ցույց տալ նաև քաղաքացիությունը:

8. Մայրենի լեզուն, նշել նաև ՍՍՀՄ ժողովուրդների մի այլ լեզու, որին ազատ տիրապետում է:

9. Կրթությունը՝ բարձրագույն, թերի բարձրագույն, միջնակարգ, միջնակարգ մասնագիտական, ընդհանուր միջնակարգ, ոչ լրիվ միջնակարգ, տարրական, տարրականից ցածր: Տարրականից բարձր կրթություն ունեցող, բայց լրիվ միջնակարգ կրթություն չունեցող անձերի համար գրել նույնպես, որ դասարանում (կուրսում) է սովորում կամ քանի դասարան (կուրս է ավարտել:

10. Սովորողի համար նշել ուսումնական հաստատության տիպը (ԲՈՒՀ, տեխնիկում, հանրակրթական դպրոց, պրոֆտեխ. ուսումնարան, այլ դպրոց կամ կուրսեր), որում սովորում է:

11. Ապրուստի աղբյուրը՝ աշխատանք, գյուղատնտեսական անձնական օժանդակ տնտեսություն, հարազատների խնամքի տակ, պետության խնամքի տակ (կենսաթոշակ, թոշակ, մանկատուն և այլն), այլ աղբյուր (նշել որպիսին):

Ինչպես երևում է այս հարցերի մշակումը պետական մեծ նշանակություն կունենա:

Ինչ վերաբերում է մարդահամարի հարցաթերթի մյուս 7 հարցերին, որոնք պետք է լրացնեն ազգաբնակչության 25 տոկոսի հարցմամբ, դրանք հետևյալներն են՝

12. Աշխատանքի վայրը (ձեռնարկություն, կոլտնտեսություն, հիմնարկության անունը կամ իր անձնական տնտեսությունը, որում աշխատում է):

13. Զբաղմունքն այդ նույն աշխատավայրում (պաշտոնը կամ կատարած աշխատանքը), կենսաթոշակառուների համար նշել նախկին հիմնական զբաղմունքը:

14. 1969 թ. ոչ լրիվ աշխատողների համար գրել՝ աշխատել է մշտական, սեզոնային կամ ժամանակավոր և նշել 1969 թ. ընթացքում աշխատած ժամանակի տևողությունն ամիսներով:

15. Հասարակական խումբը (բանվոր, ծառայող, կոլտնտեսական, տնայնագործ, գյուղացի-մենատնտես, պաշտամունքի սպասավոր):



16. Որքա՞ն ժամանակ է անընդհատ բնակվում տվյալ վայրում:

17. Այստեղ 2 տարուց պակաս բնակվողների համար նշել նախորդ մշտական ապրելու վայրը (հանրապետություն, շրջան, քաղաք կամ քաղաքատիպ այլ վայր, գյուղական վայր):

18. Բնակավայրի փոփոխման պատճառը:

Ինչպես երևում է, այս հարցերի ամփոփումը մեծ սոցիոլոգիական նշանակություն կունենա և հարուստ նյութ կտա պետական և գիտական ընդհանրացումների համար, իսկ պլանային կազմակերպությունների համար՝ հիմնական բազա կծառայի ժողովրդական տնտեսության զարգացման տարբեր ճյուղերի ճիշտ պլանավորմանը:

Սակայն այս հիմնական հարցաթերթիկի լրացումով չեն սպառվում առաջիկա մարդահամարի խնդիրները: Սովետական Միության կառավարությունը նպատակահարմար գտավ մարդահամարին զուգընթաց անցկացնել ևս երկու մեծ ուսումնասիրություն: Դրանցից առաջինն այն է, որ որոշվի աշխատունակ հասակ ունեցող բնակչության այն մասը, որն զբաղված է տնային կամ գյուղատնտեսական անձնական օժանդակ տնտեսությունում, տղամարդիկ՝ 16—59 և կանայք 16—54 տարեկան հասակում, որոնք որևէ պատճառով այժմ չեն աշխատում հասարակական արտադրության մեջ: Այդ ուսումնասիրության հարցաթերթիկը բաղկացած է 11 հարցից, ըստ որում՝ 1. ազգանուն, անուն, հայրանուն, 2. սեռը, 3. տարիքը, 4. ապրուստի աղբյուրը, 5. կրթությունը, 6. ո՞ր բարձրագույն, միջնակարգ մասնագիտական, պրոֆտեխուսուցման հաստատությունը կամ կուրսն է ավարտել, ո՞ր թվին և ի՞նչ մասնագիտություն է ձեռք բերել, 7. մասնագիտությունը կամ զբաղմունքը, որով նա կարող է աշխատել, 8. որքա՞ն ժամանակ է չի աշխատում, 9. այժմ կարիք ունի՞ աշխատանքի տեղավորման, 10. նշել պայմանները, որոնցով նա կարող է անցնել աշխատանքի, 11. կանանց համար ցույց տալ երեխաների քանակը նույն թվում մանկական հիմնարկությունում, դպրոց գիշերօթիկում կամ երկարօրյա դպրոցներում երեխաներին տեղավորելու պահանջը:

Այս հարցաթերթիկը պետք է լրացվեն բոլոր այն աշխատունակ քաղաքացիների վերաբերյալ, որոնք չեն մասնակցում հասարակական արտադրության և զբաղված են տնային տնտեսություններում կամ անձնական օժանդակ գյուղատնտեսությունում: Դրա մշակումը սպառիչ նյութ կտա հանրապետության աշխատանքային ռեսուրսները հաշվարկելու, դրա հիման վրա արտադրուժերը հետագայում ճիշտ տեղաբաշխելու և, ամենակարևորն է, միջոցառումներ կմշակվեն ներկայումս չաշխատող ազգաբնակչության մի զգալի մասը հասարակական արտադրության մեջ ներգրավելու համար:

Մյուս ուսումնասիրությունը վերաբերում է հանրապետության մի շարք խոշոր քաղաքների քաղաքատիպ վայրերի բնակչության ներքին տեղաշարժին (միգրացիա): Այդ հարցաթերթիկը բաղկացած է 6 հարցից և մի քանի ենթահարցերից: Դրանք են՝ 1. ազգանուն, անուն, հայրանուն, 2. սեռը, 3. տարիքը, 4. տվյալ անձը բանվո՞ր է, ծառայո՞ղ կամ սովորո՞ղ, 5. աշխատանքի և ուսուցման տեղը (եթե լրացնողը ապրում է հանրապետության որևէ քաղաքում, ցույց տալ նաև շրջանը, իսկ քաղաքից դուրս ապրելիս ցույց տալ՝ նաև որ շրջանը և բնակավայրը), 6. այն ժամանակը, որը ծախսվում է աշխատանքի կամ ուսուցման վայրը հասնելու համար (ժամանակը մոտավորապես) և ի՞նչ միջոցներով՝ (տրամվայով, ավտոբուս, տրոլեյբուս, երկաթգիծ, ավտոմեքենա, մոտոցիկլ, մոտոռոլեր, հետիոտն) բացի այդ ժամանակի

ծախսումը՝ տրամվայ, ավտոբուս, տրոլեյբուս և այլ երթևեկության միջոցներին սպասելու համար։ Ընդամենը ծախսված ժամանակը։

Այս ուսումնասիրությունը նախատեսվում է կատարել հանրապետության Երևան, Լենինական, Կիրովական, Էջմիածին, Հրազդան և Ջարենցավան քաղաքներում և նրանց մերձակա շրջաններում՝ 25 կմ շառավղով։ Հիշյալ քաղաքների ազգաբնակչության կողմից այս հարցաթերթի լրացման արդյունքների ամփոփումը հնարավորություն կտա ճիշտ որոշելու քաղաքաշինության հետագա խնդիրները, աշխատավորության նորմալ տեղաշարժի համար անհրաժեշտ երթևեկության միջոցառումների պլանավորումը և ժողովրդա-տնտեսական մի շարք կարևոր հարցերի լուծումը։

Ինչպես տեսնում ենք առաջիկա մարդահամարի խնդիրները բավականին բարդ են ու պատասխանատու։

Մարդահամարը սկսվելու է 1970 թ. հունվարի 15-ին առավոտյան ժամը 8-ից (տեղական ժամանակով) և շարունակվելու է մինչև հունվարի 22-ը ներառյալ։ Նրա կրիտիկական մոմենտը համարվում է հունվարի 14-ի ժամը 24-ը։ Բոլոր քաղաքացիները մարդահամարի հարցերին պետք է պատասխանեն այդ ժամանակ գտնված բնակավայրի և տան հասցեով։ Մարդահամարի թերթերը պետք է լրացնի հաշվարարը՝ բոլոր տները շրջագայելու միջոցով, որտեղ ապրում կամ կարող է ապրել բնակչությունը (ներառյալ և ոչ բնակելի շենքերը)։ Հարցաթերթերը լրացվում են յուրաքանչյուր բնակարանի (տուն, պահակատուն և այլն) և հանրակացարանների ամեն մի սենյակի համար։ Մարդահամարի հարցաթերթերում բոլոր տեղեկությունները գրանցվում են հարցման միջոցով։

Մեկ հոդվածի շրջանակներում դժվար է մեկ առ մեկ պարզաբանել հարցաթերթիկի ամեն մի հարցի նշանակությունը և լրացման կարգը։ Հարցերի մեծ մասը շատ պարզ են և նրանց լրացումը դյուրին, սակայն կան հարցեր, որոնց պատասխանը պետք է տալ լավ հրահանգավորվելուց հետո, ասենք՝ փոքրահասակ երեխաների ազգությունը որոշելիս, եթե նրա ծնողները տարբեր ազգերի են պատկանում և նրանց մեջ կան վեճեր, կամ մայրենի լեզվի հարցի բնորոշման ժամանակ, կամ ապրուստի աղբյուրը որոշելու ժամանակ, երբ լրացնողը թոշակառու է ու միևնույն ժամանակ աշխատում է և այլն։

Սովետական վիճակագրության հիմնադիր Վ. Ի. Լենինը ուսուցանում է, որ «մարդահամարի գործը գերատեսչական գործ չէ, նա հանրապետության գործ է, բոլոր սովետական հիմնարկների գործն է»։ Այո՛, հասարակության գործն է, կուսակցական, պետական և պրոֆմիութենական կազմակերպությունների գործն է, որը պետք է կատարվի պատշաճ որակով ու ժամանակին։



ՄԻՆԱՍՅԱՆ Ա. Կ.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԿԱՆԽԱՏԵՍՄԱՆ ՄԱՍԻՆ

Գիտության նվաճումները մարդկային մտքի դարավոր ստեղծագործության արդյունք են։ Նրանք արտացոլում են օբյեկտիվ իրականության տարբեր կողմերը, բացահայտում վերջիններիս զարգացման օրինաչափությունները։ Քանի որ անսահման տիեզերքն իրենից ներկայացնում է մատերիայի դրսևորման տարբեր ձևերի մի բարդ, և անսպառ ամբողջություն, ապա դրանից հետևում է, որ մատերիայի փոփոխման տարբեր «աստիճանների» միջև գոյություն ունի օրինաչափ պատճառական պայմանավորվածություն։ Այդ օրինաչափ կապը դրսևորվում է ոչ միայն մատերիայի տարբեր «աստիճանների», այլև միևնույն աստիճանի տարբեր էտապների միջև։

Մատերիայի կոնկրետ ձևերի միջև եղած պատճառական կապերի ուսումնասիրությունը գիտական իմացության հիմքն է։ Այդ բանը լավ էր ըմբռնել հին աշխարհի ականավոր մտածող, ատոմիստական ուսմունքի հիմնադիր՝ Դեմոկրիտը։ Նա մեծ պատիվ էր համարում երևույթների պատճառական բացատրությունը։ Դեմոկրիտին է պատկանում այն միտքը, որ ինքը կգերադասեր գտնել մեկ պատճառական բացատրություն, քան թե տիրանալ պարսկական գահին։ Նա չէր կասկածում իրերի և երևույթների պատճառական կախվածության նկատմամբ, գիտության խնդիրները համարում էր վերջինիս բացահայտումը, թեև պատճառական կապերի բոլոր ձևերը միակողմանիորեն հանգեցնում էր անհրաժեշտության, ժխտելով պատահականությունը։

Եթե չլիներ իրերի և երևույթների միջև եղած պատճառական կապը, ապա անհնար կլիներ օբյեկտիվ իրականության օրինաչափ զարգացումը և վերջինի արտացոլումը մտածողության մեջ։

* * *

Օբյեկտիվ իրականության օրինաչափ զարգացումը և վերջինիս հիմքում ընկած իրերի, երևույթների, պրոցեսների ներքին, պատճառական պայմանավորվածությունը անսպառ նյութ է տալիս գիտական մտքի զարգացման համար։ Գիտական ճանաչողությունը, իր ծագման մոմենտներից, սերտորեն

կապված է մարդկանց գործունեության տարբեր բնագավառների և, առաջին
հերթին, նյութական արտադրական գործունեության հետ: Արտադրության պա-
հանջները եղել և մնում են գիտության առաջընթացի վճռական և որոշիչ ազ-
դակները: Արտադրությունը խթանելով գիտության զարգացումը, նոր և բա-
րենպաստ պայմաններ է ստեղծում իր հետագա վերելքի համար: Գիտության
նվաճումները, տեխնիկական կիրառման միջոցով, ներդրվում են արտադրու-
թյան մեջ, ընդարձակում են վերջինիս շրջանակները, բազմապատկում են ոչ
միայն մինչ այդ արտադրվող նյութական բարիքները, այլև ստեղծում են նոր
բարիքներ, դրանով իսկ անընդհատ մեծացնելով մարդու տիրապետությունը
բնության նկատմամբ: Արտադրության զարգացումն իր հերթին նպաստավոր
պայմաններ է ստեղծում գիտության վերելքի համար: Այստեղ առաջին հերթին
նկատի ունենք գիտության տեխնիկական զինվածությունը: Մեր օրերում գի-
տության զարգացման տեմպերը շատ բանով կախված են այն բանից, թե ժա-
մանակակից ինչպիսի հզոր, նուրբ և մեծ ճշտությամբ աշխատող սարքավո-
րումներով է զինված այն:

Գիտական իմացությունն իր առջև նպատակ է դնում բացահայտել այն
կարևոր օրենքները և օրինաչափությունները, որոնցով զարգանում է օբյեկտիվ
իրականության տվյալ բնագավառը: Բացահայտվող և ճանաչվող օրենքները,
անկախ նրանց ընդհանրության աստիճանից և բնության արտացոլման խորու-
թյունից, կարող են կատարել երկակի դեր՝ մի կողմից հանդես գալ որպես մար-
դու պրակտիկ գործունեության կանխամտածված պլանաչափ աշխատանքի
հիմք, իսկ մյուս կողմից, օգնել իմացության շրջանակների ընդլայնմանը, նոր
երևույթների և պրոցեսների կանխատեսմանը: Այս երկրորդ կողմի մեջ սպե-
ցիֆիկ ձևով դրսևորվում է գիտության զարգացման հարաբերական ինքնուրույ-
նությունը, բացահայտվում է նրա ինքնազարգացման կարևոր ազդակներից
մեկը: Այստեղից պարզ է դառնում, թե ինչ կարևոր նշանակություն ունեն իմա-
ցության շրջանակների լայնացման գործում գիտության կողմից բացահայտ-
վող տեսությունները, օրենքները, կանոնները և այլն: Ինչպես հետագայում
կտեսնենք, վերջիններս յուրատեսակ ուղեցույցի դեր են կատարում գիտական
իմացության ասպարեզում, լուսավորում են նրա զարգացման ուղին, հիմք են
հանդիսանում գիտական կանխատեսման համար:

* * *

Այժմ մոտիկից քննարկենք այն հարցը, թե ինչի հիման վրա կարելի է նախ-
օրոք որոշել ապագա անցքերի ժամանակը, հաջորդականության կարգը,
կրկնման պարբերականությունը, առաջ եկող հետևանքների ծավալը և խորու-
թյունը: Նշված մոմենտների ճիշտ հաշվառումը կարևոր նշանակություն ունի
պրակտիկ գործունեության համար: Անցքերի հաջորդականության օրինաչափու-
թյան ըմբռնումը հնարավորություն է տալիս նախօրոք համոզվելու, որ այս-
ինչ երևույթին անպայման հետևելու է այնինչ երևույթը և այն էլ որոշակի
պարբերականությամբ: Այսպես, օրինակ, մարդն իր պրակտիկ փորձից գիտե,
որ ցերեկվան հետևում է գիշերը, որ տարվա չորս եղանակները կանոնավոր
կերպով հաջորդում են մեկը մյուսին: Այդ իմացությունը նրան հնարավորու-
թյուն է տալիս համապատասխան ձևով կարգավորելու իր նյութական,
արտադրական գործունեությունը: Կարելի է բերել բազմաթիվ ուրիշ օրինակներ,
երբ անցքերի կանոնավոր հաջորդականությունը և պարբերական կրկնությունը



հիմք են տալիս փորձնական ճանապարհով որոշելու նրանց վրա հասնելու ժա-
մանակը և հաջորդականության կարգը, թեև առանձին դեպքերում կարող է
խմբռնվել վերջիններիս ներքին էությունը: Առանց այն կարգի կողմնորոշման,
մարդիկ կհանդիպեին մեծ դժվարությունների և կգործեին առանց հեռանկարի:

Իրենց դարավոր փորձից մարդիկ գիտեն, որ հեղուկներն ավելի բարձր մա-
կարդակից հոսում են ավելի ցածրը, որ երկու տարբեր խտության լուծույթներ
խառնելիս նրանց խտությունները հավասարվում են, որ շարժման միջոցով
միշտ կարելի է տարածության մի կետից անցնել մյուսին և այլն: Սակայն ի-
րենց պրակտիկ գործունեության ընթացքում նրանք չեն կարող բավարարվել
նման կարգի ընդհանուր հետևություններով, նրանց հարկավոր են հավաստի
տվյալներ, որպեսզի նախօրոք համոզված լինեն, թե ինչպիսին պետք է լինեն
իրենց գործողության արդյունքները յուրաքանչյուր կոնկրետ բնագավառում:
Այդ նպատակին կարելի է հասնել գիտության ձեռք բերած նվաճումների օգնու-
թյամբ, առաջին հերթին գիտության օրենքների միջոցով, որոնք միշտ բնու-
թագրվում են երկու կարևոր կողմերով՝ համընդհանրությամբ և կայուն կրկնո-
ղությամբ, այնուհետև գիտական թեորիաների օգնությամբ, ապա գիտության
կողմից դուրս բերված բանաձևերի, հավասարումների կիրառմամբ և այլն:

Վերջիններս միմյանց հետ կարող են զուգակցվել տարբեր ձևերով, կախ-
ված կոնկրետ պայմաններից և հանգամանքներից, էլ ավելի մեծացնելով կան-
խամտածված գործունեության հնարավորությունները և հեռանկարները: Փոր-
ձի ընդհանրացման ճանապարհով գիտությունը սահմանում է համապատաս-
խան բանաձևեր, հավասարումներ, մշակում է որոշակի կանոններ և այլն, որոնց
օգնությամբ մարդն իր գործունեությունը դարձնում է նպատակասլաց, նախօ-
րոք կարողանում է դատել նրա հետևանքների մասին: Այստեղից որոշակիորեն
երևում է, որ գիտական մտքի ձեռք բերած նվաճումներն իրենց մեջ պարունա-
կում են կանխամտածված գործունեության հնարավորություն և այս իմաստով
կանխատեսման որոշ էլեմենտներ, որոնք հաճախ վերաբերում են համեմատա-
բար պարզ պրոցեսներին:

Սակայն իրականության մեջ հանդիպող ոչ բոլոր կողմերը, երևույթներն ու
պրոցեսները կարելի է հետազոտել անմիջապես փորձնական ճանապարհով:
Նրանց մի մասը կարող է գոյություն ունենալ, բայց անմիջական փորձնական
հետազոտման համար տվյալ պայմաններում լինել անմատչելի, մյուս մա-
սը կարող է գտնվել լինելության պրոցեսում և, վերջապես, կարող են
լինել այնպիսի իրեր, երևույթներ, որոնք պետք է առաջանան ապագա-
յում՝ առանձին բնագավառների զարգացման ներքին օրինաչափ ընթացքից:
Նշված դեպքերում գիտական կանխատեսումը հիմնվում է բացառապես տեսա-
կան մտածողության վրա, որը հնարավորություն ունի առաջ անցնելու պրակ-
տիկայից, լուսավորելու վերջինիս ճանապարհը:

Գիտության ձեռք բերած նվաճումները, նրա բացահայտած արժեքավոր
տեսությունները, օրենքները, օրինաչափությունները և այլն հնարավորություն
են տալիս խորանալու այն իրական պատճառական կապերի մեջ, որոնք գոյու-
թյուն են ունեցել անցյալի և ներկայի միջև, և որոնք կարող են ծագել ներկայի
և ապագայի միջև: Օրինաչափ պատճառական կապի բացահայտումը անցյալի,
ներկայի և ապագայի միջև հնարավորություն է տալիս մի կողմից մտքով տե-
ղափոխվել անցյալը, վերականգնել անցյալում տեղի ունեցած երևույթների և

պրոցեսների էությունը և ինչպես թե «կանխատեսել» անցյալը։ Այս դեպքում նշված նպատակի համար օգտագործվում է այն ամենը, ինչ մնացել է անցյալից։ Ներկայից անցյալին անցնելու համար օգտագործվում է ինչպես անցյալից ժառանգվածը, այնպես էլ այն ընդհանուր օրենքները, որոնք կապ են հաստատում վերջիններիս միջև։

Մարդկային միտքը կարող է տեղափոխվել ոչ միայն ներկայից դեպի անցյալը, ընդհանուր գծերով վերականգնելով անցյալում տեղի ունեցած երևույթների և պրոցեսների պատկերները, այլև ներկայից տեղափոխվել ապագան, առաջ անցնել զարգացման պրոցեսի պրակտիկ ընթացքից, կանխատեսել ապագան։ Եթե անցյալի վերականգնումը հնարավորություն է տալիս ավելի խոր հասկանալու ներկան, բացահայտել անցյալի և ներկայի կապը, ապա ապագայի կանխատեսումը ինչպես մտքի, այնպես էլ մարդկային պրակտիկայի առաջընթացը դարձնում է նպատակասլաց և կանխամտածված։ Իսկ դա հսկայական չափով արագացնում է գիտական մտքի, հասարակության զարգացման առաջընթացը։

Գիտական կանխատեսման համար կարող են հիմք ծառայել գիտության կողմից բացահայտված օրենքները, պրակտիկայի կողմից հաստատված գիտական տեսությունները, կանոնները և այլն։ Կանխատեսվող երևույթներն իրենց հերթին կարող են բնութագրվել բարդության տարբեր աստիճաններով։ Բնական է, որ այն իրերը, երևույթները և պրոցեսները, որոնք արդեն գոյություն ունեն, համեմատաբար հեշտ է բացահայտել տեսականորեն, քան նրանք, որոնք գտնվում են լինելության պրոցեսում կամ պետք է ծագեն ապագայում։ Այստեղ, ըստ էության, մենք գործ ունենք կանխատեսման երեք որակապես տարբեր բնագավառների հետ։ Դրա համար էլ կանխատեսման ուղիները նշված ասպարեզներում չեն կարող միատեսակ լինել։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, մենք կփորձենք վեր հանել կանխատեսման առանձնահատկությունները նշված բնագավառներում։

Գիտական կանխատեսումը օբյեկտիվ իրականության դեռևս չբացահայտված իրերի, երևույթների, պրոցեսների ճանաչման յուրատեսակ եղանակ է, որի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ միտքը վերջիններիս գոյությունը հիմնավորում է միայն տեսականորեն։ Այդ կարգի տեսական հայտնագործումը հետագայում ուղիներ է ցույց տալիս, ամուր հիմք է ստեղծում պրակտիկ հայտնագործման համար, պրակտիկ որոնումները դարձնում է կանխամտածված, նպատակասլաց, շատ ավելի հավանական և հուսալի։ Առանձին դեպքերում հնարավոր է դառնում անգամ կոնկրետ ցուցումներ տալ այն մասին, թե որտե՞ղ, ինչպե՞ս և կոնկրետ ի՞նչ միջոցներով պետք է իրականացնել անհայտ իրի, երևույթի, պրոցեսի որոնումները, իսկ այս ամենը նշանակալից չափով դյուրին է դարձնում վերջիններիս բացահայտումը, խորացնում է օբյեկտիվ իրականության ճանաչման բարդ և հակասական պրոցեսը։

Գիտության կողմից ձեռք բերված նվաճումները, իմացության տարբեր բնագավառներում, տարբեր կոնկրետ կապակցությունների մեջ, տարբեր հզորության հիմքեր կարող են դառնալ գիտական կանխատեսման համար։

Տեսական հայտնագործությունն ամուր հենարան է ստեղծում պրակտիկ հայտնագործության համար։ Այսպես, օրինակ, անցյալ դարի քառասունական թվականներին անգլիական աստղաբաշխ Ադամսը և ֆրանսիական աստղաբաշխ Լեվերյեն, օգտագործելով աստղագիտության ձեռք բերած նվաճում-



ները, մեկը մյուսից անկախ, սակայն համանման ճանապարհով որոշեցին անհայտ մոլորակի՝ Նեպտունի տեղը։ Լեվերյեն հաշվի առնելով Ուրան մոլորակի շարժման բոլոր հնարավոր խոտորումները, որոնք կարող էին առաջացնել Յուպիտերը և Սատուրնը, հաստատեց, որ այդ խոտորումները բավական չեն բացատրելու համար այն տարբերությունը, որ կա Ուրան մոլորակի հաշված և դիտվող վիճակների միջև։ Ելնելով Ուրանի շարժման խոտորման մեծությունից, հենվելով Նյուտոնի տիեզերական ձգողական օրենքի և Տիցիուս—Բոդեյի էմպիրիկ կանոնի վրա, Լեվերյեն հաշվեց անհայտ մոլորակի տեղը տիեզերական տարածության մեջ, որի մասին 1846 թվականին հաղորդեց Բեռլինի աստղադիտարան։ Հաղորդումն ստանալու հաջորդ գիշերը, գերմանական աստղագետ Գալլեն հայտնաբերեց այդ մոլորակը՝ հաշված տեղից հիսուներկու րոպե հեռավորության վրա։

Նոր մոլորակի հայտնագործությունը դարձավ աստղագիտության հպարտությունը, այն փայլուն հաստատում բերեց մարդկային բանականության ճանաչողական ուժին և լուրջ հարված հասցրեց ագնոստիցիզմին, որի կողմնակիցները փորձում են ժխտել աշխարհի ճանաչելիության հնարավորությունը։ Այստեղ որոշակիորեն դրսևորվում է նաև գիտության զարգացման հարաբերական ինքնուրույնությունը, երբ վերջինիս ձեռք բերած նախորդ նվաճումները, համաձայն նրա զարգացման ներքին օրինաչափությունների, խթանում են գիտության առաջընթացը, տրամաբանորեն տանում են դեպի նոր երևույթների կանխատեսման և բացահայտման։ Այդ կարգի կանխատեսումները փայլուն հաստատում են բերում մարքսիստական փիլիսոփայության այն թեզին, որի համաձայն մարդկային միտքն իր վերընթաց զարգացման ճանապարհին ոչ մի սահման չի ճանաչում, այլ անընդհատ խորանում է, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, երևույթից դեպի էությունը, այսպես կոչված առաջին կարգի էությունից դեպի երկրորդ կարգի էությունը և այսպես անվերջ։

Նեպտուն մոլորակի հայտնագործությունը գիտական սխրագործություն էր, որը փայլուն հաստատում բերեց Կոպերնիկոսի սիստեմին։ Այդ հայտնագործության գիտական, իմացաբանական և փիլիսոփայական նշանակությունը բարձր է գնահատվել Էնգելսի կողմից։

* * *

Գիտական կանխատեսման փայլուն օրինակ է տվել ռուս ականավոր քիմիկոս Դ. Ի. Մենդելեևը։ Նա գիտության պատմության մեջ առաջին անգամ ստեղծեց քիմիական տարրերի պարբերական սիստեմ և բացահայտեց նրա հիմքում ընկած պարբերականության օրենքը։ Վերջինս ցույց է տալիս այն օրինաչափ կապը, որ գոյություն ունի էլեմենտների ատոմական կշիռների և նրանց ֆիզիկո-քիմիական հատկությունների միջև։ Եթե մինչև Մենդելեևի պարբերական սիստեմի ստեղծումը և պարբերականության օրենքի բացահայտումը քիմիական էլեմենտների որոնման պրոցեսը տեղի էր ունենում տարերայնորեն, այն կապված էր պատահական հայտնագործությունների հետ, ապա Մենդելեևի աշխատանքների շնորհիվ հնարավոր դարձավ այդ կարևոր բնագավառի որոնումներին տալ նպատակասլաց և կանխամտածված բնույթ։ Իհարկե, մինչև Մենդելեևի հայտնագործություններն էլ գիտեին, որ գոյություն ունեն դեռևս չբացահայտված էլեմենտներ. դրա լավագույն ապացույցն այն էր, որ շարունակվում էր նոր էլեմենտների հայտնաբերումը, սակայն չգիտեին կոնկրետ, թե

ինչ էլեմենտներ պետք է բացահայտվեն։ Այդ հարցի գիտական պատասխանը տվեց Մենդելեևը։

Մինչև պարբերական սիստեմի ստեղծումը և պարբերականության օրենքի հաստատումը հայտնի էլեմենտները ոչինչ չէին ասում անհայտ էլեմենտների գոյության մասին, և դա հասկանալի է, որովհետև հայտնի էլեմենտները մեծամասամբ դիտվում էին մեկուսացված, իրարից կտրված. դեռ չէր գտնված նրանց միջև գոյություն ունեցող ներքին օրինաչափ կապը։ Պատկերը արմատապես փոխվեց, երբ ստեղծվեց էլեմենտների պարբերական սիստեմը և բացահայտվեց պարբերականության օրենքը։ Վերջինների շնորհիվ, մինչ այդ անկանոն կուտակում թվացող քիմիական էլեմենտները վերածվեցին ներդաշնակ սիստեմի։

Մենդելեևի կենդանության օրոք, նրա կողմից կանխատեսված երեք անհայտ էլեմենտներն էլ հայտնաբերվեցին։ Դա փայլուն հաստատում բերեց ինչպես պարբերականության օրենքին, այնպես էլ մտքի կանխատեսող ուժին։ Էնգելսը բարձր գնահատեց Մենդելեևի կանխատեսությունը, այն անվանելով գիտական սխրագործություն։ Այդ կանխատեսումներն էլ ավելի մեծացրին հավատը մարդկային իմացական կարողությունների նկատմամբ։ Մենդելեևի կողմից կատարված կանխատեսումները եկան ապացուցելու, որ գիտությունն իրոք ունի իր զարգացման ներքին տրամաբանությունը, հարաբերական ինքնուրույնությունը, առաջընթացի սեփական ազդակները և այլն։ Ըստ էության այդ կանխատեսումները հանդիսանում են էլեմենտների պարբերական սիստեմից և պարբերականության օրենքից բխող տրամաբանական եզրակացություններ։

Այստեղից պարզ է դառնում, որ այս կամ այն օրենքը, սիստեմը, տեսությունը այնքան ամուր բազա կարող է դառնալ անհայտ երևույթների կանխատեսման ճանապարհին, որքան լայն հնարավորություններ ընձեռի նոր տրամաբանական եզրակացությունների համար։ Այսպես, օրինակ, դանիական ականավոր գիտնական Բորը բացահայտելով ատոմի էլեկտրոնային թաղանթի կառուցվածքի զարգացման օրինաչափությունը, կանխատեսեց մինչ այդ անհայտ 72-րդ էլեմենտի էլեկտրոնային թաղանթի կառուցվածքը։ Համաձայն կանխատեսված կառուցվածքի, անհայտ էլեմենտը պետք է նման լինի ոչ թե նախորդ լանտանոիդներին, այլ ցիրկոնիումին։ Դրա համար էլ նրան հարկավոր էր որոնել ոչ թե այնտեղ, որտեղ հանդիպում են լանտանոիդներն, այլ այնտեղ, որտեղ հանդիպում է ցիրկոնիումը։ Ղեկավարվելով Բորի այդ ցուցումներով, 1923 թվականին քիմիկոսները Նորվեգիայի ցիրկոնիումի հանքերում գտան այդ անհայտ էլեմենտը՝ հաֆնիումը։ Դժվար չէ նկատել, որ Բորի այդ կանխատեսումը տրամաբանորեն բխում էր ատոմի քվանտա-էլեկտրոնային տեսությունից։ Հաֆնիումի հայտնագործումը փայլուն հաստատում բերեց այդ տեսությանը, հաստատեց վերջինիս ճշմարտացիությունը։

Այսպիսով, իրերի, երևույթների, պրոցեսների կանխատեսման համար հիմք կարող են հանդիսանալ ինչպես դիտվող երևույթների էության բացահայտումը, այնպես էլ գիտության կողմից ստեղծված տեսություններից, սիստեմներից, հավասարումներից և բացահայտված օրենքներից արվող տրամաբանական եզրակացությունները։ Այդ տրամաբանական եզրակացությունների ուժն այն է, որ դրանք հանդիսանում են իրերի տրամաբանության արտացոլումը մտածողության մեջ, դրա համար էլ հիմք են հանդիսանում վերջիններիս պրակտիկ



հայտնագործման համար։ Պրակտիկ հայտնագործումը հանդես է գալիս որպես տեսական մտածողության հաստատում։

Վերը մենք կանգ առանք կանխատեսման այնպիսի դեպքերի վրա, որոնց ենթակա օբյեկտները գոյություն ունեին մինչ կանխատեսումը։ Այժմ համառոտակի քննարկենք այնպիսի դեպքեր, երբ կանխատեսման ենթակա իրերը, երևույթները, պրոցեսները գտնվում են լինելության պրոցեսում, կամ պետք է ծագեն ապագայում։ Այս կարգի կանխատեսությունները քննարկելիս նպատակահարմար ենք համարում դիմել հասարակական կյանքի բնագավառին, որտեղ ավելի որոշակիորեն են դրսևորվում նման դեպքերը։ Թեև հասարակական կյանքի երևույթները, ընդհանուր առմամբ, շատ ավելի բարդ են, քան բնության երևույթները, բայց վերջիններս բնութագրվում են շատ ավելի մեծ տևականությամբ, քան առաջինները։ Հասարակական կյանքի երևույթների բարդությամբ պետք է բացատրել այն փաստը, որ հասարակության մասին իսկական գիտություն ստեղծվել է շատ ավելի ուշ, 19-րդ դարում, Մարքսի և Էնգելսի կողմից, մինչդեռ բնագիտությունը մինչ այդ ունեցել է իր դարավոր պատմությունը։ Մարքսը և Էնգելսը իրենց կողմից ստեղծած գիտությունն օգտագործեցին ոչ միայն հասարակական կյանքի երևույթները ճիշտ բացատրելու, այլև ապագան կանխատեսելու համար։

Հասարակության մասին իսկական գիտության ստեղծումը մարքսիզմի կլասիկներին հնարավորություն տվեց կանխատեսել հասարակական կյանքի բարդ երևույթները, ըմբռնել հասարակության զարգացման տենդենցը։ Այսպես, օրինակ, Էնգելսը 1887 թվականին կանխատեսեց վերահաս համաշխարհային պատերազմը և նրա հետևանքները։ Մոտ երեսուն տարի առաջ նրա կողմից կատարված կանխատեսումը հետագայում իրականացավ փայլուն կերպով։ Լենինը Էնգելսի այդ կանխատեսումն անվանեց «մարգարեական խոսքեր»։ Նա ընդգծեց, որ հրաշապատում մարգարեությունը հեքիաթ է, իսկ գիտական մարգարեությունը՝ փաստ։

Երբ Էնգելսը գրում էր վերահաս համաշխարհային պատերազմի և նրա անմիջական ծնունդը հանդիսացող պրոլետարիատի հաղթանակի մասին, այդ երևույթները դեռևս չկային, սակայն նրանց ծնող պատճառները գտնվում էին լինելության պրոցեսում։ Տալով այդ ժամանակ սկսված ռազմական մրցավազքի, դասակարգային ուժերի փոխհարաբերության գիտական վերլուծությունը և հենվելով կապիտալիզմի զարգացման ընդհանուր օրենքների վրա, Էնգելսն ապացուցեց համաշխարհային պատերազմի անխուսափելիությունը, որը, նրա կարծիքով, կլինի մինչ այդ չտեսնված չափի, չտեսնված ուժի, կբերի անասելի տառապանքներ, կհասցնի ընդհանուր սնանկացման և դյուժիններով թագերի կործանման։ Բացարձակ անկարելի է նախատեսել,— գրում է Էնգելսը,— թե ինչպես կվերջանա այս ամենը և ով հաղթող դուրս կգա պայքարից, «միայն մեկ հետևանք բացարձակապես անտարակուսելի է՝ ընդհանուր հյուծում և պայմանների ստեղծում բանվոր դասակարգի վերջնական հաղթանակի համար» (տե՛ս Լենին, Երկեր, հ. 27, էջ 621)։

Էնգելսն ուղղակի նշում է, որ ինչպես էլ ընթանա պատերազմը, մարդկային այդ խոշոր տրագեդիան, այն պետք է ավարտվի նրանով, որ պրոլետարիատի հաղթանակը կամ արդեն նվաճված կլինի, կամ այնուամենայնիվ՝ անխուսափելի։ Միայն հասարակության մասին իսկական գիտությունը հնա-

լավորություն տվեց առաջ անցնել հասարակության պրակտիկ զարգացումից, կանխատեսել ապագան։

Կանխատեսման նման օրինակների հանդիպում ենք Վ. Ի. Լենինի մոտ։ Այսպես, օրինակ, Ռուսաստանում նոր տիպի հեղափոխական կուսակցություն ստեղծելու սկզբնական շրջանում, երբ կազմակերպությունը գտնվում էր լինելության պրոցեսում, Վ. Ի. Լենինը կանխատեսեց նրա դերը ապագա Ռուսաստանի հեղափոխական վերափոխման գործում։ Լենինի ջանքերով ստեղծված բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ հնարավոր եղավ շրջել ցարական միապետական, կալվածատիրական Ռուսաստանը և նրա փլատակների վրա դնել նոր սոցիալիստական Ռուսաստանի հիմքը։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո սոցիալիզմի հաղթանակի համար անհրաժեշտ պայմանները դեռևս գտնվում էին լինելության պրոցեսում, սակայն դրանք բավական էին, որպեսզի իր վերջին ելույթներում Լենինը կանխատեսեր, որ նէպմանական Ռուսաստանից կստացվի սոցիալիստական Ռուսաստան։ Լենինի կողմից կատարված այդ կանխատեսությունները հիմնված էին հասարակական կյանքի երևույթների խոր, գիտական ըմբռնման վրա։

Կանխատեսման պրոցեսն էլ ավելի է բարդանում, երբ հարկ է լինում խոսել այնպիսի երևույթների մասին, որոնք պետք է ծնվեն ապագայում։ Այս դեպքում կանխատեսումն ամբողջությամբ հիմնվում է տվյալ բնագավառի զարգացման օրինաչափությունների և զարգացման տենդենցի խոր, գիտական իմացության վրա։ Սրանից ավելի քան հարյուր տարի առաջ, Մարքսը և Էնգելսը բացահայտելով կապիտալիզմի զարգացման օրենքները և վերջիններով պայմանավորված կապիտալիզմի զարգացման ընդհանուր տենդենցը, գիտականորեն հիմնավորեցին կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունը։ Այդ անցման պրոցեսի սկիզբը դրվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունով, իսկ այժմ աշխարհի բնակչության մեկ երրորդը անխախտ կերպով կանգնել է կոմունիզմի դրոշի ներքո։ Լենինը նշում էր, որ առաջ քաշելով ապագա կոմունիզմի հարցը, Մարքսը ելնում էր այն բանից, որ «այն ծագում է կապիտալիզմից, պատմականորեն զարգանում է կապիտալիզմից, հետևանք է այնպիսի հասարակական ուժերի գործողությունների, որը կապիտալիզմն է ծնել։ Մարքսի մոտ փորձի հետք անգամ չկա ուտոպիաներ հորինելու, դատարկ գուշակություններ անելու այնպիսի բաների մասին, ինչ որ չի կարելի գիտենալ։ Մարքսը դնում է կոմունիզմի հարցն այնպես, ինչպես բնագետը կդներ մի նոր, ասենք, բիոլոգիական տեսակի զարգացման հարցը, երբ մենք գիտենք, որ այն հենց այս կերպ է ծագել ու այսինչ որոշ ուղղությամբ է կերպարանափոխվում» (Լենին, Երկեր, հ. 25, էջ 595)։

Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը հասարակության զարգացման վերաբերյալ եղել է և մնում է այն միակ ուղեցույց աստղը, որը հնարավորություն է տալիս ոչ միայն ճիշտ կողմնորոշվելու հասարակական կյանքի բարդ երևույթների ուսումնասիրության ասպարեզում, այլև կանխատեսելու հասարակության զարգացման ապագան, լուսավորելու հասարակական պրակտիկայի ճանապարհը։ Այդ հզոր կողմնացույցով այժմ ղեկավարվում է ամբողջ առաջադեմ մարդկությունը և, հատկապես, մարդկության ապագան արտացոլող կոմունիստական շարժումը։



ՀՈՎՀ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

# ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՄԱՏՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Ինչպես աշխարհի ճորտերին բոլոր,
Այնպես էլ գերի աշխարհին իմ հին—
Երկինք մի մաքուր, արև մի բոսոր
Լոկ Հոկտեմբերյան ճողմերը տվին։
Ե. ՉԱՐԵՆՑ

1917—1920 թվականները ազգային-սոցիալական մեծ հեղաբեկումների ժամանակաշրջան էր։ Դարերով անլուծելի հարցերը գալիս, հանգուցվում էին, լուծվում կամ սպասում լուծման։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղաշրջումը բուն Ռուսաստանում մեկընդմիշտ լուծեց բանվոր դասակարգի և բուրժուազիայի անհաշտ կոնֆլիկտը՝ հօգուտ աշխատավորության։ Դրանով իսկ դրվեց փոքր ժողովուրդների, նաև հայ ժողովրդի ազատագրման, վերածնության հաստատուն հիմքը։

Հասարակական-քաղաքական բախտորոշ իրադարձություններով շիկացած մթնոլորտը, բնականորեն, հայ գրականությունը տոգորում էր քաղաքական խոր բովանդակությամբ։ Եթե ռուսական առաջին հեղափոխության բոցերում ծնվեց հայ պրոլետարական գրականությունը, ապա սոցիալիստական հեղափոխությունը հայ գրականությունը սնեց սոցիալիստական, սովետական բովանդակությամբ։

Ահա ինչու հայ առաջավոր գրողները «ամբողջ սրտով, ամբողջ գիտակցությամբ» (Ալ. Բլոկ) ողջունում էին նոր, սոցիալիստական Ռուսաստանը, նրա հետ կապում իրենց ժողովրդի, ճնշված ժողովուրդների բախտը։ Ռուս բանաստեղծ Սերգեյ Գորոդեցկուն գրած իր 1918 թ. բաց նամակում, խոսելով բոլշևիզմի մեծ խիզախումների մասին, Հովհաննես Թումանյանը բոլոր ժողովուրդներին ազդարարում էր. «Ռուս ժողովուրդը առհասարակ մեծ միսիա ունի կատարելու ժողովուրդների կյանքում...» (հ. IV, էջ 412), «Նոր Ռուսաստանը, որ գալիս է նրանց հանի էդ ստրկական վիճակից՝ նոր դարաշրջան է բաց անում մարդկության պատմության մեջ...» (հ. V, էջ 458)։

Դասակարգային սուր հակամարտությունները այդ շրջանում Թումանյանի ստեղծագործության մեջ ստանում են գեղարվեստական զորեղ արտահայտություն և Թագավորն ու չարչին (1917) լեգենդում հասնում մի համապարփակ ընդհանրացման։

...Ու միշտ, քանի որ կա
Շահ ու գերի, բստրուկ ու տեր,
Չի լինելու երկրի վրա
Ոչ շիտակ խոսք, ոչ կյանք, ոչ սեր...

Քննադատական հայացքը հումանիստ մեծ բանաստեղծին հասցնում է սոցիալական հին հարաբերությունների ժխտման, մարդկային նոր հարաբերությունների ստեղծման գաղափարին։ «Աշխարհը պետք է նորոգվի, էսպես անկարելի է»,—եզրակացնում է նա։ Մեծ արվեստագետի ձգտումն է՝ հասնել մի իրականության, ուր մարդը լինի ազատ ամեն տեսակ շահագործումից ու կաշկանդումից, ուր իշխեն ազնիվ աշխատանքն ու խաղաղությունը, դրանց վրա խարսխված ժողովուրդների բարեկամությունն ու երջանիկ կյանքը։

Այդ վսեմ ձգտումներով էր Թումանյանը գալիս դեպի Հոկտեմբերը, մուրճ ու մանգաղը համարում սովետական իշխանության խաղաղասիրական քաղաքականության ու ազնիվ աշխատանքի պաշտպանության խորհրդանիշ։

Ժողովրդական մեծ բանաստեղծը խոսում էր կովկասյան ժողովուրդների անունից, արտահայտում նրանց նվիրական զգացմունքները՝ սերը ռուս ժողովրդի, նորաստեղծ սովետական պետության հանդեպ։ «Կովկասի բոլոր ժողովուրդները մեկը մյուսի հետևից ողջունում են նոր, ազատ Ռուսաստանը» (հ. IV, էջ 421),—մեծ հավատով ազդարարում էր նա։

Մարդկությանը պատերազմների ամայացնող հողմապտույտի մեջ նետող կապիտալիզմին Թումանյանը հակադրում էր «Նոր Ռուսաստանը»։

«Իմացած եղեք,—գրում է նա 1920 թվականին,—որ էդ կատարված դեպքերը պատահական չեն, պատմության ուղիղ ընթացքն է, մեր ապագան, ինչպես միշտ ասել եմ և դուք էլ գիտեք, կապված է Ռուսաստանի հետ, իսկ ՌՈՒՍԱՍՏԱՆՆ ԻՆՉՔԱՆ ԱԶԱՏ—ԷՆՔԱՆ ԼԱՎ, ԹԵ՛ ՄԵԶ ՀԱՄԱՐ, ԹԵ՛ ԱՇԽԱՐՀՔԻ» (հ. V, էջ 451)։

Պատմական-հեղափոխական իրադարձությունների այս ճշմարիտ ըմբռնումով բաղձալի ապագայի հավատով էր պայմանավորված գրողի հասարակական-քաղաքական, ստեղծագործական այն կրքոտ ու ակտիվ, բազմակողմանի ու բեղմնավոր գործունեությունը, որ ծավալում էր Հոկտեմբերյան օրերին ընդդեմ աշխարհավեր պատերազմի, հանուն մարդու ազատության, ազգի վերածնության։

Թումանյանի՝ 50-ի հասնող քառյակները, որ ստեղծվել են 1917—1920 թթ., ամբողջությամբ ուղղված են մահաբեր ու ավերիչ պատերազմների և, ամենից առաջ՝ «ամենաքաղաքակիրթ» Եվրոպայի դեմ, որը բորբոքեց համաշխարհային պատերազմի հրդեհը, արյունահեղ արշավանքներով ձգտեց խեղդել նորածնունդ սովետական պետությունը, Արևելքի ճնշված ազգությունների հանդեպ վարելով գաղութացման ու ստրկացման անզուսպ քաղաքականություն։

Արյունալի աղետներով, աղմուկներով անհարկի,
Արևմուտքի ըստրուկները մեքենայի և ոսկու՝
Իրենց հոգու անապատից խուսափում են
խուռներամ
Դեպ Արևելքն աստվածային—հայրենիքը իմ
հոգու...

ՍՈՎԻՑ ՎԱՍՏԱՐ (1921) հրապարակախոսական իր կրքոտ հոդվածում լիակատար որոշակիությամբ նա բացահայտում է «ամենաքաղաքակիրթ» Եվրոպայի հակամարդկային էությունը։ Եվրոպայի չարախնդությունը սովահարների հանդեպ բանաստեղծը համարում է հրեշավոր, եվրոպացիներին՝ ավելի թշվառական, քան սովից մեռնող գյուղացիները։ Երաշտը, սովը իբրև ժամանակավոր երևույթ առաջիկայում կվերանան, ասում է նա, իսկ տասնյակ միլիոնավոր աշխատավորների, հողագործների ծով աղետի հանդեպ Եվրոպայի ցինիկ ուրախությունը զարհուրելի է, որից դժվար է ազատվել...։ «Դա սովից վատթար է հազար անգամ» (հ. IV, էջ 430),—եզրակացնում է բանաստեղծը, ամուր կանգնած սովետական երիտասարդ պետության պաշտպանության դիրքերում, նրա հզորացման մեջ տեսնելով փոքր, ճնշված ժողովուրդների փրկությունը։

«Ես հավատում եմ,— գրում է Թումանյանը «Սաքարթվելո»-ի խմբագրությանն ուղղված իր 1919 թ. նամակում,— գալու է օրը, երբ բոլոր շովինիստների ջանքերին հակառակ հաղթանակելու է ժողովուրդների միության ու եղբայրության գաղափարը, ազատության մեջ ավելի ու ավելի են ամրանալու մեր դարավոր եղբայրական կապերը և մեր ինքնուրույնությունը շքեղ ու ինքնատիպ ծաղկելու է մեր գեղարվեստի ու գրականության մեջ» («Մշակ», 1919, № 54)։

«Կենսահաստատ հորդորով» իրականությունը վերափոխելու Թումանյանական հայացքը 1917—1920 թթ. հասնում է առավել պայծառ, կենսահաստատ, ամբողջ կեցությունն ընդգրկող աշխարհըմբռնման խորքերին և, ըստ էության, ստանում մարտական բնույթ, դառնում ցասումնալից ու վճռական։

«Հայաստանը պետք է խոսի վերջապես,— ասում է բանաստեղծը։—

Եվ պետք է խոսի էնքան լուրջ ու զգաստ, ինչքան լուրջ ու զգաստ է լինելու ամենից մեծ վշտավորն ու ամենից շատ վտանգվածը ժողովուրդների մեջ, այլև էնքան հաստատուն ու բաց ճակատով կարող է խոսել մի ժողովուրդ, որ ապրել է մարդկային լավագույն ձգտումներով և ամեն ինչ տվել է ու կտա ազատ կյանքի համար» (հ. IV, էջ 396)։

Հոկտեմբերյան հեղափոխությանն ընդառաջ էին գնում նաև Ալեքսանդր Շիրվանզադեն, Ավետիք Իսահակյանը և հայ դասական շատ գրողներ։

1917—1920 թթ. մամուլում հանդես է գալիս Շիրվանզադեն հրապարակախոսական բազմաթիվ հոդվածներով՝ տոգորված բուռն հայրենասիրությամբ, հայ բուրժուազիայի նկատմամբ խոր ատելությամբ, արնաքամ, բայց հերոս ժողովրդի ոգու հզորության շնչով։

Ազատագրական պայքարի կոչ անելով Շիրվանզադեն, սակայն, մոլորվում էր. հայ ժողովրդի փրկության ուղին առժամանակ տեսնում էր կամավորական շարժման մեջ։ Բայց շուտով նա հասնում է շատ կարևոր մի ճշմարտության. պատերազմներն անխուսափելի են, ասում է նա, «ՔԱՆԻ ՈՐ ԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԽՏՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՇԱՀԵՐԻ ՄՐՑՈՒՄ»։ Դաշնակցության կառավարության հետ սուր բախումներից հիասթափված ու հուսախաբված Շիրվանզադեն 1919 թ. օգոստոսին թողնում է Հայաստանը, մեկնում արտասահման։ Սովետական Ռուսաստանում ծավալված քաղաքացիական կռիվները, հեղափոխական բուռն շարժումներն Անդրկովկասում, արդեն հաստատված սովետական կարգերն Ադրբեջանում, հետզհետե մաքրում են պատմության հորիզոնները։ Մեծ գեղագետն սկսում է տեսնել ու հավատալ, որ տեղի է ունենում պատմական հեղաշրջում։ Հայրենիքից եկող ամենօրյա թերթերի, հեռագրերի, նամակների ու գրագրությունների միջոցով Շիրվանզադեն հաղորդակից էր դառնում իր ժողովրդի հերոսական ջանքերին, ոգևորվում նրա հուսալի վերածնությամբ։ Նա, ի վերջո, գալիս է այն համոզման, որ հայ ժողովրդի ապագան հավերժորեն կապված է Ռուսաստանի ապագային, որ հայ ժողովրդի դատը լուծելու են ո՛չ թե «մենշևիկյան կոնֆերանսներն ու համաշխարհային կոնգրեսները», ինչպես մի ժամանակ ենթադրում էր նա, այլ միայն Սովետական Ռուսաստանը։

Դրա ամենավառ արտահայտությունը Շիրվանզադեի 1920 թ. հուլիսի նշանավոր նամակն է՝ ուղղված Մաքսիմ Գորկուն։ Նա խնդրում է Գորկուն, որ իր հզոր ձայնը բարձրացնի դաշնակցության ավանտյուրաներին զոհ գնացող բազմաչարչար հայ ժողովրդի օգտին, նրա միջոցով դիմում սովետական կառավարությանը, որ խաղաղություն հաստատի անդրկովկասյան բռնաջնջվող ժողովուրդների միջև։

«ՄԵԾԱՐԳՈ ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻ: Գրում եմ Ձեզ Ամերիկայից,—ասում է Շիրվանզադեն,—թերթերից ես իմացա, որ Կովկասը գրեթե գրավված է բոլշևիկների կողմից: Ես հավատում եմ, որ սովետական կառավարությունը կհաջողվի խաղաղություն հաստատել անմտորեն իրար հետ թշնամացած ծայրամասերի ժողովուրդների մեջ և ներարկել նրանց մի ընդհանուր օրենքի՝ սիրո, եղբայրության, ճշմարտության և արդարության օրենքին»:

Ինչպես Թումանյանն ու Շիրվանզադեն, Իսահակյանը ևս հեղափոխության մեջ էր տեսնում իր ժողովրդի փրկությունը։ «Մեծ հավատ ունեմ,—գրում էր նա Ցոլակ Խանզադյանին, Ժնևից, 1917 թ. մայիսի 24-ին,— որ ռուսական հեղափոխությունը չպիտի ծնի ռեակցիա, ուրեմն... փրկվեցին հայերը» (Գրականության թանգարան, Իսահակյանի արխիվ, № 20)։ Ռուսաստանը համարելով Հայաստանի միակ փրկիչը, Իսահակյանը Թումանյանին Վենետիկից գրած (1921 թ. հուլիսի 1-ի) նամակում իր ցասումնալից ատելությունն է արտահայտում եվրոպական պետությունների հանդեպ։

«Եվրոպան ո՛չ միայն չի օգնում մեզ, այլ թշնամի է և հրճվում է հայկական բնաջնջումով. որքան համոզված եմ փաստերից... քրիստոնեություն, քաղաքականություն, մարդասիրություն, դատարկ հնչյուններ են եվրոպացու աչքում, պետք է երես դարձնել այս ավազակներից և մոտենալ Ռուսաստանին։

Ըստ իս,— վճռաբար ասում է բանաստեղծը,— Հայաստանը և հայ ժողովուրդը կարող է ապրել ՄԻԱՅՆ Ռուսաստանի հետ կամ բնավ չի կարող ապրել»։

Իսահակյանի հայրենասիրական երգերը 1917—1920 թթ. հնչում են մի առանձին ուժով, հնչում իբրև մարտակոչ, Հոկտեմբերյան հեղափոխության հզոր լուսարձակների տակ, օտար նըվաճողների դեմ իր ժողովրդին վրեժի կոչող (Ժողովրդի ճնարը (1917), Հայրենի ճող (1920)... Իսահակյանի համար սոցիալական կյանքի շատ դժվարին հարցեր են պարզվում. պարզվում է նաև Մհերի՝ ժողովրդական այդ բարդ հերոսի կերպարը:

Միայն «Հոկտեմբերյան Սոցիալիստական ճեղափոխության... լույսի տակ,— ասում է բանաստեղծը,— պարզվում է Մհերի առեղծվածային կերպարը» (հ. IV, 1951, էջ 83): Այդ կերպարը Սասմա Մճեր վիպերգում (որն ստեղծվում է 1919 թ. Ժնևում, տպագրվում է 1922-ին, Վիեննայում) Իսահակյանին ներկայանում է իբրև տառապող ու մաքառող, հին աշխարհը խորտակող հայ աշխատավորության ուժի ու ազատության խորհրդանիշ:

Կ'եղճի վախտըմ, Մճեր դուրս կ'իգա,
Մըզի կ'ազադա դուշմընի ձեռճեճ:

Հայկական էպոսում արտահայտված այս գաղափարն էլ դրվում է Իսահակյանի Սասմա Մճեր վիպերգի հիմքում: Եվ այդ «Վախտը» եկավ. «Երբ բռնկվեց Հոկտեմբերյան սոցիալիստական աշխարհացունց հեղափոխությունը,— ասում է բանաստեղծը,— ես տեսա, որ Մհերի ազատության ժամը հնչեց» (Ընտիր երկեր, 1948, էջ 464):

Լինելով Հոկտեմբերյան մեծ հեղափոխության յուրովի և խոր արտացոլում, Իսահակյանի Սասմա Մճեր վիպերգը հայ էպոսի գրական մշակման նոր աստիճան նշանավորեց հայ պոեզիայում, գաղափարական իր մեծ բովանդակությամբ, բարձր արվեստով մտավ սովետական բազմազգ գրականության ոսկե ֆոնդը:

* * *

Հոկտեմբերյան հեղափոխության հըրաշագործ ուժը, դրա հետ կապված հայ ժողովրդի ազատագրման մոտալուտ հույսերն իրենց բարերար ազդեցությունն էին թողնում Դերենիկ Դեմիրճյանի, Ստեփան Զորյանի, Միքայել Մանվելյանի, ինչպես և երիտասարդ գրողների ստեղծագործության վրա: Նրանց գործերում պատկերվում էին հեղափոխության շունչն զգացող ու հեղափոխականացող մարդիկ: Մանվելյանի հերոսը (Դևերի ճրճիջը (1917)) ավետում էր հեղափոխության ու նոր կյանքի «բոցկլտող կարմիր արշալույսը» (Երկեր, 1959, էջ 407):

Դեմիրճյանն արդեն տեսնում էր դասակարգային հակամարտությունները հասարակական կյանքում, երևույթների նկատմամբ ցուցաբերում պատմական հայացք: Նրա ստեղծագործության մեջ՝ պատմվածքներում և դրամատիկական երկերում ակնհայտ են գաղափարական բեկումը, ստեղծագործական զարգացումը: «Գիտակցում էի,— ասում է նա,— որ ժամանակն է անցնել իդեոլոգիական գիտակից ըստեղծագործության, գրվել պրոլետարիատի շարքերում, գրել նրա համար»:

Հասարակական չարիքների վերացման դեմիրճյանական անմեղ ու պասսիվ բարոյախոսությունը, թե՝ «մարդը մարդուն չպետք է դատի» (տե՛ս Ավելորդը պատմվածքը, Դատաստան դըրաման, 1916), թե չարիքների վերացման բանալին մարդու կատարելագործման մեջ է, Հոկտեմբերյան օրերին հետզհետե փոխարինվում էր դասակարգային կոնկրետ հասկացողությամբ:

Դեմիրճյանի համար, իհարկե, տակավին շատ բան պարզ չէր, պարզ չէր իր ժողովրդի սոցիալական-ազգային ազատագրության կոնկրետ ուղին: Այդ շրջանի նրա ստեղծագործության մեջ, սակայն, իշխում էր մի խոր լավատեսություն, ներքին մի հաստատուն համոզմունք գալիք բաղձալի օրվա մասին: Հիվանդանոցում մեռնող բանվոր Սերգոն (Մեճենաճ) իր պայծառ լավատեսությամբ հիացմունք է պատճառում աշխատանքային իր ընկերներին. «Մեր բանն էսպես է, կռիվ է,— ասում է նա,— ջաններդ սաղ լինի, աշխարհը լեն, ինձպեսները լիքը... Ես չհասա՝ ուրիշները կհասնեն» (հ. I, էջ 117):

Կյանքի ճեղափոխականացման պոզիտայով էր անցնում Ստեփան Զորյանը: Սոցիալիստական հեղաբեկումների շիկացած մթնոլորտում գրողը գալիս է այն համոզման, որ մարդկային բոլոր դժբախտությունների պատճառը մասճավոր սեփականությունն է: Մեծ վարպետությամբ կերտած Մարտին ապոր կերպարի միջոցով (տե՛ս



Խնձորի այգին, 1917) Զորյանը հանգում է այն ճշմարտության, որ մասնավոր սեփականության աշխարհում անհնարին է երջանկությունը:

Զորյանի այս շրջանի երկերում բացահայտվում են ո՛չ միայն բուրժուական անմարդկային հարաբերությունները, այլև դրանց դեմ գրողը բարձրացնում է իր ըմբոստացող ձայնը: Նրա «անդորր» նկարագրությունները վերաճում են ակտիվ նկարագրությունների, հայեցողը դառնում է քաղաքացի արվեստագետ: Նրա ստեղծագործության մեջ նկատվում է որակական նշանակալից զարգացում. փոխվում է ստեղծագործության թեմատիկ-գաղափարական բովանդակությունը, հարստանում, կատարելագործվում են պատկերավորման ձևերը: Նրա հայեցողական զգացմունքներն ու հայացքներն ստանում են ճեղափոխական բընույթ: Հոգու արիությունը, ազգային արժանապատվությունը, առաջավոր գաղափարների համար մարտնչելու կամքը դառնում է նրա հերոսների բընորոշ հատկանիշը: Զորյանի ստեղծագործության մեջ արդեն հանդես են գալիս հեղափոխության շնչով տոգորված, հեղափոխականացող մարդիկ: Եթե Ղաչաղանը, Ինժեճերի մայրը պատմվածքներում հերոսը լոկ ընդվըզում է հարստահարիչների դեմ, պաշտպանելով իր դասակարգային շահը, ապա Պատերազմը (1920) պատմըվածքում՝ արդեն վրեժխնդիր է լինում դասակարգային թշնամուց:

Գրողի հայրենասիրական բուռն ըզգացմունքներն ունեն խորապես այլասիրական, ինտերնացիոնալ բնույթ, որը դասական բարձրության է հասնում Ջրճորի մոտ (1920) պատմվածքում: Դա մի սրտառուչ պատմություն է ժողովուրդների եղբայրական, ինտերնացիոնալ ինքնաբուխ զգացմունքների մասին, որը տեղի է ունենում համաշխարհային պատերազմի օրերին: Այդ սրտառուչ եղբայրական մտերմությունից գոհ, վաշտապետ Վասիլ Վասիլիչըն է՛լ ավելի է խրախուսում նրանց. «Լավ չի՞, ասում է, երբ մարդիկ էսպես մոտիկ բարեկամ են իրար»: «Իհարկե, վաշե բլագարոդիե»,— պատասխանում են զինվորները:

Այս զորամասերն այլևս չեն կրակում իրար դեմ: Ու՛ երբ այդ պատճառով, իբրև հայրենիքի «դավաճան», գնդակահարում են վաշտապետ Վասիլի Վասիլիչին, ռուս, հայ, վրացի, լատիշ ու այլազգի զինվորները միասնաբար վրեժխնդիր են լինում՝ սպանում են նրան մատնող ու փոխարինող դավաճան կապիտանին, ինչպես հեղինակն է ասում՝ «և-ևս են անում նրան»:

Ջրճորի մոտ պատմվածքը, որ ծնվել է հոկտեմբերյան օրերին, մի սրտառուչ պատմություն է թշնամական զորամասերի այլազգի զինվորների ջերմ բարեկամության ու խաղաղասիրական զգացմունքների մասին, բարեկամություն ու խաղաղասիրություն, որ շիկանում են ռազմադաշտում, մահասփյուռ գնդակների տակ և դառնում ժողովուրդներին համակող անխորտակելի ուժ՝ ուղղված աշխարհավեր, ազգակործան պատերազմների դեմ:

Հայ պարբերական մամուլը, գրական ալմանախները, ժողովածուները, բոլշևիկյան թերթերը 1917—1920 թթ. ողողված էին երիտասարդ ստեղծագործողների երկերով: Հանդես են գալիս Ակսել Բակունցը, Վահան Թոթովենցը, Նաիրի Զարյանը, Ազատ Վըշտունին, Գուրգեն Մահարին, Վաղարշակ Նորենցը և շատ ուրիշներ: Նրանք դատապարտում էին իմպերիալիստական պատերազմը, տենչում խաղաղություն, ազատություն, գովերգում ազատություն բերող հեղափոխությունը:

Բակունցը, որ դարձավ 20-ական թվականների սովետահայ արձակագրության ականավոր դեմքը, հոկտեմբերյան օրերին ստեղծած իր սակավաթիվ պատմվածքներով (Աղոթք, Աշոտը, Անտառում) արտահայտեց հայ ժողովրդի ողբերգական կյանքը՝ մեղմ գույներով, հուզիչ պատկերներով ու կերպարներով:

Զգտնելով փրկության ուղի, «հոգնած ու մոլոր» պատանին «հազարավոր կարոտյալների ու տանջվածների» անունից աղոթք է մրմնջում «ամենակարողին», խնդրում, որ երկրին խաղաղություն տա, «ծաղիկները բույր տան..առուները կարկաչեն...»:

«Հեռացրու տանջանքն այս անավոր, զըրկանքները բյուրավոր, էլ թող արցունքներ չհոսեն,— աղերսում է նա,— թող ճեոց չլինի, թոյ ճրդեն չլինի: Տե՛ր, թռչունները բնակորույս են, այգիները ամայի են, և չեճերը ավերակ, մարդ չկա՝ վարդի ճոտով զմայլվող: Տե՛ր,

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Գործարանամերձ հրապարակում, գրանիտե պատվանդանի վրա, կանգնած է մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի արձանը։ Ամեն առավոտ հազարավոր էլեկտրամեքենաշինարարներ անցնում են այդ արձանի կողքով, շտապում դեպի իրենց հաստոցները, դազգահները, գծագրական տախտակները։ Իսկ գործարանի բակում սովերախիտ լայն ծառուղիներ, ծաղկանոցներ են, ասֆալտապատ մայթեր ու ճանապարհներ, որոնց երկարությամբ տեղավորված են հնգամյա պլանի առաջադրանքները պատկերող ստենդներ, արտադրության առաջավորների դիմանկարներ, զանազան լոզունգներ ու կոչեր։ Ահա և ձեռնարկության կոլեկտիվի սոցիալիստական պարտավորությունները։*

*Ծառերով շրջապատված տուֆակերտ ու բետոնակուռ արտադրական հսկա կորպուսներում լսվում է աշխատանքի հևքը։ Այժմ այստեղ թողարկվում են շուրջ 150 անուն էլեկտրական մեքենաներ, ապարատներ ու սարքավորումներ, որոնք լայն ճանաչում են գտել ոչ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանյան մի քանի տասնյակ երկրներում։*

*Դա* Երևանի Վ. Ի. Լենինի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր էլեկտրամեքենաշինական գործարանն է՝ *Անդրկովկասի էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջնեկը, հանրապետության ամենախոշոր արդյունաբերական ձեռնարկությունը, մասնագետների կոփման իսկական դարբնոցը։*

*Երիտասարդ է գործարանը։ Այն ստեղծվել է Մեծ հայրենականի փոթորկալից տարիներին։ Այստեղ արտադրության վետերանների հետ, օգտագործելով նրանց աշխատանքային հարուստ փորձը, հաջողությամբ աշխատում են հազարավոր երիտասարդներ, որոնք իրենց ունակությունները, ուժը, եռանդը և խանդավառությունը չեն խնայում պետական առաջադրանքներն անթերի կատարելու, արտադրանքի որակն ու հուսալիությունն անընդհատ բարձրացնելու, այն համաշխարհային լավագույն նմուշների մակարդակին հասցնելու համար։*

*Գործարանի տասներկու հազարանոց կոլեկտիվի աշխատանքը հմտորեն է գլխավորում ձեռնարկության կուսակցական կազմակերպությունը, որի շարքերում հաշվվում են 1.302 կուսանդամ-թեկնածու։ Գործարանի կուսակցական կոմիտեն, սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպություններն իրենց ամենօրյա գործունեության ընթացքում մեծ նշանակություն են տալիս*



*կոմունիստներին մարքս-լենինյան տեսությամբ զինելու, նրանց մտահորիզոնն ավելի ընդլայնելու, քաղաքական կոփվածությունը բարձրացնելու հարցերին։ Նրանք առավել ուշադրություն են նվիրում կուսակցության շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող աշխատանքին։ Ներկայումս այստեղ երիտասարդ կոմունիստները զգալի թիվ են կազմում։ 1967 թ. կուսանդամության թեկնածու են ընդունվել 89 մարդ, այս տարվա առաջին 9 ամսում նրանց թիվը հասել է 142-ի։*

*Ի դեպ, կուսակցության շարքերը նոր անդամներ ընդունելիս կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները առաջնորդվում են ՍՄԿԿ XXIII համագումարի հայտնի ցուցումով, որ կուսակցության սոցիալական կազմում*
*բանվորները այսուհետև ևս պետք է առաջատար տեղ գրավեն։ Սիստեմատի-*
*կաբար վերլուծելով կուսակցության մեջ ընդունվածների սոցիալական կազմը,*
*բարելավելով անկուսակցականների շրջանում տարվող դաստիարակչական աշ-*
*խատանքը, նրանք որոշակի հաջողությունների են հասել՝ կուսակցության շար-*
*քերն ընդունվածների մեջ բանվորների առաջատար տեղն ապահովելու գործում։*
*Բավական է հիշատակել, որ ընթացիկ տարում ՍՄԿԿ շարքերն ընդունված 142*
*կուսթեկնածուից՝ 110-ը բանվորներ են։ Վերջին երկու տարում ՍՄԿԿ շարքերն*
*ընդունված 231 կուսթեկնածուից 38-ը մինչև 25 տարեկան են, 117-ը՝ մինչև 30*
*տարեկան, 94-ը կուսակցության մեջ են ընդունվել կոմերիտմիությունից։*

*ՍՄԿԿ XXIII համագումարը պահանջեց կոմերիտական կազմակերպու-*
*թյուններում ամրապնդել կուսակցական կորիզը, նրանց աշխատանքում լայ-*
*նորեն ընդգրկել կոմերիտական տարիք ունեցող կոմունիստներին։*

*Իրականացնելով այս պահանջը, գործարանի սկզբնական կուսակցական*
*կազմակերպությունները հասել են այն բանին, որ բազմաթիվ արտադրամասե-*
*րի ու բաժինների ԼԿԵՄ կազմակերպությունների քարտուղարներ ու բյուրոների*
*անդամներ, ընդունվելով կուսակցության շարքերը, շարունակում են ղեկավար*
*աշխատանք կատարել կոմերիտական կազմակերպություններում։ Դա զգալի-*
*որեն նպաստում է գործարանի կոմերիտկազմակերպության գործունեության*
*բարելավմանը, երիտասարդության գաղափարական դաստիարակության մա-*
*կարդակի բարձրացմանը։*

*Կուսկազմակերպությունները երիտասարդ կոմունիստներին լայնորեն ներ-*
*գրավում են նաև կուսակցական աշխատանքում, մասնակից դարձնում ժողով-*
*ների նախապատրաստմանը, ընդունված որոշումների կատարման ստուգման*
*գործին, տալիս մշտական ու ժամանակավոր հանձնարարություններ, պրակտիկ*
*աշխատանքում ստուգում նրանց քաղաքական ու գործնական հատկություննե-*
*րը, պայմաններ ստեղծում, որպեսզի կազմակերպության բոլոր կոմունիստները*
*լավ ճանաչեն կուսանդամության թեկնածուներին, ընկերական անհրաժեշտ օգ-*
*նություն ցույց տան նրանց։*

*Երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող աշխատանքը հատկապես*
*ուսանելի է գործարանի գեներատորների արտադրամասում։ Այստեղ աշխա-*
*տում են ավելի քան 1.000 մարդ, իսկ կոմունիստների թիվը հասնում է 100-ի։*
*Արտադրամասի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ շարքերը նոր մարդիկ ընդու-*
*նելիս, առաջին հերթին, հաշվի է առնում, թե նրանք ինչպես են իրենց դրսևո-*
*րում արտադրության մեջ, հասարակական աշխատանքում, կենցաղում։ Նման*
*մոտեցման շնորհիվ կուսկազմակերպությունը իր շարքերը համալրում է առա-*
*վել առաջավոր բանվորներով, ինժեներա-տեխնիկական աշխատողներով և ծա-*

տայողներով։ Իսկ երբ մարդն արդեն արժանացել է արտադրամասի կոմունիստների վստահությանը և ընդունվել կուսակցության շարքերը, նա մշտապես գտնվում է կուսկազմակերպության բյուրոյի ու քարտուղարի ուշադրության կենտրոնում։ Սկսվում է ամենօրյա հոգատար, ուշադիր աշխատանքը նրա հետ։

Բանվորուհի Ս. Մանուչարյանին մեկ ու կես տարի առաջ է վստահվել կոմունիստի անդամատոմսը։ Հմուտ բանվորուհին այժմ իրենց տեղամասի արհմիության կազմակերպիչն է, արտադրամասի կուսբյուրոյի անդամը, գլխավորում է կանանց շրջանում տարվող աշխատանքը։ Իսկ դա հեշտ գործ չէ։ Արտադրամասում աշխատում են շուրջ 400 կին, որոնցից շատերն ամուսնացած են, մայրեր են. կան նաև այնպիսիները, որոնք միաժամանակ սովորում են երեկոյան և հեռակա ուսումնական հաստատություններում։ Ուստի պահանջվում է ամեն մեկի նկատմամբ ունենալ յուրովի մոտեցում, հաշվի առնել կոնկրետ պայմանները՝ նրանց հասարակական աշխատանքում ներգրավելու համար։ Սապետը երեք երեխայի մայր է, ունի հարուստ կենսափորձ։ Դա օգնում է նրան հասկանալու բանվորուհիներին, բարձրացնելու նրանց խանդավառությունը։ Նրա աշխատանքը դրական արդյունք է տալիս. արտադրամասի կանայք լավ են կատարում ամենօրյա առաջադրանքները, քաղաքականապես անընդհատ աճում ու զարգանում են։ Միայն այս տարի արտադրամասի բանվորուհիներից հինգ հոգի ընդունվել են կուսանդամության թեկնածու։

Կուսկազմակերպության բյուրոյի անդամները հաճախակի լինում են էլեկտրամեխանիկական տեխնիկումի՝ գործարանին առընթեր ֆիլիալում, հետաքրքրվում այնտեղ սովորող երիտասարդ կոմունիստների ուսման առաջադիմությամբ, անհրաժեշտության դեպքում՝ համապատասխան օգնություն ցույց տալիս նրանց։ Բյուրոն աչքաթող չի անում նաև մարդկանց կենցաղային պայմանների բարելավման հարցը։ Վերջերս կուսբյուրոյի քարտուղար Օ. Բոցինյանը և բյուրոյի անդամ Ն. Խլղաթյանը եղան երիտասարդ կոմունիստներ Ջ. Հովհաննիսյանի և Ս. Խաչիկյանի բնակարաններում, հետաքրքրվեցին նրանց բնակարանային-կենցաղային պայմաններով, զրուցեցին նրանց ընտանիքի անդամների հետ։ Երիտասարդ կոմունիստների նկատմամբ ցուցաբերվող այս ուշադրությունն ու հոգատարությունը մարդիկ բարձր են գնահատում։

Գաղափարական դաստիարակչական աշխատանքը բարձրացնում է կոմունիստների արտադրական ակտիվությունը, նրանց համակում ձեռնարկության հոգսերով։ Անցած գարնանը արտադրամասի կուսակցական ժողովը քննարկում էր փաթաթման տեղամասում գունավոր մետաղների խնայողության և պահպանման հարցը։ Ժողովի ավարտից հետո կուսբյուրոյի քարտուղար Օ. Բոցինյանին մոտեցավ երիտասարդ կոմունիստ, մեկուսացնող Ե. Մխիթարյանը։ Նրան հետաքրքրում էր, թե ինչու չեն աշխատում արտադրության մնացուկները մամլող մեքենաները։ Այդ մասին իրոք անհրաժեշտ էր մտահոգվել։ Կուսբյուրոյի միջամտության շնորհիվ մամլիչները շուտով գործի դրվեցին, և ձեռնարկությունը զգալի միջոցներ տնտեսեց։

Երիտասարդ կոմունիստների դաստիարակության շատ օրինակներ կան նաև ձեռնարկության մյուս սկզբնական կուսկազմակերպություններում։ Գործարանի կուսակցական կոմիտեն նույնպես որոշակի աշխատանք է կատարում երիտասարդ կոմունիստների շրջանում։ Կուսկոմիտեին կից գործում է երիտասարդ կոմունիստների դպրոցը, որի նպատակն է նրանց հանգամանորեն ծանոթացնել կոմունիստի կանոնադրական պարտականություններին, կուսակցական



կյանքի լենինյան նորմերին, կոփել գաղափարապես, ներգրավել կուսկազմակերպության պրակտիկ աշխատանքում։

Դպրոցի ունկնդիրների համար կազմակերպվում և անց են կացվում զեկուցումներ ու դասախոսություններ մարքս-լենինյան տեսության, կուսակցական շինարարության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման, միջազգային դրության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության, պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի, Լենինյան շրջանի, մայրաքաղաքի և հանրապետության զարգացման հեռանկարների ու մի շարք այլ թեմաների շուրջ։

Բացի հրավիրված դասախոսներից, դպրոցի ունկնդիրների համար զեկուցումներ ու դասախոսություններ են կարդում նաև գործարանի կուսակցական և տնտեսական ղեկավար աշխատողները։ Պատահական չէ, որ ունկնդիրներ Մ. Պողոսյանը, Ի. Սահակյանը, Ջ. Հովհաննիսյանը, Վ. Ստեփանյանը և շատ ուրիշներ հաճույքով են ներկայանում հերթական պարապմունքներին։ Չէ՞ որ ամեն պարապմունքին նրանք հետաքրքրական նորություններ են լսում հարազատ գործարանի մասին, հարստացնում իրենց տեսական և քաղաքական գիտելիքները։

Փորձը բերում է այն համոզման, որ երիտասարդ կոմունիստների հետ տարվող համակողմանի աշխատանքը, կուսկազմակերպության ցուցաբերած ուշադրությունն ու հոգատարությունը օգնում են նրանց կարճ ժամանակում դառնալու կուսակցական իսկական մարտիկներ։ Ուստի, խիստ կարևոր է, որ կուսակցության մեջ ընդունվելու հենց առաջին օրերից մարդը ներգրավվի կուսկազմակերպության աշխատանքների մեջ, իրեն զգա նրա լիիրավ անդամը, համակվի պատասխանատվության զգացումով՝ իր կազմակերպության և ողջ կուսակցության գործերի վիճակի համար։

Այդ տեսակետից ուսանելի է նաև մայրաքաղաքի մեկ այլ խոշոր ձեռնարկության՝ Վ. Ի. Լենինի անվան մետաղի կոմբինատի կուսկազմակերպության աշխատանքը։

Կոմբինատի գլխավոր մեխանիկի բաժնի կուսկազմակերպությունում կան 56 կոմունիստ, որոնց կեսը երիտասարդներ են։ Անցյալ տարի այս կազմակերպությունը կուսակցության մեջ է ընդունել 12 մարդ, որոնցից 11-ը՝ կոմերիտկազմակերպության երաշխավորությամբ։ Նրանք բոլորը բանվորներ են, արտադրության առաջավորներ։

Երիտասարդ կոմունիստներ Ս. Քեշիշյանը և Ս. Ջոթյանը նախկինում եղել են փականագործներ։ Համապատասխան կրթություն ստանալուց հետո նրանք դարձել են ղեկավար աշխատողներ։ Ուշադիր հետևելով կաթսայատան աշխատանքին, նրանք նկատեցին, որ եռալուց ջուրը կաթսաների պատերին նստվածք է տալիս, որի հետևանքով անհրաժեշտություն էր առաջանում կաթսաները ժամանակ առ ժամանակ քանդել և մաքրել։ Կոմունիստ-նորարարների առաջարկով ջուրը սկսեցին նախօրոք զտել. այժմ կարիք չի լինում կաթսաները նստվածքից մաքրել և դրանք ավելի երկար են աշխատում։ Կաթսայատան աշխատողները կոմբինատի շոգեուժային բաժնի պետ Ս. Քեշիշյանին ճանաչում են նաև որպես լավագույն քաղինֆորմատորի։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի իսկական օրինակ են ցույց տալիս կաթսայատան երիտասարդ կոմունիստներ Հ. Քուչիկյանը, Ա. Ստեփանյանը, Հ. Գրիգորյանը և ուրիշներ։ Անցյալ տարի, չնայած բազմա-

թիվ ահազանգերին, կոմբինատի ղեկավարությունը ժամանակին չապահովեց կաթսաների նորոգումը, որի հետևանքով այս տարվա սկզբին կաթսաներից երկուսը շարքից դուրս եկան: Կաթսայատան կուսակցական խումբը դիմեց գլխավոր մեխանիկի բաժնի կուսբյուրոյի օգնությանը: Վերջինս հանձնարարեց կաթսայատան կոմունիստներին այդ հարցը նախապատրաստել արտադրամասի կուսակցական կազմակերպության ժողովում քննարկելու համար: Նրանք այդ հանձնարարությունը կատարեցին բարեխիղճ: Ժողովում քննարկելուց հետո հարցը տեղափոխվեց կոմբինատի կուսակցական կոմիտե, որտեղ նույնպես լուրջ խոսակցություն բացվեց այդ առթիվ:

Սակայն դա չգոհացրեց կոմունիստներին: Ամեն կերպ ձգտելով ժամ առաջ գործի դնել կաթսաները և արտադրությունն ապահովել պահանջվող շոգիով, Հ. Քուչիկյանը, Ա. Ստեփանյանը, Հ. Գրիգորյանը և մյուսները իրենց հանգստյան օրերի հաշվին (երկու օրում) կարողացան ավարտել կաթսաների նորոգումը և ապահովել կոմբինատի անխափան աշխատանքը:

Դժվարություններ երևան եկան նաև գործվածքային նոր ավտոմատների ճշգրիտ սարքերի յուրացման գործում: Այստեղ կրկին իրենց խոսքն ասացին կոմունիստները: Ջափիչ-հսկիչ սարքերի բաժնի աշխատողներ Ն. Վարդանյանը, Մ. Կլիմչենկոն, Ս. Կալենտերյանը և կուսակցական խմբի կազմակերպիչ Ա. Գրիգորյանը իրենց վրա վերցնելով ավտոմատ հաստոցների սարքերի ճիշտ օգտագործման նախաձեռնությունը, կարճ ժամանակում կարողացան կաթսայատան ենթավարպետներին սովորեցնել այդ բարդ գործը:

Կոմբինատի գործվածքային երկրորդ արտադրության կոմունիստները նույնպես լավ են դրսևորում իրենց: Ջուլհակուհիներ Ե. Իսրայելյանը, Ծ. Արաբյանը, Ֆ. Աթաբեկյանը, Ջ. Եղոյանը, Վ. Աբրահամյանը ո՛չ միայն միշտ գերակատարում են առաջադրանքները, թողարկում բարձրորակ գործվածքներ, այլև հետաքրքրվում են հասարակական կյանքով: Ե. Իսրայելյանը հերթափոխային արհկոմի նախագահն է, կոմբինատի արհմիութենական կոմիտեի անդամ և լավ է կատարում արտադրական-մասսայական հանձնաժողովի անդամի պարտականությունները: Կոմբինատում շատերն են ճանաչում գործվածքային արտադրամասի ԼԿԵՄ կոմիտեի անդամ, հերթափոխի կոմերիտական կազմակերպության քարտուղար Ֆ. Աթաբեկյանին: Նա թատերական խմբակի ղեկավարն է: Ֆլորան իր դերասանական շնորհքով հիացնում է մետաքսագործներին: Եվ պատահական չէ, որ թատերական խմբակը դարձավ ՀամԼԿԵՄ 50-ամյակին նվիրված գեղարվեստական ինքնագործունեության շրջանային փառատոնի դափնեկիր:

Գործվածքային արտադրամասում ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարի տեղակալ, երիտասարդ կոմունիստ Ծ. Արաբյանը լավ է զբաղվում մամուլի տարածմամբ: Ծաղիկը արտադրության առաջավոր է, սկզբունքային կոմունիստ: Տակավին վերջերս նա տեսավ, որ գործվածքի համար ստացված հենքը ցածրորակ է: Գուցե ուրիշները դրան ուշադրություն չդարձնեին: Սակայն Ծ. Արաբյանը հրաժարվեց ցածրորակ հենքն օգտագործել և անմիջապես դիմեց կուսբյուրոյի քարտուղար Բ. Բաղդասարյանին: Խոտանը կանխվեց, մեղավորները պատասխանատվության ենթարկվեցին:

Մայրաքաղաքի շատ կուսակցական կազմակերպություններ ո՛չ միայն սիստեմատիկ աշխատանք են տանում երիտասարդ կոմունիստների գաղափարական դաստիարակության, արտադրական որակավորման բարձրացման համար,



այլև նրանցից շատերին ինքնուրույն և ավելի պատասխանատու աշխատանք են հանձնարարում: Օրինակ, Երևանի ձեթ-օճառ կոմբինատի նախկին կոնստրուկտոր Հ. Գևորգյանը երեք տարի առաջ է ընդունվել կուսակցության շարքերը, բայց այժմ արդեն աշխատում է որպես կոմբինատի գլխավոր մեխանիկ: Նույն կոմբինատի նախկին բանվորներ Գ. Գևորգյանը, Հ. Գրիգորյանը և Ռ. Հովեյանը հիմա հերթափոխի ինժեներներ են: Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում երիտասարդ կոմունիստներից վարպետ են դարձել շարքային բանվորներ Վ. Կարապետյանը, Բ. Մարգարյանը և Գ. Աղյանը, իսկ գեներատորների արտադրամասի նախկին փականագործ-հավաքող Լ. Մանուկյանն այժմ գլխավորում է գործարանի աշխատանքի և աշխատավարձի բաժնի բյուրոներից մեկը:

Կուսակցության շարքերն առաջավոր բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների, ինտելիգենցիայի և ծառայողների առավել աչքի ընկնող ներկայացուցիչների հաշվին համալրելու նպատակով մի շարք կուսկազմակերպություններ կոնկրետ աշխատանք են տանում ՍՄԿԿ շարքերը ընդունվել ցանկացողների հետ, ուսումնասիրում են նրանց քաղաքական ու գործնական հատկությունները, մասնակից դարձնում մասսայական-քաղաքական միջոցառումների անցկացմանը:

Այժմ, քան երբեք, կուսակցական կազմակերպություններից պահանջվում է ավելի հետևողական պայքար մղել մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի համար, կոմունիստներին, երիտասարդությանը դաստիարակել կոմունիզմի գործին նվիրվածության, վաղվա լուսապայծառ օրվա նկատմամբ անխախտ հավատի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավոր մարդկանց հետ համերաշխության ոգով:

**ՍԱՐԳՍՅԱՆ Կ. Խ. ԹՈՓՉՅԱՆ Ժ. Խ.**
ՀԿԿ Երևանի քաղկոմի հրահանգիչներ

## ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱՌՕՐՅԱՆ

Մեծացել, բազմամարդ է դարձել լենինական քաղաքի հեղափոխական և աշխատանքային հարուստ տրադիցիաներ ունեցող երկաթուղայինների կոլեկտիվը: Քաղաքի երկաթուղային հանգույցը ներկայումս միավորում է դեպոները, կայարանը, շինարարական և այլ ուղեմասեր, երկաթուղային հանգույցին ու նրա բազմամարդ կոլեկտիվին սպասարկող հիվանդանոցն ու տեխնիկումը, մսուր-մանկապարտեզները, կուլտուրայի պալատը և այլ հիմնարկություններ: Եթե հաշվի առնենք նաև, որ այստեղ կենտրոնացած են Անդրկովկասյան երկաթուղու ճանապարհների վարչության ու դրա Երևանի բաժանմունքի զգալի թվով ծառայություններ ու հիմնարկություններ, ապա պարզ կլինի, թե ինչպիսի արտադրա-տնտեսական բարդ միավորում է Լենինականի երկաթուղային հանգույցը:

Հանգույցի կուսակցական կոմիտեն, որ միավորում է 24 արտադրամասային կուսկազմակերպություն, շուրջ 1200 կոմունիստով, կոչված է սիստեմատիկ ղեկավարելու և ուղղություն տալու երկաթուղայինների գործունեությանը, մոբիլիզացնելու նրանց կուսակցության XXIII համագումարի որոշումների անթերի կատարման համար: Այդ նպատակով հանգույցի կուսկոմիտեն անցած երկու տարում զգալի աշխատանք է կատարել կուսակցական

կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման բնագավառում։ Ջգալիորեն բարելավվել է կուսկազմակերպությունների քարտուղարների, բյուրոյի անդամների, կուսկազմակերպիչների կազմը։ Այդ օղակներում ընտրված 207 կուսանդամ պատրաստված ու կենսափորձ ունեցող կոմունիստներ են։

Կադրերի հաջող ընտրությունը հանգույցի կուսակցական կազմակերպությունների գործունեության բարելավման առաջին լուրջ քայլը եղավ։ Այնուհետև, նա ձեռնամուխ եղավ կուսկազմակերպությունների քարտուղարների, կուսկազմակերպիչների ու նրանց տեղակալների ուսուցմանը։ Կուսկոմիտեն սկսեց պարբերաբար դասախոսություններ, զեկուցումներ ու սեմինար պարապմունքներ կազմակերպել, իսկ հանգույցի կուսկոմիտեի անդամներն ու արտահաստիքային հրահանգիչները ձեռնամուխ եղան կուսկազմակերպություններին, կուսխմբերին և նրանց ղեկավարներին ամենօրյա պրակտիկ օգնություն ցույց տալու գործին։ Վերջիններս (թվով 7 հոգի) հանգույցի առավել ակտիվ կուսակցականներից են, ունեն կուսակցական-հասարակական աշխատանքի հարուստ փորձ։

Կուսկոմիտեի նիստերում հաճախակի քննարկվում են շինարարական և էներգամատակարարման տեղամասերի, լոկոմոտիվային դեպոյի, կայարանի, կոնդուկտորական ջոկատի, հիվանդանոցի, կուսկազմակերպությունների հաշվետվությունները կամ զեկուցումները՝ կուսաշխատանքի առանձին հարցերի շուրջ, ընդհանրացվում է աշխատանքի դրական փորձը, բացահայտվում են թերությունները և միջոցներ նշվում դրանց վերացման համար։ Հանգույցի կուսկոմիտեն շատ բան է անում հանուն արտադրական պլանների և շինարարական առաջադրանքների կատարման։

Վագոնային դեպոյի կոլեկտիվը երկար ժամանակ ուղիներ էր որոնում վագոնների տեխնիկական նորոգման աշխատանքների մեքենայացման համար։ Նա այդ դժվարին խնդիրը լուծեց Արևմտասիբիրական երկաթուղու «Մոսկովյան» դեպոյի փորձի ներդրմամբ, որտեղ հոսքային գծի ավտոմատացման օգնությամբ արդեն մեքենայացվել են վագոնների անվազույգերի, սայլակների նորոգման աշխատանքները։ Նախնական հաշվումներով այդ միջոցառման իրականացմամբ ձեռքի աշխատանքը կկրճատվի 70, վագոնների թողունակությունը կավելանա 20 և արտադրանքի ինքնարժեքը կիջնի 25 տոկոսով։

«Մոսկովյան» դեպոյի փորձը մեզ մոտ արմատավորելու նպատակով ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը պլանավորեց Լենինականի վագոնային դեպոյում կառուցել անվազույգերի նորոգման նոր կորպուս, որի աշխատանքները հանձնարարվեց հանգույցի շինարարական ուղեմասին, իսկ մեքենաների ու սարքավորումների կատարելագործման և մոնտաժային գործը՝ վագոնային դեպոյին։

Կուսկազմակերպության ուժերը այս կարևոր խնդրի լուծմանը մոբիլիզացնելու, շինարարական ուղեմասի, դեպոյի կուսկազմակերպությունների և կոմունիստների ակտիվ մասնակցությունն ապահովելու ու նրանց պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով, կուսկոմիտեն բազմակողմանի ուսումնասիրեց ու քննարկեց շինարարական-մոնտաժային աշխատանքների ընթացքը՝ վագոնային դեպոյի նոր արտադրամասում։ Կուսկոմիտեի որոշումը դարձավ կուսկազմակերպությունների գործողությունների ծրագիրը։

Դեպոյի կուսկազմակերպությունը ձեռնարկության կոմունիստներին և,



առաջին հերթին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու որակյալ բանվորներին ներգրավեց մոնտաժման աշխատանքներին։ Տեխնոլոգիական սարքավորումների պատրաստման և տեղադրման համար ստեղծվեց 15 մասնագետներից բաղկացած հատուկ բրիգադա, ուր ընդգրկվեցին կոմունիստ-նորարարները։ Բրիգադան, ելնելով տեղի առանձնահատուկ պայմաններից, գործնական փոփոխություններ էր մտցնում սարքավորումների պատրաստման տեխնիկական նախագծերում, հոգում էր տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման համար, ապահովում պլանավորված աշխատանքը։ Շինարարական-մոնտաժային աշխատանքների արդյունքները ամփոփվում էին օրվա վերջում։ Դրան զուգընթաց, շաբաթը մեկ անգամ կուսկոմիտեն ստուգում էր կոմունիստներին տրված հանձնարարությունների կատարումը։

Դեպոյի նոր կորպուսի շինմոնտաժային աշխատանքներին օգնեցին նաև հանգույցի էներգամատակարարման, կապի և ազդանշանների ուղեմասերի կուսկազմակերպություններն ու կոմունիստները։

Շահագործման հանձնված հանգույցի այդ նոր արտադրամասի շնորհիվ դեպոն դարձավ Անդրերկաթուղու և Միության վագոնային տնտեսության նորագույն տեխնիկայով հագեցած առաջավոր ձեռնարկություններից մեկը։

Կուսկոմիտեի խորհուրդներով ու ցուցումներով վագոնային և լոկոմոտիվային դեպոների, գծուղու, կապի և ազդանշանային ուղեմասերի, երկաթուղային տեխնիկումի ու մյուս օբյեկտների կուսկազմակերպությունները կուսժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկում են կուսակցական-կազմակերպական, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի, երիտասարդ կոմունիստների քաղաքական ուսուցման ու դաստիարակության, ընդունված որոշումների կատարման ստուգման և բազմաթիվ այլ հարցեր, օգնում նրանց քաղաքական և արտադրական ակտիվության զարգացմանը։ Կուսանդամ-թեկնածուների հետ տարվող աշխատանքը ուղղված է յուրաքանչյուր կոմունիստի կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կատարմանը։

Վերջերս վագոնային դեպոյի կուսկազմակերպությունը լսեց և քննարկեց կոմունիստներ Լ. Ադամյանի և Մ. Հակոբյանի հաշվետվությունները։ Ավտոարգելակման զննող Լ. Ադամյանը արտադրության առաջավոր է, ակտիվ հասարակական աշխատող։ Նա բարեխիղճ է, լավ է կատարում իր պարտականությունները, կուսակցական կազմակերպության հանձնարարությունները։ Ադամյանի հերթափոխության ժամանակ դեպոյի և արտադրամասի ղեկավարները հոգեպես հանգիստ են լինում։ Նրանք լավ գիտեն, որ Լիպարիտը չի զլանա, չի հանդուրժի թերությունները։ Մինչդեռ, դժբախտաբար, վագոնների զննող Մ. Հակոբյանի մասին նույնը չի կարելի ասել։ Վերջինս անփույթ է, թերանում է պարտականությունների կատարման մեջ, չի գիտակցում կատարած գործի մեծ պատասխանատվությունը։ Նա ուշանում է ժողովներից կամ բոլորովին չի ներկայանում, առանց հիշեցման անդամավճար չի մուծում։ Բացի այդ, խուսափում է նկատած թերությունների մասին խոսելուց, չի ուզում ուրիշներին «վատություն» անել։

Ժողովականները նշելով այս ամենը, գտան, որ Լ. Հակոբյանը պետք է ջանա վերացնելու թերությունները և կատարի կոմունիստի պարտականությունները։

Շատ ժամանակ չի անցել վագոնային դեպոյի կուսկազմակերպության այդ ժողովից։ Լ. Հակոբյանը այժմ ջանում է ուղղել սխալները. նա ավելի պահանջկոտ է աշխատանքում և սկսել է մասնակցել կուսկազմակերպության ու կոլեկտիվի հասարակական գործունեությանը։

Կուսակցական ժողովը կոմունիստի քաղաքական դաստիարակության և գաղափարական կոփման կարևորագույն դպրոց է։ Ժողովները լավ են նախապատրաստվում և արդյունավետ են անցնում հատկապես կապի և ազդանշանների ուղեմասի կազմակերպությունում (բյուրոյի քարտուղար Ս. Գևորգյան)։ Ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը, որպես կանոն, մասնակցում է կուսակցական ակտիվը, գրեթե բոլոր կոմունիստները ներկուսակցական ակտիվ աշխատանք են կատարում։ Դա ավելի է համախմբում կուսանդամ-թեկնածուներին, բարձրացնում նրանց ակտիվությունը, ամրապնդում կուսակցական կարգապահությունը։

Բացի արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներից, կուսկոմիտեն պարբերաբար հրավիրում է կոմունիստների փնջային և համահանգուցային ակտիվի ժողովներ։ Կուսակցական ակտիվի ժողովում (երեք ամիսը մեկ անգամ) քննարկվում են արտադրամասային կուսկազմակերպությունների գործունեությանը վերաբերող բազմապիսի հարցեր։ Այնտեղ ընդունված որոշումները (կոմիտեի հաստատումից հետո) պարտավոր են կատարել հանգույցի բոլոր կուսկազմակերպություններն ու կոմունիստները։ Անցած երկու տարում կուսակցական ակտիվի ժողովներում քննարկվել են կուսակցական և պետական կարգապահության վիճակը հանգույցի ձեռնարկություններում ու հիմնարկություններում, Հոկտեմբերի 50-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և կուսկազմակերպությունների խնդիրները, գնացքների անվտանգ երթևեկության հետ կապված աշխատանքային կարգապահության հարցերը, կուսակցական վերադաս օրգանների հերթական որոշումներն ու դիրեկտիվները։

Անշուշտ, հեշտ գործ չէ կուսակցական ակտիվի ժողովներին նախապատրաստվելը։ Հաճախ հարկ է լինում նախօրոք մոբիլիզացնել 40—50 հմուտ կոմունիստների և մասնագետների, որոնք հանգամանորեն ծանոթանում են հանգույցի օբյեկտների գործերին ու նրանց կազմակերպությունների աշխատանքին, պարզում գործերի իրավիճակը։ Այնուհետև կուսակցական կոմիտեում հանրագումարի են բերվում ստուգման արդյունքները։ Զեկուցողն իր ձեռքի տակ նոր, ստույգ փաստեր է ունենում, դրանց հիման վրա կազմում է որոշման նախագիծը։

Հաշվի առնելով երկաթուղային տրանսպորտի աշխատանքի առանձնահատուկ պայմանները, կուսկոմիտեն և կուսակցական կազմակերպությունները կոնկրետ միջոցներ են ձեռնարկում ժողովներին կոմունիստների ակտիվ մասնակցությունն ապահովելու համար։ Այսպես. անցյալ հաշվետու-ընտրական ժողովներում մտքերի փոխանակություններին մասնակցեցին 215 կուսանդամ-թեկնածու։

Կուսկոմիտեն և կուսակցական կազմակերպությունները նկատի առան քննադատական բոլոր դիտողությունները, ուսումնասիրեցին դրանք, ընդհանրացրին, իրազեկ դարձրին կոմունիստներին։ Իհարկե, հաշվետու-ընտրական ժողովներում առաջ քաշվեցին նաև այնպիսի լուրջ պրոբլեմներ, որոնց լուծումը երկար ժամանակ է պահանջում կամ առայժմ ռեալ նախադրյալներ



չկան դրանց կենսագործման համար։ Նման հարցերի առթիվ կուսկոմիտեն պատշաճ բացատրություն է տալիս կուսակցական մասսաներին։

Հանգույցում կուսակցական կոմիտեի ստեղծմամբ բարենպաստ պայմաններ է ստեղծվել ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողության առավել ուժեղացման համար։ Չմիջամտելով ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարների անմիջական ֆունկցիաներին, խուսափելով տնտեսական մանրուքներից, կուսկոմիտեն և կուսակցական կազմակերպություններն իրենց ուշադրությունը, ամենից առաջ, կենտրոնացնում են ղեկավար կադրերի գաղափարական դաստիարակության և արտադրության զարգացման գլխավոր հարցերի վրա։ Դա հնարավորություն է ընձեռում ժամանակին նկատել թերություններն ու բացերը, հուշել տնտեսական ղեկավարներին արագ վերացնելու դրանք։

Ադմինիստրացիայի գործունեությունը լավ վերահսկելու համար մեծ նշանակություն ունի կոմիտեում և կուսժողովներում հրամանատարական կադրերին և արտադրության առաջավորներին լսելը, նրանց ձայնին ունկնդրելը։ Ընթացիկ տարում, օրինակ, կուսկոմիտեի նիստերում լսվել և քննարկվել են լոկոմոտիվային դեպոյի պետի, հանգույցի բուժմիավորման գլխավոր բժշկի, վառելանյութի պահեստապետի և ուրիշների զեկուցումները, կոնդուկտորական ջոկատի պետի ինֆորմացիան՝ այդ ոլորտի աշխատողների գաղափարական դաստիարակության վիճակի, կոլեկտիվների առջև դրված խնդիրների կատարման ընթացքի շուրջ։

Վերջերս կուսկոմիտեն քննարկեց Թոշակառու կոմունիստների շրջանում տարվող աշխատանքի վիճակի և նրա բարելավման միջոցառումների հարցը։ Հանգույցի կուսկազմակերպությունում այժմ հաշվառման մեջ են կենսաթոշակի անցած 168 կոմունիստ, որոնք մեծ վաստակ ունեն կոլեկտիվի և հայրենիքի հանդեպ։ Մենք ամեն ինչ անում ենք, որ այդ ընկերները միշտ լավ զգան, անհոգ անցկացնեն իրենց արգասաբեր կյանքի ոսկե աշունը։ Կուսկոմիտեի որոշմամբ կենսաթոշակի անցած երկաթուղայիններին սպասարկելու նպատակով կուլտուրայի պալատում առանձնացվել և կահավորվել է հատուկ սենյակ, ձևավորվել է «Պատվավոր երկաթուղային» տախտակը, ընտրվել է ավագների խորհուրդ։ Նրանց համար շաբաթը երկու անգամ անց են կացվում քաղաքական զրույցներ, հարցուպատասխանի երեկոներ, առավել հրատապ քաղաքական թեմաների շուրջ ամիսը մեկ անգամ կարդացվում է դասախոսություն կամ զեկուցում։ Թոշակառուների շրջանում տարվող պրակտիկ աշխատանքը գլխավորում է կուսկոմիտեի անդամ Փ. Զատիկյանը։ Նրանցից շատերը, իրենց հերթին, ակտիվ մասնակցում են հանգույցի կուսակցական և հասարակական կազմակերպությունների աշխատանքին։

Այժմ մեր երկաթուղայինները ողջ ուժերը նվիրաբերում են Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի պատվին ծավալված մրցությունում ստանձած մեծ պարտավորությունների անթերի կատարմանը։

ՍԱՄԲԱՐԴԱՐՅԱՆ Հ. Հ.
Լենինականի երկաթուղային հանգույցի
կուսակցական կոմիտեի քարտուղար

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԵՌԱՆԿԱՐՈՒՄ

Հայկական ՍՍՀ արտադրաուժերի զարգացման աչքի ընկնող գիծը՝ բազմակողմանիությունն է։ Հանրապետությունն ունակ է ավելի ակտիվորեն մասնակցելու աշխատանքի համամիութենական բաժանմանը, երկրի մյուս շրջաններին հայթայթելու բնական պայմանների բերումով նրանց պակասող շատ նյութեր և դրա դիմաց ստանալու հանրապետությանը պակասող արտադրանքները։

Հայկական ՍՍՀ-ն կարող է մյուս շրջան-հանրապետություններին (ելնելով նրանց պահանջմունքներից) ապահովել գունավոր մետալուրգիայի, լայն պրոֆիլի քիմիայի, համապատասխան նոմենկլատուրայի մեքենաշինության, հարավի գյուղատնտեսական կուլտուրաների, սննդի և թեթև արդյունաբերական արտադրանքներով, մատակարարել հրաբխային թեթև լիցքեր, բնական շինանյութեր, հրակայուն կավեր, բենտոնիտներ և այլն։ Իր հերթին, Հայկական ՍՍՀ-ն կարիք ունի հանքային վառելանյութի, շինափայտի, երկաթի գլանվածքի, պակասող նոմենկլատուրայի սարքավորման, ինչպես նաև մասնակիորեն հացահատիկի, մսի, կաթնեղենի։

Այս կամ այն հիմնական արտադրանքի պակասը, ազդելով զարգացման ռացիոնալ ուղղությունների ընտրության վրա, չպետք է սահմանափակի շրջան-հանրապետությունների արտադրաուժերի ընդհանուր զարգացումը։ Ինչ վերաբերում է զարգացման տեմպին, ապա այն զգալի չափով պետք է համապատասխանի բնակչության թվի աճին, առանց որի դժվար կլիներ հավասարեցնել շրջան-հանրապետությունների զարգացման տերիտորիալ տնտեսական մակարդակները։ Այս նկատառումները հաշվի առնելով են որոշվում Հայկական ՍՍՀ արտադրաուժերի զարգացման ու տեղադրման հիմնական ուղղությունները, տեմպն ու համամասնությունը՝ գլխավոր հեռանկարի ժամանակաշրջանում։

Գիտականորեն հիմնավորված նորմաներին հասնելուց հետո, սննդամթերքների արտադրության զարգացումը կհամապատասխանեցվի բնակչության աճին։ Սակայն նման կոնցեպցիան, ըստ երևույթին, մեծ չափով կվերաբերի գլխավոր հեռանկարի վերջին տարիներին և ավելի լայնորեն կդրսևորվի առավել ուշ ժամանակաշրջաններում։ Դրա հետ միասին աստիճանաբար կառաջանա աշխատատար արտադրությունների առավելությունների հարցը՝ նույնիսկ բնակչության մեծ խտություն ունեցող շրջաններում։ Աշխատատարության փոփոխման վրա ակտիվ ազդեցություն կգործի տեխնիկական պրոգրեսը (ավտոմատացումը, արտադրության ծրագրային կառավարումը և այլն)։ Այդ դեպքում անհրաժեշտ կլինի կրճատել աշխատաժամանակը, իսկ նյութական ապահովվածության բարձրացման հետ նաև փոխել կանանց, անաշխա-



տունակ տարիքի անձանց զբաղվածության գործակիցը հանրային տնտեսության մեջ։ Նյութական արտադրության և բնակչության ապահովվածության աճն ավելի մեծ չափով կպահանջի սպասարկման ոլորտների գերազանցող զարգացում (ընդ որում կավելանա զբաղված անձանց տեսակարար կշիռը)։

Վերոհիշյալ հարցերից շատերը, ըստ երևույթին կծագեն երկրում տերիտորիալ տնտեսական մակարդակի հավասարեցման առաջադրանքի կատարումից հետո, և, առաջին հերթին, այն շրջան-հանրապետություններում, որտեղ դա հասել է միութենական միջին մակարդակին կամ անցել։ Մեր կարծիքով, տերիտորիալ տնտեսական մակարդակի մեծացումն արագացնելու համար երկու դեպքում էլ (համապատասխանորեն) զարգացածության միութենական միջին գործակցին չհասած շրջան-հանրապետությունների զարգացման տեմպը գերազանցող կլինի։ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում նախատեսված է ՍՍՀՄ-ում 1966—1970 թթ. արդյունաբերության զարգացման աճ 1,5, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 1,8 անգամ։ Ընդ որում, պետք է հաշվի առնել, որ ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ բնակչության աճի գոյություն ունեցող 1:2 հարաբերակցությունը պահպանելիս, արդյունաբերական արտադրության աճը չպետք է իջնի 1960—1970 թթ. համար ընդունվածի համեմատությամբ։ Ավելի հեռավոր ապագայում, որքան Հայաստանի բնակչության թվի աճի հարաբերակցությունը մոտենա (1:1,7) միութենական միջինին, հնարավոր է նաև արդյունաբերության զարգացման աճի տեմպի որոշ մոտեցում, քանի որ մինչ այդ էապես կավելանա ժողովրդական տնտեսության հագեցումը արտադրանքով և զգալիորեն կբարձրանա հանրային տնտեսության մեջ զբաղվածության գործակիցը։ Ելնելով նախնական գնահատումներից, կարելի է ենթադրել, որ 1980 թ. Հայկական ՍՍՀ-ում զգալի չափով կկրճատվի տնային և տնամերձ տնտեսության մեջ զբաղվողների թիվը։

Այս ամենը որոշում են այն հիմնական ուղղությունները, որոնցով ցանկալի է հանրապետության արտադրաուժերի զարգացումը. դա ինչ-որ չափով նպաստում է աճի ընդհանուր անհրաժեշտ տեմպի հայտաբերմանը։ Սակայն գլխավոր սխեմայի մշակման համար պահանջվում է ավելի կոնկրետ որոշել հանրային արտադրության զարգացման մասշտաբները։ Գյուղատնտեսության մեջ, հաշվի առնելով, մի կողմից՝ արտադրապրոցեսների ավտոմատացման սահմանափակ հնարավորությունները, մյուս կողմից՝ արտադրության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումն արագորեն ընդլայնելու անհրաժեշտությունը, հարկավոր է աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպ նախատեսել մոտակա հեռանկարում և ավելի չափավոր տեմպ՝ հետագայում։ Այս բանը պայմանավորվում է նաև բուսաբուծության ստրուկտուրայի փոփոխմամբ. բազմամյա տնկարկների տեսակարար կշռի բարձրացմամբ մեքենայացման հնարավորությունները պակասում են, քան միամյա կուլտուրաներ մշակելիս։

Արդյունաբերության մեջ և սպասարկման ոլորտում զբաղվածների բացարձակ թիվը մոտավորապես կհավասարվի, իսկ գյուղատնտեսության մեջ հաշվարկային ամբողջ ժամանակաշրջանում չի փոխվի։ Զբաղվածության նման ստրուկտուրայի ապահովումը կպահանջի աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպն արդյունաբերության մեջ առաջին տասնամյակի 2,5—5 տոկոսից երկրորդ տասնամյակում հասցնել մոտ 6—6,5 տոկոսի,

իսկ գյուղատնտեսության մեջ՝ 1960 թ. 9,5-ից 1975-ին հասցնել 12,5 տոկոսի, իսկ վերջին հնգամյակում՝ պահպանելով 10,5—11 տոկոսը։

Գլխավոր հեռանկարի ժամանակաշրջանում Հայաստանի արդյունաբերության արտադրության բացարձակ ծավալը, երկրում ունեցած տեսակարար կշռով կհամապատասխանի բնակչության թվի գործակցին։ Արդյունաբերական արտադրանքի աճի մեկ տոկոսի բովանդակությունը հնգամյակ առ հնգամյակ կաճի համարյա երկու անգամ, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 50 տոկոսով։ Օրինակ, 1971—1975 թթ. այն մոտ 60 տոկոսով ավելի կլինի սովետական ամբողջ ժամանակաշրջանում (առ 1965 թվականը) Հայաստանի արդյունաբերության ձեռք բերած արտադրության մակարդակից, իսկ 1980 թ. 20 տոկոսով բարձր կլինի հիսուն տարվա ընթացքում (այսինքն՝ առ 1970 թ. ձեռք բերված նմանօրինակ ցուցանիշներից)։

Մոտավորապես նույն համամասնություններով կաճի նաև գյուղատնտեսական արտադրությունը։

Այսպիսին են Հայկական ՍՍՀ արտադրաուժերի ապագա զարգացման մասշտաբները, որոնք արտահայտում են երկրի ընդհանուր կոլեկտիվ զարգացումն ամբողջությամբ վերցրած։

Ի՞նչ ուղղություններով անհրաժեշտ կլինի իրագործել ժողովրդական տնտեսության զարգացումը։

Էներգետիկայի ասպարեզում գալիք տարիներին Հայաստանում նկատելիորեն կիջնի ջերմաէներգիայի և վառելանյութի սպառման աճի տեմպը։ Առաջինը բացատրվում է ջերմատար արտադրությունների զարգացման սահմանափակումով, երկրորդը՝ ատոմային էներգիայի կիրառման զարգացմամբ. ատոմային կայանները կապահովեն էլեկտրաէներգիայի ամբողջ արտադրության մոտ կեսը, իսկ հիդրոէլեկտրակայանների արտադրանքի բաժինը կիջնի մինչև 10 տոկոսի։ Ինչ վերաբերում է էլեկտրասպառմանը, ապա այն կավելանա ՍՍՀՄ համար նշված մակարդակի տեմպով և կվերանա Հայաստանի էլեկտրաէներգիայի 1960—1961 թթ. արտադրության զարգացման ետ մնալը։ Էլեկտրատար արտադրությունների զարգացումը հանրապետությունում առաջվա նման կսահմանափակվի և արդյունաբերության էլեկտրատարությունը համապատասխանորեն կիջնի։ Ընդ որում, արտադրության մնացած բոլոր ոլորտներում, ինչպես նաև կոմունալ-կենցաղային սպասարկման մեջ, կավելանա էլեկտրազինվածությունը։ Հարկ կլինի զարգացնել գազատար ուղիները, սնելով դրանք նաև Իրանի գազով, կառուցել կենցաղսպասարկման գազատար ուղիներ, ինչպես նաև խիստ ավելացնել տեղական բնական գազի որոնման ջանքերը։

Սև մետալուրգիայի ասպարեզում առավել մեծ ակտիվությամբ և բազմակողմանիորեն կզարգանա հրակայուն նյութերի՝ Շորժայի ֆորստերիտների և Հրազդանի բարձրորակ կավի արտադրությունը։ Շորժայում կզարգանա նաև կերամիկայի և կաղապարման կավի արտադրությունը։ Ժողովրդական տնտեսությանն ի սպաս կդրվեն Իջևանի դոլոմիտները։ Նոր ուղղություն կհանդիսանա Հրազդանի երկաթահանքի հիման վրա գերճշգրիտ պողպատի արտադրությունը։ Աբովյանի երկաթահանքի և Սվարանցի երկաթային մագնեզիտի հանքավայրերի երկրաբանական հետազոտությունների արդյունքների, ինչպես նաև Սվարանցի ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման տեխնոլոգիայի մշակմամբ կորոշվեն դրանք տնտեսական շրջանառության մեջ ներ-



գրավելու և Հայաստանում տրանսֆորմատորային պողպատի արտադրության հիմնադրման հարցերը՝ Սվարանցի հանքաքարի օգտագործումը. այն պարունակում է մեծ խառնությամբ մագնիումի օքսիդ, որի սուր կարիքն է զգում ՍՍՀՄ եվրոպական մասը։ Կոմպլեքսային վերամշակման պայմաններում նաև երկաթի կոնցենտրատի ու հազվագյուտ մետաղի ստացումը կարող է տնտեսապես արդարացնել իրեն։

Գունավոր մետալուրգիայի հիմնական խնդիրներն են՝ պղնձա-մոլիբդենային արտադրության հումքի կոմպլեքսային վերամշակման զարգացումը և մնացորդների (շլամ, շլակ, ծծմբաթթվային գազ) ավելի լրիվ օգտագործումը, ցրված և հազվագյուտ մետաղների անջատումը, մոլիբդենի կոնցենտրատի հարստացումը տեղում, պղնձաձուլման մոտեցումը կոնցենտրատի արտադրության վայրին (Ղափան), կենդանի բնության համար վնասակար խախտումների (պղինձ-մոլիբդենի և ոսկի պարունակող հանքաքարերի հարստացումը) արգելապատումը, Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի առաջնային բազմակողմանի (կավահող, ցեմենտ, քիմիական նյութեր) կոմպլեքսի ավարտումը և երկրորդայինի զարգացումը, ալյումինի և գունավոր մետաղների հիման վրա համաձուլվածքների և գլանվածքների արտադրության կազմակերպումը և այլն։

Շատ կարևոր է գտնել գունավոր մետալուրգիայի նոր օբյեկտների տեղադրման համար առավել ռացիոնալ լուծումներ, հաշվի առնելով նրա զարգացումն ավելի հեռավոր հեռանկարում և գյուղատնտեսական գոտիների պաշտպանությունն արտադրության մնացորդների վնասակար ազդեցությունից։ Այդ տեսակետից պակաս հարմար գոտի է Արարատյան դաշտավայրը, որտեղ բնակչությունը գյուղատնտեսությունից հեշտությամբ չի անցնում արդյունաբերության, իսկ կլիմայական պայմանները դժվարացնում են աշխատուժի ներգրավումը մյուս շրջաններից։

Քիմիական արդյունաբերության համար կպահպանվի էներգատար և ջրատար արտադրությունների զարգացման սահմանափակումը, այսինքն՝ այն ձեռնարկությունների, որոնք թողարկում են ելանյութեր և որպես կիսաֆաբրիկատ զգալի չափով ուղարկվում հանրապետության սահմաններից դուրս։ Քիմիական ճյուղի արդյունավետության բարձրացումը պահանջում է ավելի ակտիվ զարգացնել կիսաֆաբրիկատների վրա հենվող նոր արտադրությունները։

Այդ պայմաններում քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ներճյուղային ստրուկտուրայում զգալիորեն կիջնի էլեկտրատար և ջրատար արտադրությունների տեսակարար կշիռը, իսկ մնացածներինը՝ համապատասխանորեն կավելանա։ Այդ զարգացման մեջ կարևոր տեղ կգրավի բուժանյութերի արդյունաբերությունը, որի արտադրությունն աճելով կդառնա համամիութենական խոշոր բազաներից մեկը։ Նորություն կլինի նաև սինթետիկ բուրավետ նյութերի արտադրությունը։ Կընդլայնվեն այն արտադրաճյուղերը, որոնց արտադրանքն անհրաժեշտ է հանրապետության արդյունաբերության մյուս ճյուղերին. ինչպես, օրինակ, սինթետիկ մանրաթելերի, պլաստմասսայից պատրաստված արուրքների, ավտոդողերի, լաքերի, ներկերի և այլն, որոնք անհրաժեշտ են թեթև, փայտամշակման արդյունաբերության, մեքենաշինության՝ մասնավորապես ավտոմոբիլաշինության, շինարարության համար և այլն։ Դրա մեջ գտնում ենք քիմիական արդյունաբերության զարգացման կոմպլեքսայնությունը և կոոպերացումը։ Քիմիական արդյունաբերության

հումքի նոր աղբյուրներից մեկը Իրանի գազն է, որից կստացվի մեթան՝ ացետիլենի և ամոնիումի արտադրության համար և այլն:

Հանձնարարվում է քիմիական արտադրության ձեռնարկությունները տեղադրել խոշոր քաղաքներից և ինտենսիվ զարգացող հողագործության շրջաններից դուրս, ջրի դրական բալանս ունեցող գոտիներում: Քիմիական արդյունաբերության տրադիցիոն զարգացումը Երևանի և Կիրովականի գոտիներում անհրաժեշտ կլինի հետագայում սահմանափակել:

Հայաստանի պայմաններում մեքենաշինությունը, ինչպես և մասամբ թեթև արդյունաբերությունը որոշ չափով աշխատանքի բալանսը վերջափակող ճյուղեր են: Այդ արդյունաբերությունը զարգանում է աշխատատար և ոչմետաղատար արտադրությունների ուղղությամբ, որոնք աշխատատեղի ստեղծման համար պահանջում են փոքր կապիտալ ներդրումներ և սահմանափակվում են էլեկտրաէներգիայի ու ջրի նվազագույն ծախսումով: Հայաստանի մեքենաշինությունն ապահովված է բարձրորակ կադրերով և միութենական մասնագիտացման ճյուղ է. 1960 թ. մեքենաշինությունը տալիս էր արդյունաբերական ողջ արտադրության 15 տոկոսը և զիջում էր միայն թեթև ու սննդի արդյունաբերությանը: Այժմ մեքենաշինությունն առաջին տեղն է բռնում հանրապետության արդյունաբերության ճյուղերի մեջ: Մոտ ապագայում արտադրության բացարձակ ծավալի աճի հետ միասին, նկատելիորեն կփոխվի մեքենաշինության ներճյուղային ստրուկտուրան: Առավել մեծ տեղ կպահպանեն էլեկտրատեխնիկական, գործիքաշինական և այլ մեքենաշինությունը, իսկ աճի առավել բարձր տեմպ կունենան ավտոմոբիլային, ճանապարհային և կոմունալ շինարարության, կենցաղային սարքերի, հաստոցաշինական և այլ մեքենաշինությունը:

Մեքենաշինության զարգացման մեջ տեղական նյութերից կօգտագործվեն պղինձը, ալյումինը և դրանց համաձուլվածքները՝ գլանվածք, կաբելային արտադրանք, ֆոլգա՝ պլաստմասսերի տեխնիկական հյուսվածքներ, քիմիական մանրաթելի, ռետինե-տեխնիկական շինվածքներ, գերճշգրիտ պողպատ, կաղապարի հրակայուն կավեր և այլն: Ավելի կզարգանա ներճյուղային կոոպերացիան, փոխադարձաբար իրար հայթայթելով կոմպլեկտող դետալներ, սարքավորումներ, գործիքներ, ձուլվածք և այլն: Մեքենաշինությունը կթողարկի բարձր արուրքներ-չափող սարքեր, ռադիոտեխնիկա, էլեկտրոնային մեքենաներ, գերճշգրիտ հաստոցներ, լայն նոմենկլատուրայի էլեկտրատեխնիկա, ավտոմեքենաներ, ավտոբեռնիչներ, քիմիական արդյունաբերության սարքավորումներ, տեխնիկական ճշգրիտ քարեր, ընդհուպ մինչև արհեստական ալմաստներ, կենցաղային զանազան սարքեր և այլն: Հայաստանի մեքենաշինությունը հանրապետության հիմնական արտահանողն է:

Շինանյութերի արդյունաբերության զարգացման առանձնահատկությունը հանրապետական շինարարության կարիքները լիովին ապահովելու, ՍՍՀՄ հարավային գոտու մի շարք շրջաններին բնական քարի հայթայթումն ընդլայնելու անհրաժեշտությունն է: ՍՍՀՄ հարավային շրջաններն են ուղարկվում երեսպատման տուֆի սալաքարեր, պեմզա, հրաբխային շլակներ, պերլիտ, մասամբ էլ դրանց հիման վրա պատրաստվող բետոնե և այլ շինվածքներ՝ օգտագործելով տուֆի հանույթի ժամանակ գոյացող մնացորդները: Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի խոշոր գործարանի առաջիկա թողարկումը կնպաստի վերոհիշյալ շինվածքների արտադրության զարգաց-



ման: Բաց հանքերի առկայությունը երկաթուղու մոտերքում, տեղադրման շրջանների բնակելիությունը և հումքի կոմպլեքսային օգտագործումն աննշան կապիտալ-ներդրումներով ապահովում են այդ ուղղությամբ գործող ձեռնարկությունների արագ ընդլայնումը: Արտահանության համար առաջարկվող նյութերի արժեքը պակաս կլինի սպառման տեղերում դրանց փոխարեն օգտագործվող նյութերի արժեքից: Արտահանության մասշտաբները որոշվում են Անդրկովկասից այդ վայրերը տանող երկաթուղու թողարկման ունակությամբ և Սև ու Կասպից ծովերի ծովագնացության հնարավորություններով: Հանրապետության մեջ նախատեսվում է զարգացնել սպիտակ ու գունավոր ցեմենտների արտադրությունը, մարմարի հանույթն ու վերամշակումը:

Անտառանյութի, թղթի և փայտամշակման արդյունաբերությունը զարգանալու է կահույք, փայտանյութային և մանրաթելային սալիկներ, թղթե-խավաքարե շինվածքներ, դաշնամուր, զանազան ֆուրնիտուրա արտադրելու ուղղություններով: Հումք կծառայեն տեղական և բերովի անտառանյութը, դրանց մնացորդները, պլաստմասսերը և տեղական այլ նյութեր:

Ապակեղենի արդյունաբերության զարգացումը լիովին կբավարարի հանրապետության ապակե տարայի բոլոր պահանջմունքները: Լայնորեն կծավալվի բարձր կարգի ապակեղենի արտադրությունը Երևանիտ և կանագիտի բազայի վրա, որոնք ապակեղենի երկաթազուրկ հումքի նոր տեսակներ են համաշխարհային պրակտիկայի մեջ. մեզ մոտ ստացվում են նեֆելինային սիենիտների և պերլիտների քիմիական վերամշակման ժամանակ: Դա կլինի բյուրեղապակու, սորտային ամանեղենի, պարֆյումերային տարայի, ուլտրամանուշակագույն ճառագայթներ անցկացնող ապակեթերթերի, քիմիական լաբորատորիայի ամանեղենի, բժշկական սարքավորման և օպտիկայի արտադրության հումք:

Թեթև արդյունաբերության ստրուկտուրայի մեջ (հաշվի առնելով հումքային և այլ հնարավորությունները) կկրճատվի բամբակեղեն, բրդեղեն ու մետաքսյա գործվածքների տեսակարար կշիռը, կավելանա տրիկոտաժի, կարի արտադրության տեսակարար կշիռը: Մնացած ենթաճյուղերում ստրուկտուրային էական փոփոխություններ տեղի չեն ունենա: Տեքստիլ-տրիկոտաժի արտադրության մեջ կաճի սինթետիկ նյութերի, մասնավորապես Կիրովականի ացետատային մետաքսի կիրառումը: Այդ ճյուղերի զարգացմանը կնպաստի տեքստիլագործների, տրիկոտաժագործների և հատկապես կոշկակարների բարձրորակ կադրերի առկայությունը:

Նոր արտադրություններն զգալի չափով կտեղադրվեն հանրապետության արդյունաբերական տեսակետից պակաս զարգացած շրջաններում:

Հումքային ռեսուրսների սահմանափակությունը հարկադրում է էական փոփոխություններ մտցնել սննդարդյունաբերության արտադրության ստրուկտուրայի մեջ, որոնք կարելի է դասակարգել հետևյալ ձևով. առավել արագությամբ կաճի հանքային ջրերի արտադրությունը և դրանց լիցքը շշերում:

Գյուղատնտեսության մասնագիտացման շնորհիվ կավելանա գինու-կոնյակի, պահածոների, ծխախոտի, պարֆյումերային արտադրություններն այնպիսի մասշտաբներով, որոնք հաշվի են առնում լայն արտահանությունը հանրապետության սահմաններից դուրս: Այստեղ, արտադրանքի որակը պահպանելու նպատակով պահանջվում է գինին և կոնյակը լցնել գինու արտադրության տեղում, ծխախոտի հումքի վայրերում կավելացվի նաև գլանակ-

ների, սիգարեթների արտադրությունը: Զգալիորեն կաճի խորդենու և մյուս բուրավետ յուղերի վերամշակումը:

Հայկական ՍՍՀ արդյունաբերության բոլոր ճյուղերի մեջ առավել մեծ զարգացում նախատեսվում է այն ճյուղերի համար, որոնք ապահովված են տեղական հանքային հումքով (սև և գունավոր մետալուրգիա, շինանյութերի և ապակեղենի արդյունաբերություն) և աշխատանքային ռեսուրսներով (մեքենաշինություն): Իսկ գյուղատնտեսական հումքի և անտառային ռեսուրսների հետ կապված ճյուղերում նախատեսվում է պակասեցնել դրանց տեսակարար կշիռն արդյունաբերական արտադրության մեջ (թեթև, սննդի, փայտամշակման արդյունաբերություն):

Ելնելով Հայաստանի բնորոշ առանձնահատկություններից, գյուղատնտեսության արտադրության զարգացումը ստորին գոտիներում (ոռոգելի հողագործությամբ) ընթանալու է բարձր զարգացած խաղողագործության և ջերմասեր պտղաբուծության (դեղձ, ծիրան), խորդենու, մերձքաղաքային բանջարաբուծության, մասամբ կաթնատու-անասնապահության ուղղություններով: Վերին գոտիներում՝ անասնապահություն, պտղաբուծություն (խնձոր, տանձ և այլն), ծխախոտագործություն, կարտոֆիլաբուծություն: Նշանակալից կլինեն հացաբույսերի ցանքատարածությունները: Անասնաբուծության զարգացումն ապահովելու համար գյուղատնտեսական օգտագործվող տարածությունների մոտ 60 տոկոսը կլինի խոտհարք, նախրատափ և արոտավայր: 1968 թ. դադարեցվել է բամբակի մշակումը և ազատված հողերը կօգտագործվեն գյուղատնտեսական արժեքավոր կուլտուրաների մշակման համար:

Ամբողջ գյուղատնտեսության մեջ հողագործության տեսակարար կշիռը կավելանա, իսկ մեկ հեկտարի բերքատվությունն զգալիորեն կաճի (բնակչության թվի աճի համեմատությամբ), ապահովելով արտադրության զարգացման գրեթե կրկնակի տեմպ: Հեռանկարային ժամանակաշրջանում որոշ չափով կավելանան գյուղատնտեսական օգտագործելի տարածությունները, զգալի չափով կմեծանա ոռոգելի հողատարածությունը: Նման զարգացման դեպքում էական փոփոխություններ տեղի կունենան գյուղատնտեսական մթերքների արտադրության և սպառման բալանսում: Հանրապետությունը հացահատիկից բացի հողագործության բոլոր մթերքներով և ձվով լիովին կապահովի իր պահանջմունքները և զգալի չափով կավելացնի արտահանությունը (եղբայրական հանրապետությունները), մասնավորապես վաղահաս բանջարեղենի, կաթի տեղական ռեսուրսներով ապահովման գործակիցը որոշ չափով կբարելավվի, իսկ մսինը՝ կիջնի:

1970 թ. երկաթուղագծի երկարությունը Հայաստանում կհասնի 626 կիլոմետրի: Հեռանկարում ավարտվելու է Երևան-Աղստաֆա երկաթուղու շինարարությունը. Դիլիջանի վրայով այդ գիծը կմիացվի Կիրովականին. Սևանից, Շորժայի վրայով, երկաթգիծը կշարունակվի մինչև Բասարգեչար. կսկսվի Զանգեզուրի երկաթուղու (Ղափանից-Սիսիան) շինարարությունը և այլն: Դրանք հիմնականում կէլեկտրիֆիկացվեն:

Սակայն միայն այդ շինարարությունը չի լուծի Հայաստանի, ինչպես և Անդրկովկասի տրանսպորտի պրոբլեմը: Կովկասյան լեռնաշղթայում լեռնանցքային երկաթգիծ կառուցելով, անհրաժեշտ է ընդլայնել հյուսիսային ելքը:

Զգալի չափով կավելանա ամուր ծածկ ունեցող ավտոմոբիլային ճանապարհների երկարությունը. նախատեսվում է կառուցել ավտոստրադաներ, ավարտել Պուշկինի և Սևանի լեռնանցքների թունելների աշխատանքները, Երևանի հանգույցն ապահովել միառելս ճանապարհով և այլն: Ավելի կզարգանան օդային տրանսպորտն ու կապը:

Մյուս ճյուղերում առավել մեծ կապիտալ ներդրումներ կհատկացվեն բնակարանային շինարարությանը: Դա հնարավորություն կընձեռի զգալի չափով ավելացնելու բնակելի տարածության նորման քաղաքներում: Հարկ կլինի ոչ պակաս, քան երկու անգամ ավելացնել քաղաքային տրանսպորտի փոխադրումները և Երևանում կառուցել մետրոպոլիտեն: Զգալի չափով կավելանա ջրմուղ-կոյուղու, գազատար խողովակների երկարությունը, հյուրանոցների թողարկման կարողությունը, կենցաղսպասարկման օբյեկտների թիվը:

Առանձնապես մեծ չափով կաճեն կուրորտներն ու տուրիզմը:

Հանրակրթական դպրոցներում կապահովվի մեկ հերթ պարապմունք: Մոտ երկու անգամ կավելանա ուսուցիչների թիվը: Կավելանան գիտական հաստատությունները և կուլտուր-լուսավորական հիմնարկությունները:

Նյութական բարեկեցության աճի հետ միասին, զգալիորեն կընդլայնվի առևտուրը և հանրային սնունդը, հատկապես գյուղական վայրերում:

Արտադրամիջոցների առաջիկա զարգացումը կպահանջի վիթխարի կապիտալ ներդրումներ, բայց, իրականում, դրանց աճի տեմպը, ամբողջությամբ վերցրած, կսահմանափակվի նյութական արտադրության մեջ կատարվող ներդրումների հաշվին, ապահովելով ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի գերազանց աճը: Բացի դրանից, գյուղատնտեսության հաշվին կիջնի նյութական ոլորտի մեջ կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը, որտեղ արտադրության աճի տեմպը համեմատաբար սահմանափակ կլինի: Կապիտալ ծախսումների ստրուկտուրայի փոփոխման հետ միասին աննշան չափով կավելանա շինմոնտաժային աշխատանքների բաժինը:

Տեխնիկական պրոգրեսի իրագործմամբ արդյունաբերական արտադրության ստրուկտուրայի փոփոխումն ու ինտենսիվացումն առաջ կբերի աշխատանքի վճարման ֆոնդերի ավելացում և համապատասխանորեն նոր աշխատատեղ կազմակերպելու համար կապիտալ ներդրումների բարձրացում: Սակայն կապահովվի աշխատանքի արտադրողականության աճը և արտադրության արդյունավետությունը. ֆոնդային հատկացումները կավելանան, իսկ արտադրանքի աճի հաշվով ֆոնդային տարողությունը և տեսակարար կապիտալ ներդրումները կպակասեն:

Նյութական արտադրության գծով զարգացման արդյունավետությունը կորոշվի աշխատանքի արտադրողականության աճով, որը կպահպանվի բարձր մակարդակի վրա:

Հանրային արտադրության աճի ընդհանրացնող ցուցանիշն ազգային եկամուտն է: Դրա աճը հիմնականում տեղի կունենա նյութական արտադրության աշխատողների թվի ավելացմամբ, առավել ավելացնելով աշխատունակ անձանց թիվը: Ընդ որում, արտադրաուժերի զարգացման վերևում մատնացույց արված տեմպի ու համամասնությունների համաձայն, ազգային եկամուտը գլխավոր հեռանկարի երկրորդ կեսում կաճի ավելի բարձր տեմպով, քան այդ եղել է առաջին տասնամյակում:

ՎԵՐՄԻՇԵՎ Կ. Տ.
ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի արտադրաուժերի տեղաբաշխման բաժնի վարիչ

# ՍՈՎԽՈԶԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՄԱՐ

ԴԱՎԹՅԱՆ Գ. Վ.

Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

*Զարգացման ներկա էտապում, երբ մեր երկրում ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն առանձնահատուկ նշանակություն են տալիս սովխոզների արտադրական-տնտեսական գործունեության բարելավմանը:*

*Գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում տարեցտարի մեծանում է սովխոզների դերը: Հանրապետությունում վերջին տասնամյակի ընթացքում մեծ չափով ավելացել է սովխոզների քանակը: Այդ տեղի է ունեցել ինչպես տնտեսապես թույլ կոլտնտեսությունների բազայի, այնպես էլ նոր յուրացված հողերի վրա նոր սովխոզների ստեղծմամբ: Բնական է, որ սովխոզների քանակի ավելացումը և նրանց արտադրական-տնտեսական գործունեության որոշակի բարելավումը մեծապես նպաստել է գյուղատնտեսական արտադրության մեջ նրանց դերի բարձրացմանը: 1966 թ. տվյալներով սովխոզները օգտագործում են հանրապետության գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության 44,8 տոկոսը: Սովխոզներին և պետական մյուս ձեռնարկություններին բաժին է ընկնում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների ավելի քան 36 տոկոսը, խաղողի այգիների մեծ մասը:*

*Եթե 1950 թ. սովխոզային սեկտորին բաժին էր ընկնում ամբողջ խաղողի այգիների 13,1 տոկոսը, կոլտնտեսություններին՝ 75,5, իսկ բնակչության անձնական օժանդակ տնտեսություններին 11,5 տոկոս, ապա 1966 թ. այդ թվերը համապատասխանաբար կազմել են 50,5, 41,1 և 8,4 տոկոս: Բայց եթե բոլոր հասակի խաղողի այգիների տարածությամբ սովխոզները և պետական մյուս ձեռնարկությունները 1966 թ. գրավում էին առաջին տեղը, ապա բերքատու հասակի այգիների տարածությամբ նրանք ետ էին մնում կոլտնտեսություններից (44,4 տոկոս): Սա վկայում է, որ հանրապետությունում խաղողի այգիների ընդարձակումը գլխավորապես տեղի է ունենում սովխոզներում և պետական մյուս ձեռնարկություններում:*

*Հանրապետության հասարակական սեկտորի անասունների ընդհանուր գլխաքանակի մեջ զգալիորեն բարձրացել է սովխոզների ու պետական մյուս ձեռնարկությունների տեսակարար կշիռը: Այսպես, եթե 1951 թ. սովխոզներին և պետական մյուս ձեռնարկություններին բաժին էր ընկնում խոշոր եղջերավոր անասունների 1,8, խոզերի՝ 1,6, մանր եղջերավոր անասունների 8,3 տոկոսը, ապա 1967 թ. այն համապատասխանաբար կազմեց 40,7, 45,5 և 35,5 տոկոսը:*

*Սովխոզների քանակի ու նրանց արտադրության ծավալի ավելացումը զգալիորեն բարձրացրել է սովխոզների և պետական մյուս ձեռնարկությունների տեսակարար կշիռը բուսաբուծական և անասնաբուծական մթերքների արտադրության մեջ: 1966 թ. կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից արտադրված հացահատիկի 26, ծխախոտի՝ 32,2, կարտոֆիլի՝ 49,4, բանջարեղենի մոտ 30, պտուղների՝ 73,3, խաղողի՝ 34, կաթի՝ 42, տավարի միս (կենդանի քաշ)՝ 41, խոզի միս՝ 48,5 և ձվի՝ 55,7 տոկոսը բաժին էր ընկնում սովխոզներին ու պետական մյուս ձեռնարկություններին:*



*Բերված թվերը վկայում են, որ անասնաբուծական մթերքների արտադրության մեջ ավելի մեծ է սովխոզների բաժինը: Այդ է պատճառը, որ սովխոզների և պետական մյուս ձեռնարկությունների համախառն արտադրանքի ավելի քան 50 տոկոսը բաժին էր ընկնում անասնաբուծության ճյուղին:*

*Սովխոզների ապրանքայնության ավելի բարձր մակարդակով է պայմանավորված նրանց անհամեմատ մեծ տեսակարար կշիռը պետական մթերումների մեջ:*

Սովխոզային արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետության պետական մթերումների մեջ *(տոկոսներով)*

| Արտադրանքի տեսակը | Տարիները | | | |
|---|---|---|---|---|
| | 1960 | 1964 | 1965 | 1966 |
| Հացահատիկ | 2,0 | 42,1 | 71,0 | 67,8 |
| Ծխախոտ | 5,5 | 30,2 | 31,1 | 33,3 |
| Շաքարի ճակնդեղ | 12,1 | 12,8 | 14,0 | 12,4 |
| Կարտոֆիլ | 14,0 | 53,2 | 51,6 | 60,0 |
| Բանջարեղեն | 29,5 | 40,6 | 39,0 | 33,1 |
| Խաղող | 19,0 | 31,7 | 32,7 | 33,4 |
| Պտուղներ | 55,3 | 57,8 | 75,0 | 79,1 |
| Անասուն և թռչուն | 15,5 | 38,3 | 37,7 | 38,5 |
| Կաթ | 27,3 | 46,0 | 50,5 | 51,4 |
| Ձու | 24,2 | 41,0 | 40,7 | 50,6 |
| Բուրդ | 10,1 | 29,5 | 29,8 | 32,2 |

*Աղյուսակի տվյալներից երևում է, որ վերջին տարիների ընթացքում հացահատիկի, կարտոֆիլի, պտուղների, կաթի և ձվի պետական մթերումների մեջ սովխոզների տեսակարար կշիռը կազմում է 50—79 տոկոս:*

*Սովխոզների արտադրության հետագա զարգացումը, ապրանքային արտադրանքի ավելացումը տեղի կունենա արտադրության ճիշտ մասնագիտացման ու կենտրոնացման, հետևողական ինտենսիվացման ուղիով:*

*Վերջին տարիների ընթացքում զգալիորեն բարելավվել է սովխոզային արտադրության ինտենսիվացման պայմանները: Կապիտալ ներդրումների ավելացման շնորհիվ սովխոզները տարեցտարի ընդլայնում են իրենց հիմնական ֆոնդերը, դրանով ամրապնդում և զարգացնում նյութական բարիքների արտադրության տեխնիկական հիմքը: 1966 թ. հանրապետության սովխոզների հիմնական ֆոնդերը կազմում էին 253,8 միլիոն ռուբլի:*

*Հիմնական ֆոնդերի ավելացման հետ միասին բարելավվել է նրանց կառուցվածքը: Եթե 1960 թ. հանրապետության սովխոզներում կար 1.577 տրակտոր (15 ձիաուժի հաշվով), 148 հացահատիկային կոմբայն, ապա 1967 թ. այն համապատասխանաբար կազմեց 7655 և 474: 1967 թ. սովխոզներում կար 119 սիլոսահավաք կոմբայն, 3027 բեռնատար ավտոմեքենա, մոտ 8 հազար գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ. բոլոր սովխոզները էլեկտրիֆիկացված են:*

*Էներգետիկ հզորությունների ավելացումն իր հերթին նպաստել է արտադրության էներգահագեցվածության բարձրացմանը: 1967 թ. 100 հեկտար մշակովի հողատարածությանը ընկնում էր 286 ձիաուժ, իսկ մեկ աշխատողին 8,5 ձիաուժ էներգետիկ հզորություն:*

*Տարեցտարի ավելանում է մեկ հեկտար վարելահողի և բազմամյա տնկ-*

արկների հաշվով հողին տրվող պարարտանյութերի քանակը։ 1965 թ. մեկ հեկտարի հաշվով օգտագործվել է 180 կգ. հանքային պարարտանյութ, 1967 թ.՝ 240 կգ.։ Ավելանում են ոռոգվող հողատարածությունները, գյուղատնտեսական կուլտուրաների ցանքը լրիվ կատարում են շրջանացված սորտային սերմերով։ Այս բոլորը վկայում են սովխոզների արտադրության ինտենսիվացման մակարդակի բարձրացման գործոնների աստիճանական և նորմալ աճը։

Կոլտնտեսությունների համեմատությամբ, սովխոզները ունեն ավելի խոշոր արտադրություն։ Այսպես, եթե 1966 թ. հանրապետությունում, միջին հաշվով, մեկ կոլտնտեսությանը ընկնում էին հանրային ցանքեր՝ 463 հեկտար, խոշոր եղջերավոր անասուն՝ 493 գլուխ, այդ թվում կովեր՝ 195, խոզեր՝ 67, ոչխարներ և այծեր՝ 1686 գլուխ, ապա սովխոզներում այդ թվերը համապատասխանաբար կազմում էին 600, 794, 259, 119 և 2192։

Տնտեսությունների փորձը և վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ խոշոր սովխոզները (եթե այն օպտիմալ է) ավելի արդյունավետ են օգտագործում աշխատանքային և նյութադրամական ծախսումները, հետևապես ապահովում են արտադրական-տնտեսական ավելի բարձր ցուցանիշներ։

Ներկայումս մեր հանրապետության սովխոզների մի մասում շահութաբերության ձեռք բերված մակարդակը հնարավորություն է տալիս նրանց աստիճանաբար փոխադրել լրիվ տնտեսական հաշվարկի։ Բավական է նշել, որ 1967 թ. 118 սովխոզ տնտեսական տարին փակել են 10 միլիոն 130 հազար ռուբլու օգուտով։ Նրանցից շատերի շահութաբերության մակարդակը հասել է 50—70 տոկոսի և նույնիսկ ավելի բարձր։ Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի «Նաիրի» սովխոզի շահութաբերության մակարդակը հասել է 173, Մայիսյանինը՝ 132, Ձերժինսկու անվան սովխոզինը՝ 120, Խանջյանի անվան սովխոզինը՝ 91,5, Արաքսինը՝ 92, Նոյեմբերյանի շրջանի Ջեյթունի սովխոզինը՝ 164, Լալվարինը՝ 127, Հաղթանակինը՝ 138 տոկոսի։

Հանրապետությունում արդեն կան ոչ քիչ թվով առաջավոր սովխոզներ, որոնք իրենց արտադրական-տնտեսական գործունեությամբ և ձեռք բերած հաջողություններով կարող են օրինակ ծառայել մյուսների համար։ Այդպիսի առաջավոր տնտեսություններից է Հոկտեմբերյանի շրջանի «Նաիրի» սովխոզը։ Այստեղ աշխատանքը գիտականորեն կազմակերպելու, հողամշակության կուլտուրան բարելավելու, գյուղատնտեսական տեխնիկան, հանքային պարարտանյութերն ու ոռոգման ցանցը արդյունավետ օգտագործելու և աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու շնորհիվ՝ զգալի չափով ավելացել է բուսաբուծության և, առանձնապես, խաղողի արտադրանքը։ Բերքատվության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ սովխոզը դարձել է շահութաբեր։ Բավական է ասել, որ սովխոզն անցած տնտեսական տարին փակեց 1 միլիոն 400 հազար ռուբլու օգուտով։

Անցյալ տարին օգուտներով են փակել Գորիսի, Ղափանի, Մեղրու, Նոյեմբերյանի, Շամշադինի շրջանի բոլոր սովխոզները։ Շամշադինի շրջանի սովխոզները շահույթների պլանը կատարեցին 155, Կալինինոյի շրջանինը՝ 325, թռչնարդյունաբերության գլխավոր վարչության տնտեսությունները՝ 346, Ղափանի շրջանի սովխոզներինը՝ 60,9 տոկոսով։

Նոյեմբերյանի շրջանի սովխոզների օգուտները հասան շուրջ 2,2 մի-



լիոն, իսկ Հոկտեմբերյանի շրջանի սովխոզներինը՝ ավելի քան 3 միլիոն ռուբլու։ Սակայն, հանրապետության սովխոզների տնտեսական գործունեության հիմնական ցուցանիշների վերլուծությունից պարզվում է, որ դեռևս ցածր է սովխոզային արտադրության շահութաբերության աստիճանը, որովհետև ցածր է աշխատանքի արտադրողականությունը, հետևապես բարձր է արտադրվող արտադրանքի ինքնարժեքը։

### Արտադրանքի մեկ ցենտների վրա կատարված աշխատանքային ուղղակի ծախսումները սովխոզներում *(մարդ օր)*

| Արտադրանքը | 1963 | 1964 | 1965 | 1966 | 1967 |
|---|---|---|---|---|---|
| Հացահատիկ (առանց եգիպտացորենի) | 1,1 | 1,0 | 1,2 | 0,9 | 0,9 |
| Շաքարի ճակնդեղ | 0,5 | 0,7 | 0,5 | 0,6 | 0,5 |
| Կարտոֆիլ | 2,2 | 1,3 | 1,3 | 1,6 | 1.3 |
| Բանջարեղեն | 1,5 | 1,5 | 1,1 | 1,3 | 1,3 |
| Կաթ | 2,1 | 2,4 | 2,4 | 2,3 | 2,3 |
| Խոշոր եղջերավոր անասունների քաշաճ | 12,5 | 12,3 | 13,6 | 13,7 | 12,5 |
| Խոզերի քաշաճ | 12,7 | 13,7 | 14,9 | 14,5 | 13,2 |
| Բուրդ | 54,7 | 64,5 | 67,1 | 61,0 | 64.0 |

Աղյուսակից երևում է, որ վերջին տարիների ընթացքում մեկ միավոր արտադրանքի վրա կատարված աշխատանքային ծախսումների մակարդակի մեջ որոշ փոփոխություններ են տեղի ունեցել, սակայն արտադրանքի մի մասի, մասնավորապես անասնաբուծական մթերքների արտադրության վրա կատարված աշխատանքային ծախսումները դեռևս մնում են բարձր։ Բազմաթիվ սովխոզներ մեկ ցենտներ արտադրանքի արտադրության վրա ավելի շատ աշխատանքային ծախսումներ են կատարում, քան հանրապետության սովխոզների ու պետական մյուս ձեռնարկությունների միջինն է։ Այսպես, 1966 թ. կաթ արտադրող սովխոզների ու պետական ձեռնարկությունների 20 տոկոսը 1 ց. կաթի վրա ծախսել են 3 և ավելի մարդ-օր, իսկ տավարի միս արտադրող սովխոզների 35 տոկոսը խոշոր եղջերավոր անասունների 1 ց. քաշաճի վրա ծախսել են 15—20 և ավելի մարդ-օր։

Աշխատանքային ծախսումների բարձր մակարդակն առաջին հերթին բացատրվում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության, ինչպես նաև աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակով։ Այսպես, 1966 թ. տվյալներով հանրապետության սովխոզներում կարտոֆիլի տնկման ու միջշարային տարածությունների մշակության աշխատանքների 23—24 տոկոսն է մեքենայացված։ Սիլոսային կուլտուրաների բերքահավաքը մեքենայացված է 35, իսկ խոտհունձը՝ 25 տոկոսով։ Խիստ անբավարար է մեքենայացված անասնապահության աշխատատար պրոցեսները. կովերի մեքենայական կիթը կազմում է ընդհանուր գլխաքանակի 2,8 տոկոսը, խոշոր եղջերավոր անասունների, խոզերի և թռչունների մեքենայացված ջրամատակարարումը համապատասխանաբար 11,6, 1,9 և 54,7 տոկոսով։ Խոշոր եղջերավոր անասունների կերի մատակարարումը մեքենայացված է 4,0, իսկ կովանոցներից գոմաղբի հեռացումը՝ 13,7 տոկոսով։

Այդ է պատճառը, որ կատարվում է մեծ քանակությամբ ձեռքի աշխատանք, ուստի պատահական չէ, որ վերջին տարիների ընթացքում չի ավելացել մեկ աշխատողի կողմից սպասարկվող անասունների գլխաքանակը,

չեն իջել մեկ միավոր արտադրանքի (չհաշված բուրդը) վարձատրության համար կատարվող ծախսումները։

Սովխոզներում արտադրության մեքենայացման ցածր աստիճանի պատճառը ոչ միայն տեխնիկայի պակասն է, համապատասխան մեքենաների ու գործիքների բացակայությունը, այլև առկա մեքենաների ու տեղակայված սարքավորումների ոչ արդյունավետ օգտագործումը։ Դրանով պետք է բացատրել, որ տարեցտարի նվազում է տրակտորների արտադրանքը։ Այսպես, 15 ձիաուժի վերածած մեկ տրակտորի տարեկան արտադրանքը 1967 թ. կազմում էր 179 հեկտար փափուկ վար, 1964 թ. 192 հեկտարի փոխարեն։

Ցածր արտադրողականությամբ են օգտագործվում նաև հացահատիկային կոմբայնները, որոնց սեզոնային արտադրանքը 1967 թվականին կազմում էր 109 հեկտար, 1964 թվականի 130 հեկտարի դիմաց։ Հացահատիկային կոմբայնները օգտագործվել են իրենց հնարավորությունների գրեթե կիսով չափ։ Չի կազմակերպվում երկհերթ և գիշերային աշխատանք, օրվա ընթացքում զանազան պատճառներով կոմբայնները շատ պարապուրդներ են տալիս։ Կոմբայնների օրական միջին արտադրանքը 1967 թ. հանրապետության սովխոզներում կազմել է 4,2 հեկտար, նորմալ աշխատանքի 8—12 հեկտարի դիմաց։

Պատշաճ ուշադրություն չի հատկացվում գյուղատնտեսական տեխնիկայի խնամքի, նորոգման ու պահպանման ճիշտ կազմակերպման վրա։ Չկան մեքենաները ձմռանը պահպանելու համար անհրաժեշտ ծածկեր, աշխատանքներն ավարտվելուց հետո նրանք մնում են բաց երկնքի տակ, երբեմն առանց ցեխից մաքրելու և յուղելու։

Շատ սովխոզներ, ինչպես, օրինակ, Գուգարքի շրջանի Մեղրուտի և Ծղանովի սովխոզները, բերքահավաքից հետո չեն հանում կոմբայնի շղթաները, փոկերը, նույնիսկ դանակներն ու պահեստավորման ենթակա մյուս մասերը և հանգույցները։ Տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների նորոգումները կատարվում են անբավարար։ Դրա պատճառներից մեկը տեխնիկայի օգտագործման ու պահպանման վատ վիճակն է, որի հետևանքով այն ժամանակից շուտ է մաշվում ու արհեստանոց տարվում։ Հետևապես, մի կողմից, նորոգման աշխատանքների ծավալի արհեստական մեծացումը, մյուս կողմից, նորոգման բազայի ու պահեստամասերի անբավարար լինելը, խիստ բացասաբար են ազդում նորոգման որակի վրա։

Քիչ չեն դեպքերը, երբ «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքների արհեստանոցներում նորոգման ենթարկված տրակտորները, կոմբայնները և մյուս մեքենաները չնչին ծավալի աշխատանք կատարելուց խափանվում են, չնայած տնտեսությունները նորոգման համար ծախսում են հսկայական գումարներ։ Դա հետևանք է նրան, որ «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքների ղեկավարները չեն պայքարում իրենց կատարած նորոգումների որակի համար, շատ դեպքերում նորոգված մեքենաներին չեն տալիս երաշխավորագրեր, չեն կապարակնքում հանգույցներն ու ագրեգատները։

Գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման համար պահանջվում է առանձնակի ուշադրություն նվիրել ինչպես նրա խնամքի, նորոգման ու պահպանման բարելավման, այնպես էլ բոլոր տեսակի մեքենաների ծանրաբեռնվածության բարձրացման վրա, պայմաններ ստեղծելով



մեքենայացված աշխատանքների և արտադրանքի միավորի ինքնարժեքի
իջեցման համար։ Այդ նպատակով պահանջվում է, որ յուրաքանչյուր տնտե-
սություն (արտադրական-տնտեսական կոնկրետ պայմաններից ելնելով)
մշակի տեխնիկայի օգտագործման միջոցառումների սիստեմ, որն ապահովի
հերթափոխային և սեզոնային նորմաների կատարումը։

Սովխոզներում աշխատանքի արտադրողականության բարձրացման և
մեկ միավոր արտադրանքի վրա կատարվող աշխատանքային ծախսումների
իջեցման գործում վճռական նշանակություն ունի բանվորների և ծառայող-
ների որակավորումն ու նյութական շահագրգռվածության բարձրացումը։
Հանրապետության սովխոզներում ու պետական մյուս ձեռնարկություն-
ներում 1966 թ. աշխատել են 79,3 հազար մարդ, այդ թվում՝ 71,4 հազար
բանվոր, 2,1 հազար ինժեներա-տեխնիկական աշխատողներ և 2,0 հազար
ծառայողներ։ Սովխոզների բանվորների կազմում կար 6,2 հազար տրակտո-
րիստ, կոմբայնավար և վարորդ։ Դա նշանակում է, որ սովխոզների յուրա-
քանչյուր 11 աշխատողից մեկը մեխանիզատոր է։ Ներկայումս միջին հաշ-
վով յուրաքանչյուր սովխոզում աշխատում է ավելի քան 14 բարձրագույն և
միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետ։ Սովխոզնե-
րում մշտական կադրերի ստեղծումը և բանվորական ուժի հոսունության
կրճատումը, աշխատողների որակավորման բարձրացումը, արտադրության
զարգացման գործում նրանց նյութական շահագրգռվածության ապահովումը
կարևոր միջոց են արտադրության զարգացման համար։
Հայտնի է, որ սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվածու-
թյունն անմիջականորեն ի հայտ է գալիս աշխատանքի վարձատրության
սիստեմի միջոցով։ 1960 թ. սկսած մի շարք միջոցառումներ իրականացվեց
բանվորների, մեխանիզատորների, ղեկավար աշխատողների ու մասնագետ-
ների աշխատանքի վարձատրությունը բարելավելու ուղղությամբ։ Բարե-
լավվել է բոլոր աշխատանքների տարիֆիկացիան։ Ձեռքի և կենդանի քաշող
ուժի միջոցով կատարվող աշխատանքների տարիֆային դրույքները (հատ-
կապես 1-ին, 2-րդ և 3-րդ կարգինը) նշանակալիորեն ավելացվեցին։
Արտադրանքն ավելացնելու համար, նյութապես խրախուսելու նկատա-
ռումով, բանվորների տարիֆային դրույքները բարձրացվեցին՝ բուսաբուծու-
թյան մեջ 25 տոկոսով, իսկ անասնապահության մեջ՝ 15 տոկոսով։
1965 թ. հոկտեմբերից սկսած մեր հանրապետության սովխոզների
տրակտորիստ-մեքենավարների վարձատրությունը շերտավորվել է ըստ շըր-
ջանների 3 խմբերի, մինչդեռ մինչ այդ մեխանիզատորները վարձատրվում
էին առաջին (ցածր) խմբի համար սահմանված գնահատումներով։
Ձեռնարկված միջոցառումների արդյունք է, որ հանրապետության սով-
խոզներում, միջին հաշվով, մեկ աշխատողի տարեկան աշխատավարձը
1959—1961 թթ. միջինի համեմատությամբ, 1967 թ. ավելացավ 48 տոկոսով։
Սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձ-
րացնելու գործում կարևոր նշանակություն ունի լրացուցիչ վարձատրությու-
նը և պարգևատրումները։ Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման համար աշխատողների պարգևատրումը «մի
ձեռնարկում է, որ պատկանում է սոցիալիստական շինարարության իրենց
տիպով ամենակարևոր ձեռնարկումների թվին» (Երկեր, հատ. 32, էջ 504)։
Վերջին տարիների ընթացքում զգալի չափով ավելացել է լրացուցիչ
վարձատրության նպատակով ծախսվող գումարը։ Այսպես, եթե 1964 թ. այդ

նպատակով ծախսվել է 290 հազար ռուբլի կամ աշխատավարձի ֆոնդի 0,7 տոկոսի չափով, ապա 1967 թ. այն կազմեց 2765 հազար ռուբլի կամ աշխատավարձի ֆոնդի 4,3 տոկոսը: Չնայած դրան, աշխատավարձի ֆոնդի մեջ դեռևս ցածր է լրացուցիչ վարձատրության տեսակարար կշիռը, այսինքն աշխատավարձի աննշան մասն է, որ անմիջապես կապված է վերջնական արդյունքների հետ, իսկ դա չի կարող հարկ եղած չափով ապահովել վերջնական արդյունքների նկատմամբ աշխատողների նյութական բարձր շահագրգռվածությունը:

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման համեմատ էլ ավելի կարևոր նշանակություն է ստանում արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, քանի որ միավոր տարածության հաշվով գնալով ավելի ու ավելի մեծ ծախսումներ են կատարվում: Սովխոզների գլխավոր խնդիրն այն է, որ արտադրության ինտենսիվացմանն ուղղված բոլոր ձեռնարկումները, մասնավորապես աշխատանքային ու նյութա-դրամական ծախսումները առավել արդյունավետությամբ օգտագործելու միջոցով ապահովեն, մի կողմից, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացումը, իսկ մյուս կողմից, արտադրանքի միավորի ինքնարժեքի իջեցումը:

Սովխոզների արտադրանքի միավորի վրա կատարված ծախսումների վերլուծությունը ցույց է տալիս, որ դեռևս չափազանց բարձր է արտադրանքի հիմնական տեսակների ինքնարժեքը: Այդ են ցույց տալիս ներքոհիշյալ աղյուսակում բերված թվերը.

Արտադրանքի մեկ ցենտների ինքնարժեքը սովխոզներում *(ռուբ.)*

| Արտադրանքը | 1963 | 1964 | 1965 | 1966 | 1967 |
|---|---|---|---|---|---|
| Հացահատիկ | 8,4 | 9,15 | 8,7 | 7,9 | 7,6 |
| Շաքարի ճակնդեղ | 2,24 | 2,46 | 3,0 | 3,9 | 3,5 |
| Ծխախոտ | 152,3 | 113,7 | 137,4 | 159,4 | 133,1 |
| Կարտոֆիլ | 12,9 | 9,0 | 9,4 | 10,9 | 10,1 |
| Բանջարեղեն | 7,5 | 7,3 | 7,8 | 8,6 | 7,2 |
| Բոստանային | 4,7 | 6,1 | 7,0 | 7,7 | 14,1 |
| Խաղող | 28,6 | 25,3 | 22,5 | 22,2 | 25,2 |
| Պտուղներ | | | | | |
| Կորիզավորներ | 10,4 | 10,2 | 8,7 | 12,0 | 8,5 |
| Հնդավորներ | 16,7 | 13,9 | 12,9 | 14,1 | 12,8 |
| Կաթ | 16,2 | 16,8 | 17,6 | 17,9 | 18,5 |
| Խոշոր եղջերավոր անասունների քաշաճ | 101,5 | 106,5 | 120,7 | 128,0 | 126,0 |
| Ոչխարի քաշաճ | 64,9 | 75,4 | 82,2 | 83,0 | 92,4 |
| Բուրդ | 29,6 | 38,1 | 429,6 | 413 | 444,7 |
| Ձու (հազ. հատ) | 106,5 | 115,8 | 108,0 | 91,6 | 79,3 |

Բերված տվյալներից երևում է, որ 1967 թ., 1963—1966 թթ. համեմատությամբ, հացահատիկի, ծխախոտի, կարտոֆիլի, բանջարեղենի և պտուղների ինքնարժեքը զգալիորեն իջել է: Դա հանդիսանում է կարևոր նվաճում, երբ հաշվի առնենք, որ նախորդ տարիներին արտադրանքի այդ տեսակների ինքնարժեքը բավականին բարձր էր:

Անասնաբուծական մթերքների, մասնավորապես մսի և կաթի ինքնարժեքը դեռևս բարձր է: Այդ առաջին հերթին հետևանք է այն բանի, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. հոկտեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ



ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, որ «Ֆերմաներում պահվում են մեծ քանակությամբ ոչ ցեղային անասուններ ու թռչուններ, վատ են օգտագործվում մսացու տավարաբուծության և ոչխարաբուծության հնարավորությունները», ցածր է մեքենայացման մակարդակը:

Արհեստական սերմնավորումը պատշաճ հիմքերի վրա չդնելու հետեվանքով Ալավերդու շրջանի Թումանյանի կաթնաանասնապահական սովխոզում անցյալ տարի կովերի ստերջությունը կազմել է 27, մաքիներինը՝ 37 տոկոս: Միայն այդ պատճառով անասնապահական ֆերմաները կորցրել են 75 հորթ և 715 գառ: Անասունների մայրական կազմի ստերջության վերացումը հանդիսանում է ինչպես անասունների գլխաքանակի, այնպես էլ մթերքների արտադրության ավելացման կարևոր ռեզերվ:

Կաթի և մսի արտադրության ավելացմանը, հետևապես ինքնարժեքի իջեցմանը, խոչընդոտում է նաև անասնահոտում մայրական կազմի ցածր տեսակարար կշիռը: Վերջին տարիներում հանրապետության սովխոզներում կովերի տեսակարար կշիռը նախիրում չի գերազանցում 32 տոկոսից, իսկ Ղափանի, Թալինի և Կրասնոսելսկու շրջաններում այն կազմում է 22—28 տոկոս: Ավելին, որոշ շրջաններում նախիրում կովերի տեսակարար կշիռը վերջին տարիների ընթացքում իջել է: Այսպես, օրինակ, Ղուկասյանի շրջանի սովխոզներում այն 1967 թ. կազմել է 26 տոկոս, 1965 թ.՝ 35 և 1966 թ.՝ 32 տոկոսի փոխարեն: Նախիրում կովերի գլխաքանակի ավելացումը հանդիսանում է ընդլայնված վերարտադրության կարևորագույն նախապայմանը: Կովերի տեսակարար կշիռը հնարավոր է բարձրացնել, եթե անհրաժեշտ ուշադրություն նվիրվի երինջների աճեցմանն ու պահպանմանը:

Ոչխարների ընդհանուր գլխաքանակի մեջ ցածր է նաև մաքիների տեսակարար կշիռը: Հանրապետության սովխոզներում այն կազմում է 57 տոկոս:

Կալինինոյի, Ղուկասյանի, Հոկտեմբերյանի, Սպիտակի, Սիսիանի շըրջանների սովխոզներում անասնաբուծական աշխատատար պրոցեսները մեքենայացնելու, անասունների խնամքը բարելավելու, անասնապահների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու շնորհիվ, անցյալ տարիների հետ համեմատած, զգալիորեն իջել է կաթի արտադրության ինքնարժեքը, որի շնորհիվ արտադրության այդ ճյուղից շահույթ են ստացել: Սակայն այդ չենք կարող ասել մի շարք ուրիշ շրջանների մասին: Այսպես, եթե 1966 թ. հանրապետության սովխոզներում, միջին հաշվով, 1 ց. կաթի ինքնարժեքը կազմել է 17,9 ռ., ապա Ազիզբեկովի, Անիի, Ապարանի շրջաններում այն կազմում էր 20—24,4 ռ.: Կաթի ինքնարժեքի իջեցման համար կան ռեալ հնարավորություններ: Կովերի ցեղական կազմի բարելավման, ստերջության վերացման, ընդհանուր գլխաքանակի մեջ մայրական կազմի տեսակարար կշռի ավելացման հետ միասին, առանձնակի ուշադրություն պետք է դարձնել ներֆերմային աշխատատար պրոցեսների մեքենայացման վրա: Ջրամատակարարման, կերի մշակման, մատուցման, գոմաղբի հեռացման ու կթի մեքենայացման միջոցով 5—6 անգամ կկրճատվեն աշխատանքային ծախսումները, հետևապես կիջնի ինքնարժեքը:

Նոր գների (1965 թ.) պայմաններում հանրապետության բոլոր սովխոզների մսի արտադրությունը եղել է շահութաբեր: Նույն բանը չի կարելի ասել կաթի վերաբերյալ: Բացի Հոկտեմբերյանի, Ղուկասյանի, Կալինինոյի, Սպիտակի և Սիսիանի շրջաններից, մնացած բոլոր շրջանների սովխոզներում

կաթի արտադրությունը եղել է վնասաբեր և պետական հանձնման գինն արտադրության ծախսերը փոխհատուցել է 87 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների փաստացի ինքնարժեքի վերլուծությունից երևում է, որ ծախսումների մեջ մեծ տեսակարար կշիռ ունեն աշխատավարձը, սերմերի և կերի ինքնարժեքը, հիմնական միջոցների ընթացիկ նորոգման և վերադիր ծախսերը։ Կերի և սերմերի բարձր ինքնարժեքը նույնպես աշխատանքային մեծ ծախսումների հետևանք է։ Ուստի սովխոզների տնտեսական ղեկավարները և կուսակցական կազմակերպությունները հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացնեն աշխատանքային ծախսումների կրճատման վրա։ Աշխատանքային ծախսումները հատկապես մեծ տեսակարար կշիռ ունեն այն ճյուղերում, որտեղ ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։ Հետևապես, արտադրանքի ինքնարժեքի իջեցման գլխավոր ուղին արտադրական պրոցեսների համակողմանի մեքենայացումն է։ Դա հնարավորություն կտա նվազեցնել կենդանի աշխատանքի ծախսումները, գյուղատնտեսական աշխատանքները կատարել ագրոտեխնիկական օպտիմալ ժամկետներում, հետևաբար, ավելացնել մթերքների արտադրությունը, նվազագույնի հասցնել բերքահավաքի ժամանակ առաջացող կորուստները։

Գաղտնիք չէ, որ հաճախ շատ սովխոզներում աշխատանքը վատ կազմակերպելու պատճառով չնչին բերք են ստանում, որի հետևանքով արտադրանքի ինքնարժեքը բարձրանում է։ Ուստի արտադրանքի ավելացման և նրա ինքնարժեքի իջեցման ուղիներից մեկն էլ երկրագործության և անասնապահության վարման կուլտուրայի բարձրացումն է։

Անասնաբուծական մթերքների արտադրության շահութաբերության մակարդակի բարձրացման համար սովխոզներն անհրաժեշտ ուշադրություն պետք է դարձնեն արտադրանքի որակի բարելավմանը։ Մսի, կաթի, բրդի և կաշեհումքի ցածր որակի պատճառով ապրանքային տեսակետից իջնում է իրացման գինը, որն իր հերթին, բացասաբար է ազդում շահութաբերության վրա։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դեռևս ցածր է սովխոզների կողմից արտադրած մսի որակը։ Այսպես, օրինակ, 1967 թ. պետությանը հանձնած տավարի մսի միայն 10 տոկոսն է եղել բարձր գիրության, 66,0 տոկոսը եղել է միջակ, 21,0 տոկոսը՝ միջակից ցածր, իսկ 3,0 տոկոսը՝ նիհար գիրության։ Ղուկասյանի, Շամշադինի, Թալինի, Արարատի, Աշտարակի և Արտաշատի շրջաններում պետությանը հանձնված տավարի մսի 37—46 տոկոսը որակավորվել է միջակից ցածր։ 11 շրջաններում իրացված մսի միայն 5 տոկոսն է եղել բարձր գիրության։ Շամշադինի շրջանը բարձր գիրության տավարի միս չի հանձնել, իսկ Ալավերդու և Բասարգեչարի շրջաններում այն կազմել է մինչև 1 տոկոս։

Եթե սովխոզները ամբողջ միսը հանձնեին թեկուզ միջակ գիրության, ապա լրացուցիչ կստանային մոտ 1,6 միլիոն ռուբլի, կամ իրացված մսի արժեքի 14 տոկոսը։

Գյուղատնտեսական մթերքների ու հումքի որակի բարձրացումը լրացուցիչ մեծ օգուտներ կբերի ոչ միայն սովխոզներին, այլև հումք վերամշակող ձեռնարկություններին։



Արտադրության ճիշտ կազմակերպման, տեխնոլոգիայի կատարելագործման և ինտենսիվացման մակարդակի բարձրացման համար նախատեսված միջոցառումների հետևողական իրականացման, արտադրության մասնագիտացման ու կենտրոնացման, արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման շնորհիվ սովխոզները վճռականապես կբարելավեն իրենց արտադրական-տնտեսական գործունեության ցուցանիշներն այն հաշվով, որ ապահովեն արտադրության շահութաբերության բարձր մակարդակ։

ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս կայացած պլենումը քննարկելով գյուղատնտեսության զարգացման ընթացքը, կոնկրետ միջոցառումներ նշեց նրա հետագա առաջընթացի համար։ Նշված միջոցառումները կոլտնտեսությունների հետ հավասարապես վերաբերում են նաև սովխոզներին, որոնք տալիս են երկրի գյուղատնտեսական արտադրանքի զգալի մասը։ Այստեղից էլ գյուղական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը պետք է ուղղված լինի՝ պայքարելու սովխոզների դաշտերի բերքատվության և անասնաբուծության բարձր մթերատվության, նյութատեխնիկական առաջադիմության և աշխատանքի բարձր արտադրողականության համար։

## ԳՅՈՒՂԻ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՎԵՐԱԶԻՆՈՒՄԸ

ԽԱՉԱՏՐՅԱՆ Ի. Ղ.
Դոցենտ

Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման մեջ կարևոր դեր է պատկանում գյուղատնտեսությանը, որն էապես նպաստում է ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի աճին ու աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացմանը։ Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունն իր առաջնահերթ խնդիրներից մեկը համարում է՝ հզոր արդյունաբերության կողքին ունենալ բազմակողմանի զարգացած գյուղատնտեսություն, որն ի վիճակի լինի արտադրելու այնքան պարեն և գյուղատնտեսական հումք, որքան անհրաժեշտ է բնակչության լրիվ ապահովման և պետության մյուս պահանջմունքների բավարարման համար։

Ժամանակակից գյուղատնտեսությունն անհնարին է արագ թափով առաջ մղել առանց նրա նյութական բազայի ամրապնդման և տեխնիկական վերազինման։ Դեռևս 1921 թ. Վ. Ի. Լենինը նշում էր, որ մանր հողագործի հոգեբանությունը վերափոխել, գյուղատնտեսությունն արագ զարգացնել «...կարող է միայն նյութական բազան, տեխնիկան, տրակտորների ու մեքենաների կիրառումը հողագործության մեջ մասսայական մասշտաբով, էլեկտրիֆիկացիան մասսայական մասշտաբով։ Ահա ինչը արմատից ու հսկայական արագությամբ կվերափոխեր մանր հողագործին» (Երկեր, հ. 32, էջ 266)։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն իրագործելով Լենինի պատգամը, հսկայական միջոցներ են հատկացնում մեր երկրի գյուղատնտեսությունը հագեցնելու նորագույն տեխնիկայով ու առաջնակարգ մեքենաներով, էլեկտրիֆիկացնելու արտադրության բազմաթիվ պրոցեսները։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է զգալիորեն

ուժեղացնել գյուղատնտեսության նյութատեխնիկական զինվածությունը, մոտ 2 անգամ ավելացնել պետական կապիտալ ներդրումները, ընդլայնել հանքային պարարտանյութերի մատակարարումները, իրագործել մելիորատիվ աշխատանքների լայն ծրագիր և հետևողականորեն ինտենսիվացնել գյուղատնտեսական արտադրությունը։

Սովետական Միության գյուղատնտեսության ինտենսիվացման համար կուսակցության ու կառավարության մշակած և իրականացվող միջոցառումների մեջ մեծ տեղ է տրվում արտադրության համակողմանի մեքենայացմանն ու էլեկտրիֆիկացմանը։ Դա կարևոր է ո՛չ միայն գյուղատնտեսության աշխատողների ձեռքի ծանր աշխատանքը թեթևացնելու, այլև արտադրողականությունն զգալի չափով բարձրացնելու և ցածր ինքնարժեքով շատ հացահատիկ, հումք ու մթերքներ ստանալու համար։ Այսպես, մասնագետների հաշվարկումներով պարզվել է, որ հացահատիկի արտադրության առավելագույն մեքենայացման դեպքում մեկ միավոր արտադրանքի ստացման համար կատարվող աշխատանքային ծախսումները կրճատվում են մոտ 5 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 12, խաղողինը՝ 1,6, բազմամյա խոտաբույսերի բերքահավաքինը՝ 2,6 անգամ և այլն։

Աշխատանքները մեքենայացնելու լավ օրինակ է ցույց տալիս Ալավերդու շրջանի Օձունի սովխոզը։ Այստեղ լրիվ մեքենայացված են կարտոֆիլի ցանքը, մշակությունն ու բերքահավաքը։ Սովխոզում ծխախոտի պլանտացիաները 1966—1967 թթ. մեքենայով մշակելիս մեկ հեկտարի վրա ծախսել են ընդամենը 0,22 մարդ—օր, մինչդեռ նախկինում (ձեռքով) պահանջվում էր 20 մարդ—օր։ Օձունի սովխոզի առաջավոր փորձը դեռևս չի արմատավորվել Ալավերդու և մյուս շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում։

1967 թ. Կամոյի շրջանի Բատիկյանի անվան սովխոզում, որտեղ կարտոֆիլի ցանքը, մշակությունը, բերքահավաքը համակողմանի մեքենայացված էր, ստացված կարտոֆիլի յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը կազմեց 5 ռուբլի, իսկ Սարուխանի սովխոզում, որտեղ ամբողջ աշխատանքը կատարվել էր ձեռքով՝ ինքնարժեքը 10 ռուբլի էր։

Սովետական գյուղի կոոպերատիվ պլանը մշակելիս, Վ. Ի. Լենինը երազում էր սոցիալիստական դաշտերում տեսնել 100 հազար տրակտոր։ Դեռևս 1966 թ. մեր երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում էին ավելի քան 1700 հազար (15 ձիաուժանոցի հաշվով՝ 3 միլիոն 233 հազար) տրակտոր, 531 հազար հացահատիկային կոմբայն, մեկ միլիոնից ավելի բեռնատար ավտոմեքենա և ժամանակակից այլ տեխնիկա։

Միայն 1966—1967 թթ. երկրի գյուղատնտեսությունն ստացել է 563 հազար տրակտոր, 252 հազար բեռնատար ավտոմեքենա, 182 հազար հացահատիկային, 28 հազար սիլոսի, մոտ 11 հազար կարտոֆիլահավաք, 21 հազար ճակնդեղահավաք կոմբայն, 152 հազար շարահնձիչ և գյուղատնտեսական շատ այլ մեքենաներ ու սարքավորումներ։

Հայաստանում 1956—1967 թթ. հսկայական կապիտալ միջոցներ են հատկացվել գյուղատնտեսական նոր տեխնիկա ձեռք բերելու համար, որի շնորհիվ կոլտնտեսությունների ու սովխոզների տրակտորային պարկի հզորությունը մեծացել է 2,7, կոմբայններինը՝ 2,2, ավտոմոբիլայինը՝ 2,5 անգամ և այլն։ Աճել է նաև գյուղատնտեսական մյուս մեքենաների ու սարքավորումների քանակը։ Ութերորդ հնգամյակի միայն առաջին երկու տարում Հայաստանի



կոլտնտեսություններն ու սովխոզները ստացել են տարբեր մակնիշների 3015 տրակտոր (ֆիզիկական միավոր), 540 հացահատիկի կոմբայն, 740 շարքացան, 174 բուլդոզեր, 193 էքսկավատոր, 1890 բեռնատար ավտոմեքենա (բացի մասնագիտացված մեքենաներից և գյուղտրանսի ստացածից)։

Մեքենայացված է վարի 99,7, հացահատիկային կուլտուրաների ցանքի՝ 98, բերքահավաքի՝ 80, կալսման աշխատանքների՝ 100 տոկոսը։

Սոցիալիստական դաշտերում աշխատող հազարավոր տրակտորների, ավտոմեքենաների, շարքացանների, կոմբայնների ու գյուղատնտեսական այլ մեքենաների ամենօրյա անխափան աշխատանքն ապահովելու համար սոցիալիստական մրցություն են ծավալել հանրապետության «Հայգյուղտեխնիկա» միավորումը, դրա շրջանային բաժանմունքներն ու հազարավոր մեխանիզատորներ։ Սոցիալիստական մրցությունն ավելի ծավալվեց ութերորդ հնգամյակի առաջին տարվա կեսերին, երբ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը և ՀԱՄԽ-ը «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման համար սահմանեցին փոխանցիկ դրոշ, որին առաջինն արժանացավ Արտաշատի շրջանային բաժանմունքը։

«Հայգյուղտեխնիկայի» Մարտունու շրջանային բաժանմունքի կոլեկտիվը ընթացիկ հնգամյակի սկզբից արտադրական բարձր ցուցանիշների հասավ։ Նրանք շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում տեխնիկայի նորոգման առաջադրանքը կատարեցին 163,6 տոկոսով, մելիորացիայինը՝ 114, անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացմանը՝ 247, հանքային պարարտանյութերի, գյուղատնտեսական մեքենաների գործիքների վաճառքինը՝ 172, բեռների փոխադրմանը՝ 106 տոկոսով, միաժամանակ ստացան 6800 ռուբլու արտապլանային եկամուտ։ Այդ բարձր ցուցանիշներին հասնելու համար «Հայգյուղտեխնիկայի» Մարտունու շրջանային բաժանմունքի կոլեկտիվն արժանացավ «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման և գյուղատնտեսության ու մթերումների բանվոր-ծառայողների արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին կարգի մրցանակի։ Մեր հանրապետությունում հարյուրավոր մեխանիզատորներ իրենց գործունեությունը նվիրել են գյուղատնտեսության ինտենսիվացմանը։

Ութերորդ հնգամյակի առաջադրանքները հաջող կատարելու համար 1966թ. տնտեսական տարվա սկզբին, «Սոյուզսելխոզտեխնիկա» համամիութենական միավորման նախագահությունը և գյուղատնտեսության աշխատողների արհմիության Կենտկոմը փոխանցիկ դրոշներ և դրամական մրցանակներ սահմանեցին սոցիալիստական մրցության առաջավորների համար։ Այդ բարձր պարգևին արժանանալու նպատակով երկրում մեխանիզատորների մրցություն ծավալվեց, որին մասնակցեցին հազարավոր բաժանմունքներ։ Նրանք պարտավորվեցին տրակտորների, գյուղատնտեսական մյուս մեքենաների նորոգումն ավարտել սեղմ ժամկետում և բարձր որակով, գերազանց սպասարկել կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենայական պարկերին, մեքենայացնել անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսները։ Համամիութենական այդ մրցությանը մասնակցեցին նաև «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքները։ Միության մեջ մեծ հաջողությունների հասավ Հոկտեմբերյանի «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքի կոլեկտիվը։

Աշխատանքային այդ լավ սովորույթները շարունակում են Հոկտեմբեր-

յանցիները։ Ինչպես նախորդ, նույնպես և այս տարի, նրանք բարձր որակով
նորոգեցին տրակտորներն ու բոլոր մեքենաները։ «Հայգյուղտեխնիկայի»
կոլեկտիվը երկրորդ եռամսյակում ապրանքային արտադրանքի, նորոգման
աշխատանքների, անասնապահական ֆերմաների մեքենայացման, հիմնա-
կան ֆոնդերի և եկամուտների կուտակման պլանները գերակատարեց։ Տա-
րիներ շարունակ լավ աշխատելու և բարձր ցուցանիշների հասնելու համար
Հոկտեմբերյանի «Հայգյուղտեխնիկայի» բաժանմունքի կոլեկտիվը համա-
միութենական ճանաչում գտավ և արժանացավ միութենական փոխանցիկ
կարմիր դրոշին ու առաջին կարգի մրցանակի։

Գյուղատնտեսության արտադրության հաջողությունը պայմանավորված
է մեքենայացման մակարդակով, մեքենաների բարձր արտադրողականու-
թյամբ։ ՄՏԿ-ները վերակազմելուց հետո կոլտնտեսություններին անգնահա-
տելի ծառայություն են մատուցում գյուղտեխնիկայի շրջանային բաժանմունք-
ները։ Դրանք ո՛չ միայն տեխնիկա ու պահեստամասեր են վաճառում հանրային
տնտեսություններին, այլև տեղադրում են բազմապիսի սարքավորումներ,
ցույց տալիս տեխնիկական անհրաժեշտ օգնություն, պատրաստում մեխա-
նիզատորական որակյալ կադրեր, նորոգում մեքենաները։

«Հայգյուղտեխնիկայի» մեքենանորոգման արհեստանոցների կոլեկտիվ-
ները 1961—1967 թթ. տրակտորների նորոգման աշխատանքներն ավելաց-
րել են 2,4, իսկ կոմբայններինը՝ ավելի քան 3,2 անգամ։ Զգալիորեն աճել է
հանրապետության գյուղատնտեսության մեքենայական պարկը։

Հոբելյանական տարում բարձր ցուցանիշների հասան «Հայգյուղտեխնի-
կայի» Արարատի միավորման բանվորներն ու մեխանիզատորները։ Նրանք
երկրորդ և երրորդ եռամսյակում պլանային բոլոր առաջադրանքները կատա-
րեցին 145—155 տոկոսով, բարելավեցին կոլտնտեսությունների և սովխոզ-
ների տեխնիկական սպասարկումը, բարձրացրին գյուղատնտեսական աշխա-
տանքների մեքենայացման աստիճանը։ Միավորումը կազմակերպեց երկաթբե-
տոնե հենասյուների արտադրություն, որի շնորհիվ կոլտնտեսություններում ու
սովխոզներում ավելի քան 500 հեկտար խաղողի վազեր բարձրացվեցին հենա-
սյուների վրա։ Անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսների մե-
քենայացման պլանը կատարեցին 182 տոկոսով։ Այդ հաջողությունների համար
միավորման կոլեկտիվը 1967 թ. երկու անգամ արժանացավ ՍՍՀՄ Մինիստրը-
ների սովետի «Գյուղտեխնիկա» համամիութենական միավորման և գյուղատըն-
տեսության ու մթերումների բանվոր ծառայողների արհմիության Կենտկոմի
փոխանցիկ կարմիր դրոշին ու դրամական առաջին կարգի մրցանակի։ Նույնպի-
սի հաջողությամբ նրանք շարունակում են աշխատել հնգամյա պլանը ժամկե-
տից շուտ կատարելու համար։

«Հայգյուղտեխնիկայի» էջմիածնի բաժանմունքի կոլեկտիվը 1967 թ. կա-
տարելով նյութատեխնիկական արժեքների իրացման (107 տոկոսով), տրակ-
տորների նորոգման (120) և փոխադրումների առաջադրանքները (106), նվաճեց
«Գյուղտեխնիկա» համամիութենական միավորման ու ՀԱՄԿԽ—ի փոխան-
ցիկ դրոշն ու առաջին կարգի մրցանակը։

Մոսկվայի, Լենինգրադի ու երկրի մյուս արդյունաբերական կենտրոն-
ների աշխատողների օրինակով, սոցիալիստական լայն մրցություն է ծա-
վալվել հանրապետության նաև մեխանիզատորների միջև հնգամյա պլանը
ժամկետից շուտ կատարելու համար։ Մրցության նախաձեռնողներն էին



«Հայգյուղտեխնիկա» միավորման էջմիածնի շրջանային բաժանմունքի
բանվորները, ինժեներա—տեխնիկական աշխատողները, շրջանի կոլտնտե-
սությունների ու սովխոզների մեխանիզատորները։ Նրանք պարտավորվեցին
ժամկետից շուտ ու բարձրորակ կատարել տեխնիկայի նորոգումն ու դաշ-
տային աշխատանքները, տնտեսել վառելիքի ու քսանյութերի 5—6 տոկոսը,
մեքենայացնել անասնապահական ֆերմաների աշխատատար հիմնական
պրոցեսները և մի շարք այլ միջոցառումներով հնգամյակի առաջադրանք-
ները կատարել ժամկետից 2 ամիս շուտ՝ մինչև 1970 թ. նոյեմբերի 1-ը։ Էջ-
միածնեցիների դիմումը մեծ արձագանք գտավ Հայաստանի բոլոր շրջան-
ների մեխանիզատորների շրջանում։ Նույնանման պարտավորություններ են
վերցրել «Հայգյուղտեխնիկայի» բոլոր շրջանային միավորումների կոլեկ-
տիվները, կոլտնտեսությունների ու սովխոզների մեխանիզատորները։

Վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսությունների ու սով-
խոզների մեծ մասը որոշակի քայլեր արեց անասնապահության պրո-
ցեսների մեքենայացման համար։ Հանրապետության կոլտնտեսություններում
ու սովխոզներում ոչխարների խուզը լրիվին մեքենայացվել է։ Բարձրացել է
անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։

Սպիտակի սովխոզի կոմունիստ մեխանիզատորները Հայաստանում ա-
ռաջինն էին, որ հանդես բերեցին նախաձեռնություն և անասնաբուծության
մանր աշխատատար պրոցեսների մեքենայացումից անցան կոմպլեքսային
մեքենայացման։

Չնայած կոլտնտեսություններում ու սովխոզներում վերջին տարիներին
մի քանի անգամ ընդլայնվել է տեխնիկայի բազան, բայց գյուղատնտեսական
աշխատանքների մեքենայացման ծավալն աճել է միայն 60 տոկոսով։ Այդ
հիմնականում հետևանք է այն բանի, որ տնտեսությունների մեծ մասում
գրեթե վերացել է երկհերթ աշխատանքը, շատ կոլտնտեսություններ ու սով-
խոզներ չեն զբաղվում բազմատեսակ կուլտուրաների մշակմամբ (յուրա-
քանչյուրից ցանելով 20—30 հեկտար, երբեմն ավելի քիչ), որը խիստ աղ-
դում է մեքենաների արտադրողականության վրա։ Բացի այդ, տնտեսություն-
ներն ի վիճակի չեն այժմյան հզոր տեխնիկան օգտագործել կամ նորոգել։
Տնտեսապես համեմատաբար թույլ տնտեսությունները դժվարանում են ավե-
լի բարդ և բարձրարժեք մեքենաներ ձեռք բերել, այն խնամել և ժամանակին
նորոգել։ Երբեմն չնչին նորոգման կամ որևէ պահեստամասի կարիք ունեցող
մեքենաները դուրս են գրվում, փոխարենը նորը գնվում։ Մյուս կողմից՝ խո-
շոր կոլտնտեսություններում ու սովխոզներում կենտրոնացվել է հսկայական
քանակությամբ գյուղատնտեսական տեխնիկա, որի մեծ մասը տարվա ըն-
թացքում լրիվ կարողությամբ չի օգտագործվում։

Մեր կարծիքով, նպատակահարմար է մի քանի տնտեսությունում հա-
մակողմանի մեքենայացնել մեխանիզմների նույն սիստեմով որոշ կուլտու-
րաների մշակման աշխատանքները։ Լեռնային և նախալեռնային գոտիներում
գտնվող կոլտնտեսությունների համար այդ աշխատանքները պայմանագրա-
յին կարգով կարող են կատարել «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միա-
վորումները, իսկ հնարավոր է նաև դրանց կից կազմակերպել մեքենավար-
ձակալային կայաններ։ Այդ դեպքում վերջիններս գյուղատնտեսական մեքե-
նաների, պահեստային մասերի, վառելիքի, նորոգման ու պահպանման ծախ-
սեր չեն անի։ Սրա շնորհիվ կոլտնտեսությունները շատ միջոցներ կտնտեսեն
ու կիջնի արտադրվող մթերքների ինքնարժեքը։

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի համար վճռական նշանակություն ունեն ո՛չ միայն արտադրապրոցեսների մեքենայացումը, այլև էլեկտրիֆիկացումը։ Չնայած դրան, մինչև 1965 թ. գարունը Սովետական Միությունում կոլտնտեսությունների 12 տոկոսը էլեկտրաէներգիա չուներ նույնիսկ լուսավորման համար։ Գյուղատնտեսությունը սպառում էր երկրում արտադրվող էլեկտրաէներգիայի 4 տոկոսը, ըստ որում՝ արտադրական նպատակներով՝ միայն 2 տոկոսը («Правда» № 86, 1965г)։

Վերջին տարիներին Հայաստանի առաջավոր կոլտնտեսություններում լուրջ աշխատանք է կատարվել անասնաբուծության հիմնական աշխատատար պրոցեսների էլեկտրիֆիկացման և մեքենայացման համար։ Գրեթե բոլոր կոլտնտեսություններում մեքենայացվել են 2—3 աշխատատար պրոցեսներ։

Գյուղատնտեսության արտադրության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը նպաստում են մտավոր և ֆիզիկական աշխատանքի, քաղաքի ու գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացմանը։

# ՈՐԱԿՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

## ՂԱԶԱՐՅԱՆ Վ. Հ.

Հայաստանի հողակլիմայական պայմանները նպաստավոր են ծխախոտի բարձրորակ հումք ստանալու համար։ Ծխախոտագործությունը վաղուց է դարձել բազմաթիվ կոլտնտեսությունների և սովխոզների եկամտաբեր ճյուղը, որը կազմում է հանրապետությունում մշակվող գյուղատնտեսական կուլտուրաների 2 տոկոսը, բայց տալիս է ամբողջ բուսաբուծությունից ստացվող դրամական եկամտի 30 տոկոսը։ Հայտնի է, որ այս կուլտուրայի մշակումը մեզ մոտ մեծապես ընդարձակվեց սովետական կարգերի հաստատվելուց հետո և արմատավորվեց հանրապետության 21 շրջաններում։ Հայաստանի ծխախոտագործական 283 կոլտնտեսություններ և սովխոզներ տարեկան աճեցնում և պետությանն են վաճառում մոտ 15 հազար տոննա հումք, որի վաճառքից ստանում են 22—25 մլն ռուբլի։

Հանրապետության ծխախոտագործական տնտեսությունները մինչև վերջին տարիներն այդ կուլտուրայի պլանտացիաներում թմբերը պատրաստում էին բացառապես կենդանի քարշող ուժով և ձեռքով, իսկ այժմ այդ աշխատանքը մեծ մասամբ մեքենայացված է. Շամշադինի, Իջևանի, Աշտարակի, Աբովյանի և Ալավերդու շրջանների 20 տնտեսություններում մեքենայացված են նաև չորանոցների աշխատատար պրոցեսները։

Հիրավի, հանրապետության ծխախոտագործական տնտեսություններում զգալի գործ է կատարված այդ կուլտուրայի մշակման և բերքատվության բարձրացման ասպարեզում. առանձին տնտեսություններում բերքատվությունը հեկտարից հասնում է 30—35 ցենտների։ Սակայն մի շարք կոլտնտեսություններ դեռևս անբավարար արդյունքի են հասել բերքատվության բարձրացման և արտադրանքի որակի բնագավառներում։ Այդ հետևանք է այն բանի, որ գիտահետազոտական ինստիտուտներն ու ծխախոտագործական տնտեսությունների վարչությունները քիչ ուշադրություն են նվիրում ծխախոտի պլանտացիաների և հումքի նախնական մշակության աշխատատար պրոցեսների մեքենայացման վրա։ Ավելին, շատ տնտեսություններում ծխախոտի մշակման ագրոտեխնիկան (պարարտացման, սածիլման, ծաղկատման) և մնացած աշխատանքները կատարվում են միայն ձեռքով, պրիմիտիվ, ուստի և ցածր է դրա բերքատվությունն ու եկամտաբերությունը։

Այժմ արդեն անհանդուրժելի է, երբ



որոշ կոլտնտեսություններում ծխախոտի մշակումը փաստորեն անշահաբեր է։ Այս էական թերությունը պետք է հաղթահարվի մոտակա ժամանակներում։ Ծխախոտի շահավետությունը վաղուց է ապացուցված հանրապետության շատ տնտեսությունների փորձով։

1967 թ. Ալավերդու շրջանի տնտեսությունները պետությանը պետք է հանձնեին 605 տոննա ծխախոտի հումք, մինչդեռ հանձնել են 409 տոննա։ Նույն շրջանի Ղաչաղանի կոլտնտեսությունն ըստ պլանի հեկտարից պետք է ստանար 16 ցենտներ ծխախոտի բերք, փաստորեն ստացել է 12,4 ցենտներ. 640 ցենտներ համախառն բերքի փոխարեն ստացել է 498, որի դրամական եկամուտը կազմել է 60721 ռուբլի (փաստորեն այդ հումքի արտադրության վրա ծախսված է 71910 ռուբլի)։ Իսկ Մղարթի տնտեսությունը 25 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 7 ցենտներ հումք, համախառն բերքը կազմել է 175 ցենտներ, որի վաճառքից ստացվել է 21.747 ռուբլի, մինչդեռ ծախսվել է 34.092 ռուբլի։

Սիսիանի շրջանի տնտեսությունները պլանով սահմանված 726 տոննա ծխախոտի դիմաց պետությանն են հանձնել 327,7 տոննա, իսկ այդ շրջանի Աշոտավանի տնտեսությունը 36 հեկտարից ստացել է 326 ցենտներ բերք (կամ հեկտարից 9,05 ցենտներ), պլանով նախատեսված 15 ցենտների դիմաց։

Եղեգնաձորի շրջանի Ղավուշուղի տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 4,9 ցենտներ ծխախոտի բերք, պլանային 14 ցենտների դիմաց։ Այստեղ 35 հեկտարից վերցրել են 172,3 ցենտներ ծխախոտի հումք, որի վաճառքից ստացվել է միայն 39,2 հազար ռուբլի։ Քիչ եկամտաբերության հիմնական պատճառներից մեկը ցածրորակ հումքն է։

Ծխախոտի հումքի որակի վրա բացասական ազդեցություն են թողնում տվյալ կուլտուրայի մշակության ագրոտեխնիկական կանոնների խախտումները։ Օրինակ, մի շարք տնտեսություններում տերևաքաղին և շարին մասնակցում են ո՛չ միայն փորձառու ծխախոտագործները, այլև երեխաները, տարբեր բնագավառների բանվոր-ծառայողները, որոնք չգիտենալով ու խախտելով տերևաքաղի տեխնիկան, խառը քաղում են թերհասունացած, հասունացած և գերհասունացած (նույնիսկ առանձին դեպքերում՝ վարակված) տերևները, որոնք առանց պատշաճ տեսակավորման շարվում են, տամկացվում ու չորացվում, որի հետևանքով շարի մեջ ստացվում է տարբեր ապրանքային տեսակների հումք։ Հասկանալի է, որ հետագա տեսակավորման և հակավորման ընթացքում առաջանում են լուրջ դժվարություններ։ Ծխախոտի բարձրորակ հումք արտադրելու համար հարկավոր է ունենալ լավ չորանոցներ ու խոնավանոցներ։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1967 թ. ապրիլի 4-ի որոշմամբ ծխախոտագործական տնտեսություններում պետք է կառուցվեին 432 աչք կրակային և արևային չորանոցներ, մինչդեռ կառուցվել է միայն 148-ը։ Բացի այդ, պլանով նախատեսված 33 խոնավանոցներից, պահեստներից և հակավորման կոմպլեքս շենքերից, կառուցված է միայն 11-ը։ Հետևաբար, գոյություն ունեցող նորմաների համաձայն, հանրապետության ծխախոտագործական տնտեսությունները պետք է ունենան 8 հազար աչք արևային և 500 կրակային չորանոցներ։ Սակայն 1968 թ. հունվարի մեկի դրությամբ, նրանք ունեցել են 4.717 արևային և 90 կրակային չորանոցներ, որոնց զգալի մասը չի նորոգված և արդեն օգտագործելի չէ։ Մի քանի շրջաններում (Բասարգեչար, Աբովյան, Հրազդան, Աշտարակ, Եղեգնաձոր, Կրասնոսելսկ, Արթիկ) վատ է չորանոցների վիճակը, որոնց պակասի պատճառով ծխախոտի հումքը չորացնում են ամեն տեղ՝ պատերի և ցանկապատերի վրա, գերաններին և ցցերին ամրացրած երկաթյա լարերի վրա շարը կախելու միջոցով, ծառերի տակ և այլն։ Կլիմայական անբարենպաստ պայմանների դեպքում թանկարժեք հումքը հավաքվում է մեծ կորուստներով։

Ծխախոտի հումքի վատորակության պատճառներից մեկն էլ այն է, որ խոնավանոցներ չունենալով, մի շարք տնտեսություններում ծխախոտի հումքը տեսակավորվելուց առաջ թրջում են, որը հակում բորբոսնում է և փչանում, մեծ վնաս հասցնելով տնտեսությանը և պետությանը։ Այս արատավոր պրակտիկան հաճախ նպաստում է այն չա-

*Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի համար վճռական նշանակություն ունեն ո՛չ միայն արտադրապրոցեսների մեքենայացումը, այլև էլեկտրիֆիկացումը։ Չնայած դրան, մինչև 1965 թ. դարունը Սովետական Միությունում կոլտնտեսությունների 12 տոկոսը էլեկտրաէներգիա չուներ նույնիսկ լուսավորման համար։ Գյուղատնտեսությունը սպառում էր երկրում արտադրվող էլեկտրաէներգիայի 4 տոկոսը, ըստ որում՝ արտադրական նպատակներով՝ միայն 2 տոկոսը («Правда» № 86, 1965г)։*

*Վերջին տարիներին Հայաստանի առաջավոր կոլտնտեսություններում լուրջ աշխատանք է կատարվել անասնաբուծության հիմնական աշխատատար պրոցեսների էլեկտրիֆիկացման և մեքենայացման համար։ Գրեթե բոլոր կոլտնտեսություններում մեքենայացվել են 2—3 աշխատատար պրոցեսներ։*

*Գյուղատնտեսության արտադրության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը նպաստում են մտավոր և ֆիզիկական աշխատանքի, քաղաքի ու գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացմանը։*

## ՈՐԱԿՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**ՂԱԶԱՐՅԱՆ Վ. Հ.**

*Հայաստանի հողակլիմայական պայմանները նպաստավոր են ծխախոտի բարձրորակ հումք ստանալու համար։ Ծխախոտագործությունը վաղուց է դարձել բազմաթիվ կոլտնտեսությունների և սովխոզների եկամտաբեր ճյուղը, որը կազմում է հանրապետությունում մշակվող գյուղատնտեսական կուլտուրաների 2 տոկոսը, բայց տալիս է ամբողջ բուսաբուծությունից ստացվող դրամական եկամտի 30 տոկոսը։ Հայտնի է, որ այս կուլտուրայի մշակումը մեզ մոտ մեծապես ընդարձակվեց սովետական կարգերի հաստատվելուց հետո և արմատավորվեց հանրապետության 21 շրջաններում։ Հայաստանի ծխախոտագործական 283 կոլտնտեսություններ և սովխոզներ տարեկան աճեցնում և պետությանն են վաճառում մոտ 15 հազար տոննա հումք, որի վաճառքից ստանում են 22—25 մլն ռուբլի։*

*Հանրապետության ծխախոտագործական տնտեսությունները մինչև վերջին տարիներն այդ կուլտուրայի պլանտացիաներում թմբերը պատրաստում էին բացառապես կենդանի քարշող ուժով և ձեռքով, իսկ այժմ այդ աշխատանքը մեծ մասամբ մեքենայացված է. Շամշադինի, Իջևանի, Աշտարակի, Աբովյանի և Ալավերդու շրջանների 20 տնտեսություններում մեքենայացված են նաև չորանոցների աշխատատար պրոցեսները։*

*Հիրավի, հանրապետության ծխախոտագործական տնտեսություններում զգալի գործ է կատարված այդ կուլտուրայի մշակման և բերքատվության բարձրացման ասպարեզում. առանձին տնտեսություններում բերքատվությունը հեկտարից հասնում է 30—35 ցենտների։ Սակայն մի շարք կոլտնտեսություններ դեռևս անբավարար արդյունքի են հասել բերքատվության բարձրացման և արտադրանքի որակի բնագավառներում։ Այդ հետևանք է այն բանի, որ գիտահետազոտական ինստիտուտներն ու ծխախոտագործական տնտեսությունների վարչությունները քիչ ուշադրություն են նվիրում ծխախոտի պլանտացիաների և հումքի նախնական մշակության աշխատատար պրոցեսների մեքենայացման վրա։ Ավելին, շատ տնտեսություններում ծխախոտի մշակման ագրոտեխնիկան (պարարտացման, սածիլման, ծաղկատման) և մնացած աշխատանքները կատարվում են միայն ձեռքով, պրիմիտիվ, ուստի և ցածր է դրա բերքատվությունն ու եկամտաբերությունը։*

*Այժմ արդեն անհանդուրժելի է, երբ որոշ կոլտնտեսություններում ծխախոտի մշակումը փաստորեն անշահաբեր է։ Այս էական թերությունը պետք է հաղթահարվի մոտակա ժամանակներում։ Ծխախոտի շահավետությունը վաղուց է ապացուցված հանրապետության շատ տնտեսությունների փորձով։*

*1967 թ. Ալավերդու շրջանի տնտեսությունները պետությանը պետք է հանձնեին 605 տոննա ծխախոտի հումք, մինչդեռ հանձնել են 409 տոննա։ Նույն շրջանի Ղաչաղանի կոլտնտեսությունն ըստ պլանի հեկտարից պետք է ստանար 16 ցենտներ ծխախոտի բերք, փաստորեն ստացել է 12,4 ցենտներ. 640 ցենտներ համախառն բերքի փոխարեն ստացել է 498, որի դրամական եկամուտը կազմել է 60721 ռուբլի (փաստորեն այդ հումքի արտադրության վրա ծախսված է 71910 ռուբլի)։ Իսկ Մղարթի տնտեսությունը 25 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 7 ցենտներ հումք, համախառն բերքը կազմել է 175 ցենտներ, որի վաճառքից ստացվել է 21.747 ռուբլի, մինչդեռ ծախսվել է 34.092 ռուբլի։*

*Սիսիանի շրջանի տնտեսությունները պլանով սահմանված 726 տոննա ծխախոտի դիմաց պետությանն են հանձնել 327,7 տոննա, իսկ այդ շրջանի Աշոտավանի տնտեսությունը 36 հեկտարից ստացել է 326 ցենտներ բերք (կամ հեկտարից 9,05 ցենտներ), պլանով նախատեսված 15 ցենտների դիմաց։*

*Նոյեմբերյանի շրջանի Ղալաչուղի տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 4,9 ցենտներ ծխախոտի բերք, պլանային 14 ցենտների դիմաց։ Այստեղ 35 հեկտարից վերցրել են 172,3 ցենտներ ծխախոտի հումք, որի վաճառքից ստացվել է միայն 39,2 հազար ռուբլի։ Քիչ եկամտաբերության հիմնական պատճառներից մեկը ցածրորակ հումքն է։*

*Ծխախոտի հումքի որակի վրա բացասական ազդեցություն են թողնում տվյալ կուլտուրայի մշակության ագրոտեխնիկական կանոնների խախտումները։ Օրինակ, մի շարք տնտեսություններում տերևաքաղին և շարին մասնակցում են ո՛չ միայն փորձառու ծխախոտագործները, այլև երեխաները, տարբեր բնագավառների բանվոր-ծառայողները, որոնք չգիտենալով ու խախտելով տերևաքաղի տեխնիկան, խառը քաղում են թերհասունացած, հասունացած և գերհասունացած (նույնիսկ առանձին դեպքերում՝ վարակված) տերևները, որոնք առանց պատշաճ տեսակավորման շարվում են, տամկացվում ու չորացվում, որի հետևանքով շարի մեջ ստացվում է տարբեր ապրանքային տեսակների հումք։ Հասկանալի է, որ հետագա տեսակավորման և հակավորման ընթացքում առաջանում են լուրջ դժվարություններ։ Ծխախոտի բարձրորակ հումք արտադրելու համար հարկավոր է ունենալ լավ չորանոցներ ու խոնավանոցներ։*

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1967 թ. ապրիլի 4-ի որոշմամբ ծխախոտագործական տնտեսություններում պետք է կառուցվեին 432 աչք կրակային և արևային չորանոցներ, մինչդեռ կառուցվել է միայն 148-ը։ Բացի այդ, պլանով նախատեսված 33 խոնավանոցներից, պահեստներից և հակավորման կոմպլեքս շենքերից, կառուցված է միայն 11-ը։ Հետևաբար, գոյություն ունեցող նորմաների համաձայն, հանրապետության ծխախոտագործական տնտեսությունները պետք է ունենան 8 հազար աչք արևային և 500 կրակային չորանոցներ։ Սակայն 1968 թ. հունվարի մեկի դրությամբ, նրանք ունեցել են 4.717 արևային և 90 կրակային չորանոցներ, որոնց զգալի մասը չի նորոգված և արդեն օգտագործելի չէ։ Մի քանի շրջաններում (Բասարգեչար, Աբովյան, Հրազդան, Աշտարակ, Նոյեմբերյան, Կրասնոսելսկ, Արթիկ) վատ է չորանոցների վիճակը, որոնց պակասի պատճառով ծխախոտի հումքը չորացնում են ամեն տեղ՝ պատերի և ցանկապատերի վրա, գերաններին և ցցերին ամրացրած երկաթյա լարերի վրա շարը կախելու միջոցով, ծառերի տակ և այլն։ Կլիմայական անբարենպաստ պայմանների դեպքում թանկարժեք հումքը հավաքվում է մեծ կորուստներով։*

*Ծխախոտի հումքի վատորակության պատճառներից մեկն էլ այն է, որ խոնավանոցներ չունենալով, մի շարք տնտեսություններում ծխախոտի հումքը տեսակավորվելուց առաջ թրջում են, որը հակում բորբոսնում է և փչանում, մեծ վնաս հասցնելով տնտեսությանը և պետությանը։ Այս արատավոր պրակտիկան հաճախ նպաստում է այն չա-*

բաշահումներին, որոնք կատարում են առանձին անբարեխիղճ ծխախոտագործներ։

Այս առումով անհրաժեշտ է ընդգծել, որ տնտեսության լավ, հմուտ ղեկավարը, առանց մեծ ծախսերի, ծխախոտի հումքի նախնական վերամշակման համար կարող է ստեղծել նորմալ պայմաններ (չերմոցներ, խոնավանոցներ) և ներդրված գումարը փոխհատուցել մեկ տարում՝ պետությանը բարձրորակ հումք հանձնելով։ Այսպես, օրինակ, ծխախոտի առաջին տեսակի մեկ տոննա հումքը պետությունը գնում է 5.250 ռուբլով, երկրորդը՝ 4.130, երրորդ բացը՝ 2.630, երրորդ մուգը՝ 2.000, չորրորդը՝ 1.060 ռուբլով։

Ինչպես տեսնում ենք, ծխախոտի հումքի սույն գները սահմանված են հօգուտ արտադրողների, հետևաբար պետք է համառ և լարված աշխատել, որպեսզի պետությանը հանձնվող հումքի որակն առավելապես բարձր լինի։ Ցավոք, վերջին տարիներին վատացել է պետությանը վաճառվող հումքի որակը։

Ահա մի քանի փաստեր։

| Թվականը | Պլանով նախատեսված | Տեսակը | Փաստորեն վաճառված է | Պլանի կատարումը |
|---|---|---|---|---|
| | 69 | առաջին | 7 | |
| 1965 | 1815 | երկրորդ | 793 | 9328 |
| | 4275 | երրորդ | 3729 | |
| | 69 | առաջին | 2,5 | |
| 1966 | 1810 | երկրորդ | 335 | 10495 |
| | 4285 | երրորդ | 3063 | |
| | 70 | առաջին | 0,52 | |
| 1967 | 1828 | երկրորդ | 120,5 | 12810 |
| | 4400 | երրորդ | 2070 | |

Գյուղատնտեսության ղեկավար մարմինները մոտակա տարիներին արմատական միջոցառումների կիրառմամբ պետք է բարձրացնեն ծխախոտի հումքի որակը, որը կոլտնտեսությունների ու սովխոզների եկամտի աճի օգտավետ ռեզերվ կդառնա։

Ցածրորակ ապրանքային հումք վաճառելու պատճառով հանրապետության ծխախոտագործական տնտեսությունները 1967 թ. բերքից պլանավորվածի դիմաց 4,5 միլիոն ռուբլի պակաս ըստացան, իսկ եթե ծխախոտի 30 տոկոսը տրվի առաջին և երկրորդ տեսակներով, մյուս կեսը՝ երրորդ բաց և մուգ, ապա ծխախոտագործական տնտեսությունների տարեկան եկամուտը կբարձրանա 19,9 մլն ռուբլով և ազգաբնակչությունը կստանա բարձրորակ, հոտավետ ծխախոտ։

Միութենական կառավարության 1968 թ. հունվարի 12-ի որոշմամբ ծխախոտագործ տնտեսություններին թույլատրվեց կլիմայական անբարենպաստ եղանակների դեպքում պետությանը վաճառել 19 բազիսայնից բարձր 23 տոկոսի խոնավության ծխախոտի ապրանքային հումք։ Միաժամանակ այդ հումքն ընդհանուր կոնդիցիայի հասցնելու համար նախատեսվել է զեղչել նրա հաշվառքային քաշից 1,2 տոկոս, յուրաքանչյուր 1 տոկոս գերխոնավության դիմաց և պահել հանձնված գերխոնավ հումքի արժեքի մեկ տոկոսը։ Մի շարք տնտեսությունների ղեկավարներ խախտելով այդ որոշումը և անտեսելով դրանից ստացվող վնասը, հաճախ անհարկի խոնավացնում են ծխախոտի հումքը և ըստ այնմ վաճառում պետությանը։

Ծխախոտագործության զարգացման կարևոր նախապայմաններից է պահեստային տնտեսության բարելավումն ու ընդարձակումը։ Մինչդեռ այդ նպատակով տրված գումարները դանդաղ են իրացվում, իսկ որոշ վայրերում կառուցումներն անորակ են։ Այսպես, հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության Դիլիջանի շինտրեստը Շամշադինի ծխախոտի ֆերմենտացիոն գործարանի համար կառուցում է 500 տոննա տարողությամբ պահեստ, որը փլվեց մինչև ավարտելը։ Ժամանակն է, որպեսզի ծխախոտագործական տնտեսությունների ղեկավարները վերջնականապես լուծեն պահեստային տնտեսության հետ կապված հարցերը և ապահովեն ստացված բերքի պահպանումը։ Այս տարի հանրապետության ծխախոտագործական տնտեսություններում ստանում են բարձրորակ հումք։ Մնում է լավ պահպանել բերքն ու այն առանց կորստի հանձնել պետությանը։

Մի քանի խոսք ծխախոտի հումքի ընդունման պրակտիկայի մասին։ Նախ, բոլոր տնտեսություններում և մթերակայաններում պարտադիր կարգով ցուցատախտակի վրա պետք է փակցված լինեն տվյալ շրջանում մշակվող ծխախոտի բուսաբանական և ապրանքային տեսակների ցուցադրական նմուշները՝ հաստատված գյուղատնտեսության և սննդի արդյունաբերության մինիստրությունների կողմից։ Ծխախոտի հանձնման և ընդունելության ժամանակ պետք է ցուցաբերվի իրոք պետական մոտեցում և բացառվեն չարաշահումները։ Երբ որակի հարցում առաջանում են տարբեր կարծիքներ, պետք է անպայման դիմել գյուղատնտեսության մինիստրության գյուղատնտեսական մթերքների որակի տեսչության և սննդի արդյունաբերության մասնագետներին, բայց ոչ այլ մարդկանց։ Երբ մասնագիտական հանձնաժողովը գտնում է, որ այս կամ այն բուսաբանական կազմը չի կարելի ընդունել որպես տվյալ տեսակի, պետք է հումքը վերադարձվի տնտեսությանը, վերջնականապես տեսակավորելու և կրկին պետությանը հանձնելու համար։

Որակի հարցում չպետք է լինի ոչ մի զիջում։ Իջևանի շրջանի Ուզունթալայի ծխախոտի ֆերմենտացիոն գործարանը 1967 թ. ֆինանսա-տնտեսական տարին փակեց 55 հազար ռուբլու վնասով (որից միայն ծխախոտի տեսակների իջեցումից՝ 35 հազար ռուբլու)։ Ծխախոտի մթերման կայաններում հումքի նկատմամբ համապատասխան հսկողություն և խնամք չտանելու հետևանքով լինում են զգալի կորուստներ։ Թալինի շրջանի մթերման կայանում (վարիչ Ա. Քոչարյան) փչացավ 5.525 կգ ծխախոտի հումք և տեղի ունեցավ որակի իջեցում, որի ընդհանուր գումարը հասավ 22 հազար ռուբլու։ Այս ցույց է տալիս, որ տնտեսությունները ցածրորակ ծխախոտը ձևակերպել են բարձրորակ։

Այստեղ հարկ կա մի հարց ևս բարձրացնել։ Դա հանրապետական ժյուրիի գնահատականն է ծխախոտի պլանի հաջող կատարման համար փոխանցիկ դրոշ և դրամական պարգև տալու հարցում։ Մարտունու շրջանը 1967 թ. պլանով նախատեսված 1310 տոննա ծխախոտի դիմաց պետությանը վաճառեց՝ 1585,2 տոննա կամ պլանը կատարեց 121 տոկոսով և արժանացավ հանրապետության փոխանցիկ դրոշի ու դրամական պարգևի։ Սակայն 2 տոննա առաջին տեսակի և 30 տոննա երկրորդ տեսակի դիմաց՝ ոչինչ չհանձնեց, իսկ երրորդ բաց տեսակի 200 տոննայի դիմաց հանձնեց միայն 9,5 տոննա, երրորդ մուգ տեսակի՝ 1351,9 տոննա և 216 տոննա չորրորդ տեսակի։ Այս վիճակը նորմալ համարել չի կարելի։

Անհրաժեշտ է ճշտորեն կիրառել պարգևատրության սահմանված չափանիշները, որը կնպաստի արտադրանքի որակի բարձրացմանը։ Ահա թե ինչու, ծխախոտագործների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով միութենական կառավարությունը 1968 թ. սեպտեմբերի 5-ին որոշեց՝ ծխախոտի արտադրության ավելացման և բարձր ապրանքայնություն ապահովելու դեպքում առաջիկա տարում սահմանված գներից տարեկան փաստացի քանակից ավելի վաճառվող համապատասխան տեսակների համար լրացուցիչ վճարել 20 տոկոս։

Ծխախոտամշակման աճին զուգընթաց ավելանում է նաև դրա արդյունաբերության արտադրանքը։ Այժմ ծավալուն աշխատանք է տարվում Երևանի ծխախոտի կոմբինատի շենքի վերակառուցման, արտադրական կարողությունների ավելացման համար։ Վերջերս, հանրապետության Մինիստրների սովետի որոշմամբ, Երևանի ծխախոտի կոմբինատը վերածվեց փորձարարական կոմբինատի, գիտատեխնիկական կազմը համալրվեց որակյալ ինժեներներով։ Այդ կոմբինատում ծխախոտի արտադրության զուգընթաց, ուսումնասիրվելու և տեղադրվելու են հայրենական և արտասահմանյան նորագույն տեխնիկայի սարքավորումներ՝ գլանակների նոր տեսակների թողարկման համար։ Փորձարարական կոմբինատը դառնալու է գիտատեխնիկական մտքի մի օջախ։

Նախատեսվում է առաջիկայում մեծապես ընդլայնել սիգարեթների արտադրությունը, 1975 թ. թողարկել 42 մլրդ հատ։ Փորձնական աշխատանքներին զուգընթաց, այժմ նախագծվում է կառուցել սինթետիկ ֆիլտրող նյութի և մուշտուկների արտադրության ֆաբրիկա, որը տարեկան կթողարկի $10 \times 6$ մլրդ ֆիլտրող մուշտուկ. այն կբավարարի ոչ միայն Երևանի, այլև Միության շատ ծխախոտի կոմբինատների պահանջները։

# ԴՐՎԱԳՆԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻՑ

## ԴՆԵՊՐԻ ԳԵՏԱՆՑԸ

Հայրենական մեծ պատերազմ... Սխրագործությունների և ծանր զրկանքների երկար ու ձիգ տարիներ, որ բաժին ընկան միլիոնավոր սովետական մարդկանց, մեր ողջ ժողովրդին: Պահեստի գնդապետ, Սովետական Միության հերոս Գեդեոն Հայրապետի Միքայելյանը Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերից եղել է ռազմաճակատներում և ակտիվ մասնակցել անեղ մարտերին: Դնեպրի հաջող գետանցման, Դնեպր գետի արևմտյան ափին հենակետ հաստատելու, այն ընդլայնելու, մղված մարտերում արիություն և խիզախություն ցուցաբերելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1943 թ. հոկտեմբերի 26-ի հրամանագրով Գ. Միքայելյանին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում:

Դնեպրի գետանցը մեր զորքերին հնարավորություն տվեց ֆաշիստական զավթիչներից շուտափույթ ազատագրել Կիևը: Այս տարվա նոյեմբերի 6-ին տոնվեց Սովետական Ուկրաինայի մայրաքաղաքի ազատագրման 25-րդ տարեդիցը:

Ստորև հրապարակում ենք մի դրվագ հերոսի հուշերից:

* * *

*Հայրենական մեծ պատերազմի լուրը ստացա ծննդավայրումս՝ Նոր Բայազետում (Կամոյում) և անմիջապես մեկնեցի Երևան, պաշտոնավայրս: Այդ օրհասական օրերին իմ միակ իղձն էր՝ մեկնել պատերազմի դաշտ, դեմ առ դեմ կռվել մեր հայրենիքը ներխուժած ֆաշիստական զավթիչների դեմ: Եվ ահա կենտրոնից առաջարկեցին անհապաղ մեկնել Մոսկվա... Ինչպես ողջ Սովետական Միությունը, այնպես էլ մայրաքաղաքը ապրում էր տագնապալի օրեր, ամենքի շուրթերին հայրենիքն էր, պատերազմը:*

*Կարմիր բանակի կադրերի գլխավոր վարչությունից նոր նշանակում ստանալով, մեկնեցի կենտրոնական ռազմաճակատի (հրամանատար Սովետական Միության մարշալ Ս. Կ. Տիմոշենկո) հատվածներից մեկը, ուր պաշտպանական մարտեր էր մղում 3-րդ բանակը: 1941 թվականի հուլիսին արյունահեղ կռիվներ էին տեղի ունենում Բելոռուսական հողում, Պոլեսիայում... Ֆաշիստների ուժերը (հատկապես տեխնիկայի ասպարեզում) գերակշռող էին: Սովետական զորագնդերը, մեծ կորուստներ պատճառելով հակառակորդին, հարկադրված նահանջում էին: Բայց յուրաքանչյուր նահանջող մարտիկի հոգում անթեղված էր հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ: Այդ հավատը մեր սրտերում բորբոքում էր կոմունիստական կուսակցությունը:*

*Թշնամին Մոսկվայի մատույցներում էր:*

*Ֆաշիստները ամեն ճիգ գործադրում էին մինչև վերահաս ցրտերը գրավել այն: Կոմունիստական կուսակցության կոչով հարազատ քաղաքը պաշտպանում էին Սովետական Միության բոլոր ժողովուրդների զավակները: Այդ օրերին նշանակվեցի գնդի հրամանատար: Մեր գնդից շատ ռազմիկների եմ հիշում՝ Պետրոսովին, Ստորովոյտոյին, Գոգչաշվիլուն. նրանք Տուլայի մոտ խիզախորեն կռվում էին թշնամու դեմ: Մոսկվայի մատույցներում թշնամու ուժերը արյունաքամ անելուց հետո սովետական բանակները նրան մայրաքաղաքից 300—400 կիլոմետր հեռու մղեցին: Մեր գունդը մասնակցեց Եֆրեմով, Ելեց քաղաքների ազատագրման համար մղված կռիվներին: Պատերազմի դաշտում կոմունիստներն ամենուր քաջագործության լավագույն օրինակներ էին ցուցաբերում:*

* * *

*Երկու տարի էր անցել պատերազմից: Շատ բան էր փոխվել ուժերի հարաբերակցության մեջ: Սովետական զինված ուժերը պաշտպանական երկարատև մարտերից անցել էին հարձակման, մեծ հաղթանակներ տարել տարբեր ռազմաճակատներում: Սովետական ռազմիկները, կոտրելով թշնամու դիմադրությունը, հիտլերականներին քշում էին Արևմուտք, իրենց սեփական որջում ոչնչացնելու համար:*

*Ստեպնոյ (հետագայում՝ 2-րդ Ուկրաինական) ռազմաճակատի զորքերը Դոնի ափերից, մարտեր մղելով, հասել էին Խարկով ու անդադար հետապնդում և ջախջախում էին հիտլերյան զավթիչներին, որոնք ուժերը վերախմբավորելու, հակահարձակման անցնելու համար փորձում էին կառչել այս կամ այն բնագծին:*

*Այդ ժամանակ 73-րդ գվարդիական Ստալինգրադյան դիվիզիայի 209-րդ գվարդիական Աբգաներովյան գունդը, իմ հրամանատարությամբ, համագործակցելով այլ զորամասերի հետ, ազատագրեց Խարկովի մարզի Կրասնոգրադ քաղաքը: Այնուհետև, հետապնդելով հակառակորդի նահանջող զորամասերին, մեր գունդը հասավ Դնեպրի ափը, Պոլտավայի մարզի Ստարի-Օրլիկ խոշոր գյուղը:*

*1943 թվականի սեպտեմբերի 24-ն էր: Մոտենում էր մայրամուտը: Մարտիկները կարճ դադարի պահին վերհիշում էին անցած փառավոր ուղին, մարտերում զոհված իրենց ընկերներին: Նրանց բոլորի տրամադրությունը բարձր էր, չէ՞ որ սկսել էինք ֆաշիստներին դուրս քշել մեր սրբազան հողից...*

*Դիվիզիայի շտաբից ինձ մոտ եկավ կապավորը և զեկուցեց՝ «Ընկեր փոխգնդապետ, հրամանատարը կարգադրեց անհապաղ ներկայանալ իրեն»: Ես անմիջապես մեկնեցի դիվիզիայի հրամանատարի դիտակետը, որը մեզնից 5—6 կիլոմետրի վրա էր: Նա քարտեզին կքված՝ ուսումնասիրում էր Դնեպրի տեղանքը:*

*— Ա՜յ, եկա՞ք, Կովկասի զավակ,— նա, երբ բարեհաճ տրամադրության էր լինում, ինձ այդպես էր կոչում:— Հիմա կսկսենք, Դավիդենկոն և Սևաստիանովն էլ գան (խոսքը մյուս գնդերի հրամանատարների մասին էր):*

*Շատ չանցած իրենց գալու մասին զեկուցեցին Դավիդենկոն և Սևաստիանովը:*

*— Հրետանու պետն այստեղ է, սակրավոր գումարտակի հրամանատարը նույնպես, ուրեմն, կարող ենք սկսել,— ասաց դիվիզիայի հրամանատարը և ապա ձայնը բարձրացրեց:— Բանակի հրամանատար Շումիլովը հրամայել է, որ մեր գվարդիական դիվիզիան այս գիշեր կազմակերպի գետանցը և Դնեպրի աջ ափից քշի թշնամուն: Փոխադրական միջոցների չենք կարող սպասել,— շարունակեց դիվիզիայի հրամանատար գնդապետ Կոզակը,— գետն անցնելու համար ինքներդ միջոցներ գտեք... Դե՜... Հաջողությո՜ւն:*

*Այսպես, ուրեմն, պետք էր անցնել Դնեպրը և ձեռնամուխ լինել Ուկրաինայի աջ ափի ազատագրմանը, հնարավորություն չտալ թշնամուն ամրանալու գետի աջ ափում: Դա այնքան հեշտ խնդիր չէր: Թշնամին, նահանջելով գետի արևմտյան ափը, եղած փոխադրական միջոցների մի մասը տարել էր, մնացածը՝ ոչնչացրել:*

*Պետք էր ամեն ինչ կատարել արագ ու կազմակերպված, խիստ պահելով ռազմական գաղտնիքը:*

*Մի խումբ հետախույզների հետ դուրս եկա գետափ (գետի լայնությունը մեր տեղամասում 1.000—1.200 մետր էր). գետանցի համար նպատակահարմար վայր որոնելու և որևէ նավակ կամ լաստ գտնելու: Իսկ մայոր Բարդանին*

բարելավում իրենց դիրքերը։ Նրանք երդվել էին այլևս ետ չնայել։

Մթնում էր, երբ մեր առաջավոր ջոկատը մտավ Բորոդաևկա գյուղի արևելյան ծայրամասը և խրամատավորվելով՝ կռվի բռնվեց հիտլերականների հետ։ Հարկավոր էր, ինչ գնով էլ լինի, գրավել գյուղը։

Երկրորդ գիշերը Զասյադկոյին հաջողվեց նավակներով աջ ափն անցկացնել երկու 45 մմ հրանոթ, մենք կարողացանք դրանք տեղավորել Բորոդաևկա գյուղի ծայրամասի տներում, ամրացնել խրամատները, հեռախոսային կապ ստեղծել դիվիզիայի հրամանատարի հետ, գրոհելու համար հետախուզել, իմանալ թշնամու պաշտպանության մասին։

Լուսաբացին գերմանացիները (չորս տանկով, զրահափոխադրիչներով) անցան հակագրոհի։ Մեր հակատանկային երկու հրանոթները սկսեցին ուժեղ կրակ բացել տանկերի, իսկ ականանետները՝ զրահափոխադրիչների վրա։ Գերմանական մեկ տանկ այրվեց, մյուսները գալիս էին մեր հրետանու վրա։ Խփվեց հակառակորդի ևս մեկ տանկ, մյուս երկուսը դեռևս շարժվում էին և ավելի արագացրին ընթացքը։ 150, 100, 50... քայլ էր մնում մեր կրակակետերին հասնելու համար, բայց քաջարի հրետանավորները չէին հեռանում մարտից։ Եվ կատարվեց անսպասելին... տանկերից մեկը մեծ արագությամբ սլացավ դեպի դիմացի թնդանոթը, որ իր թրթուրների տակ ճզմի այն ու նրա անձնակազմին։ Թնդանոթաձիգները անմիջապես անցան զառիթափի լանջին նախօրոք պատրաստած թաքստոցը, տանկը առաջանալով իր թրթուրների տակ առավ թնդանոթը... բայց և նույն թափով գլորվեց ձորը, որի եզրին հենց այդ նպատակով դրված էր թնդանոթը։

Մարտն ավարտվեց մեր հաղթանակով։ Թշնամին կորցրեց 3 տանկ, 2 զրահափոխադրիչ և ունեցավ բազմաթիվ սպանված ու վիրավոր։ Մենք ևս մեծ կորուստներ տվեցինք։

Երրորդ գիշերը վերսկսեցինք բարելավել խրամատները. Բորոդաևկայում մեր գրաված տները (որոնց պատերը աղյուսից էին) կրակակետերի էինք վերածում։ Դիվիզիայի հրամանատարի և գնդի թիկունքի հետ կապ էինք պահպանում հեռախոսի, ռադիոյի և նավակների միջոցով։ Նավակները (հակառակ ափից) գիշերով ռազմամթերք, հանդերձանք ու պարենամթերք էին բերում և թիկունք տանում վիրավորներին։

Լուսաբացին կռիվը վերսկսվեց, և այն պահին, երբ մեր քաջարի գվարդիականները ետ էին մղել թշնամու մի քանի հակագրոհ, տեղեկացրին, որ հակառակորդը, տարածվելով գետափի աջ ու ձախ կողմերում, փորձում է նվաճել մեր և հարևան զորամասերի միջև ընկած ազատ տարածությունը, սողոսկել մեր թիկունքը և շրջապատել մեզ։

Դիտակետից տեսա, որ մեր վիրավորներից մի քանիսը Բորոդաևկայից իջնում են գետափ, մյուս ափը անցնելու։ Նրանք կարող էին թշնամու ձեռքն ընկնել։ Կապավորի միջոցով անհապաղ զգուշացրի նրանց, ապա ճշտեցի հիտլերականների տեղը։ Պարզվեց, որ նրանք մեզնից 300—350 մետր հեռավորության վրա էին, գետափնյա թավուտներում պատսպարված, և, ըստ երևույթին, պատրաստվում էին թիկունքից անակնկալ հարվածել Բորոդաևկայում մարտնչող սովետական ստորաբաժանումներին։

Հապաղել չէր կարելի։ Որոշվեց վնասազերծել զորամասի թիկունքը թափանցած թշնամու խմբավորումը։ Հավաքելով դիտակետի մոտ եղած ավտոմատավորներին, հրամայեցի՝ ֆաշիստական ճիվաղներից անհապաղ մաքրել գետափնյա թփուտները։

Ավտոմատներով և հակատանկային նռնակներով զինված ռազմիկների խումբը շարժվեց գետափնյա թփուտները՝ դարանած հիտլերական հրոսակախմբերի վրա։ Առջևից գնում էր Ա. Օտավնովն ու նրա ընկերները։ Կռիվը Բորոդաևկայում թեժանում էր։ Գվարդիականները հակագրոհում էին։ Ոչ մի թիզ հող՝ սա էր նշանաբանը։

Թշնամու օդանավերը անընդմեջ ռմբակոծում էին Օրլիկ գյուղը։ Մենք զերծ էինք այդ ռմբակոծությունից, Բորոդաևկան ոչ մերն էր, ոչ թշնամունը։ Մեր «Իլ—2» օդանավերը ռմբակոծում էին թշնամու թիկունքը։

Թփուտների մեջ քողարկված, ընդհանուր շղթայով զգույշ առաջ էինք շարժվում, ականջ դնելով հակառակորդի կողմից եկող ամեն մի փոքր խշշոցին, կամ ձայնին։ Ա. Օտստավնովն ու իր ընկերը կանգ առան, պայմանական նշանով ցույց տվին թշնամու մոտ լինելը։ Ես պառկելու նշան արեցի։ Երբ սողալով հասանք Օտստավնովին, թշնամու դասավորությունը որոշելու համար մի պահ կանգ առանք։ Ապա գոչելով՝ «Հանո՛ւն հայրենիքի, գումարտա՛կ, առա՛ջ...» ես, որպես ազդանշան, կրակ բացեցի իմ ավտոմատից։ Մարտիկները ուռա գոչելով մեկ մարդու նման գրոհեցին։ Թշնամին հանկարծակիի գալով սկսեց խուճապահար փախչել։ Մեր ետևում լսվեցին կրակոցների ձայներ և ուռայի կանչեր։ Վիրավորներն էին. նրանք Զասյադկոյի գլխավորությամբ, ցավը մոռանալով, բամբ ձայնով ուռա էին կանչում։

Մեզ հաջողվեց փակել ճեղքվածքը, ֆաշիստները փախան, թողնելով 22 գերի, 3 ականանետ, 4 գնդացիր և այլ ռազմավար։ Կապը դիվիզիայի հրամանատարի և գնդի թիկունքի հետ վերականգնվեց, վիրավորները փոխադրվեցին մյուս ափը։ Երեկոյան նոր ուժեր ստացանք, և ճակատը կայունացավ։

Մարտերը Բորոդաևկա գյուղի շրջակայքում և գյուղում շարունակվեցին մի քանի օր։ Չնայած գյուղի կեսից ավելին մերն էր, ֆաշիստները դիրքերը չէին զիջում։

Չորրորդ, թե հինգերորդ երեկոն էր։ Մեր գումարտակներից մեկը հանկարծակի գրոհեց թշնամու խրամատների վրա։ Հիտլերականները չդիմանալով անակնկալ հարձակմանը, խուճապահար փախան, խրամատում թողնելով մեծ տրամաչափի չորս թնդանոթ, բավականաչափ արկեր։ Մարտկոցի հրամանատար Վերեշչագինին կարգադրեցի այդ հրանոթների փողերը դարձնել դեպի Արևմուտք և կրակ բացել. փույթ չէր, որ արկը նպատակին չէր ծառայի։ Մեզ հրետանու որոտն էր հարկավոր, որպեսզի թշնամու շարքերում խուճապ ստեղծվեր։

Մի քանի համազարկից հետո ինձ հեռախոսի մոտ կանչեցին։ Դիվիզիայի հրամանատարը հարցրեց։ «Կարո՞ղ եք հրանոթների մոտավոր կոորդինատներն ասել, մենք (Դնեպրի ձախ ափից) հեռահար հրետանիով կլռեցնենք դրանց»։ Գնդապետ Կոզակը կարծել էր, թե հակառակորդի արկերն են պայթում մեր դասավորության մեջ։

Երբ զեկուցեցի, որ դա մենք ենք կրակում, դիվիզիայի հրամանատարը զովեց և հանձնարարեց, որ իր անունից շնորհակալություն հայտնեմ գնդի բոլոր մարտիկներին ու սպաներին՝ մարտական գերազանց գործողությունների համար։

... Բորոդաևկան ազատագրեցինք։ Մարտական գործողությունները Դնեպրի աջ ափից շատ հեռու ծավալվեց։

Հյուսիսից և հարավից գործող մեր բանակները կրակի օղակի մեջ էին առնում ֆաշիստական այն զորամիավորումներին, որոնք ամեն ինչ անում էին Կիևը ձեռքից բաց չթողնելու համար։ Թշնամու դիմադրությունը խորտակվեց... Կիևի ազատագրման լուրը ցնծությամբ լցրեց ո՛չ միայն ուկրաինացիների, այլև սովետական բոլոր մարդկանց սրտերը։

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Գ. Հ.

Պահեստի գնդապետ, Սովետական Միության հերոս



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ 50-ՏԱՐԻՆ

**ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ Ռ. Ս.**

Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Հիսուն տարի առաջ Վլադիմիր Իլյիչն ստորագրեց առողջապահության ժողովրդական կոմիսարիատ կազմակերպելու վերաբերյալ դեկրետը։ Այն պատմական նշանակություն ունեցավ առողջապահության գործը մեր երկրում միանգամայն նոր սկզբունքներով կազմակերպելու համար։ Աշխատավորության բժշկա-սանիտարական օգնության կազմակերպման, նրա առողջության պահպանման սրբազան գործն ստացավ համաժողովրդական նշանակություն։*

*Բժշկական աշխատողները, սովետական ողջ ժողովրդի հետ, հանրագումարի բերելով առողջապահության գործում ձեռք բերված վիթխարի հաջողությունները, նոր միջոցառումների են դիմում նրա առավել կատարելագործման, նորանոր խնդիրների լուծման, թերությունների վերացման համար։*

*Սոցիալական մեծ վերափոխումների հիման վրա ժողովրդական առողջապահությունը մեր երկրում խոշոր հաջողությունների է հասել։ Ցարական կարգերից ժառանգված ծայրահեղ հետամնացության, համաճարակների, անառողջ կենցաղի, սոցիալական բնույթի հիվանդությունների վերացման և աշխատավոր ժողովրդի առողջության պահպանման, առողջ ու կենսուրախ սերնդի աճման համար քրտնաջան վիթխարի աշխատանք կատարվեց։*

*Երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման գերլարված պայմաններում, սովետական իշխանության ստեղծման առաջին իսկ տարիներին, քաղաքացիական պատերազմի ժամանակներում մեր կուսակցությունն ու կառավարությունը հնարավոր ամեն ինչ անում էին՝ փրկելու բանվորի, գյուղացու, կարմիր զինվորի, մեր ողջ աշխատավորության կյանքը։*

Ամեն ինչ մարդու, նրա առողջության համար,— *այս ուղենիշով է ընթացել ժողովրդական առողջապահությունը սովետական իշխանության տարիներին։ Անշուշտ, միայն բուժիչ միջոցառումները բավական չէին մարդկանց առողջության պահպանման, կյանքի երկարացման համար։ Դրան մեծ չափով նպաստել են մարդկանց կենսամակարդակի աճը, բնակարանային շինարարությունը, քաղաքների ու գյուղերի բարեկարգումը։ Երբեմնի բժշկական կանոնավոր բուժհիմնարկներից զուրկ երկրում ստեղծվել է բժշկական հիմնարկությունների լայն ցանց, հսկայական չափերով աճել է բժշկական աշխատողների թիվը։ Ցարական Ռուսաստանում, 1913 թ. տվյալներով, 10000 հոգուն ընկնում էր 2 բժիշկ։ Այժմ մեր երկիրը բժիշկների ապահովվածությամբ առաջ է անցել աշխարհի բոլոր, այդ թվում նաև կապիտալիստական զարգացած երկրներից։ Մեր երկրում այժմ աշխատում են մոտ 600 հազար բժիշկ. այլ կերպ ասած՝ սովետական երկրում աշխատում է աշխարհի բժիշկների քառորդ մասը։*



*Օրինական հպարտություն ենք ապրում՝ տեսնելով մեր երկրում առողջապահության բնագավառում ձեռք բերված հաջողությունները, որոնք մեծ դժվարությունների հաղթահարման արդյունք են։*

*Պետական կարևորագույն խնդիրների լուծման հետ միաժամանակ Լենինն անձամբ հետևում էր մեր երկրում բժշկական հիմնարկությունների ստեղծման, համաճարակների դեմ պայքարի կազմակերպման, մանուկների կյանքը փրկելու, առողջարաններ հիմնելու համաժողովրդական գործին։ Արխիվային բազմաթիվ փաստաթղթերը լույս են սփռում այդ մեծ ճանապարհի տարբեր էտապների վրա. դրանցից տեղեկանում ենք, որ ժողկոմխորհի նիստերում, առաջնորդի անմիջական նախագահությամբ ու մասնակցությամբ, քննարկվում էին աշխատավորության առողջապահության պահպանման մեկը մյուսից կարևոր բազմապիսի հարցեր։*

*Հաղթահարելով բազում դժվարություններ, մեր երկրում առաջադիմում է առողջապահության գործը։ Սովետական Միությունում այժմ կան ավելի քան 3 միլիոն հիվանդանոցային մահճակալ. միայն վերջին մեկ տարում դրանց թիվն ավելացել է ևս 100 հազարով, հաղթահարվել են շատ հիվանդություններ։ Վաղուց արդեն վերացել են ժանտախտը, խոլերան, բնական ծաղիկը, տուլյարեմիան, բորը, մալարիան։ Օրակարգի հարց է դիֆթերիայի, բծավոր տիֆի, տրախոմայի և մի շարք այլ վարակիչ հիվանդությունների իսպառ վերացումը։ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հակատուբերկուլյոզային պայքարում։ Սոցիալ-տնտեսական բարեփոխությունները, ժողովրդի կենսամակարդակի աճը բարերար ազդեցություն են թողնում բնակչության առողջության վրա։ Պակասել է մահացությունը, մարդը դարձել է երկարակյաց։*

*1967 թ. մեր երկրում մահացության ցուցանիշը, յուրաքանչյուր հազար բնակչի նկատմամբ, կազմում է 6,2, մինչդեռ Ամերիկայում այն հասնում է 8,2-ի, Անգլիայում՝ 9,2-ի, Ֆրանսիայում 9,1-ի։*

*Ժողովրդի առողջության վիճակն արտահայտող կարևոր ցուցանիշ է մանուկների մահացության չափը, որը բարոմետրի նման արտացոլում է յուրաքանչյուր երկրում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական տեղաշարժերը։ Այս տեսակետից նույնպես հպարտանալու իրավունք ունենք։ Բավական է նշել, որ մեր երկրում այժմ, ցարական Ռուսաստանի 1913 թ. տվյալների համեմատությամբ, մանուկների մահացության մակարդակն իջել է 10 անգամ։*

*Սովետական առողջապահության հսկայական հաջողություններն առանձնապես ակնառու են մեր հանրապետությունում՝ Հայաստանում։*

*Հին է հայ բժշկությունը, նրա ակունքներն անհիշելի ժամանակներից են գալիս։ Հայաստանում լայնորեն զարգացած է եղել ժողովրդական բժշկությունը. մարդկանց բուժելու ազնիվ միջոցները դարեր շարունակ փոխանցվել են սերունդներին, պահպանվել են ժողովրդի հանճարի արտահայտությունը կազմող դեղագրերը, բուժման արդյունավետ հնարները։ Հայ բժշկությունն աշխարհին տվել է ականավոր ներկայացուցիչներ, որոնք զարդարում են միջազգային բժշկական մտքի համաստեղությունը։ Մխիթար Հերացու, Գրիգորիսի, Ամիրդովլաթի և մյուս բժշկապետերի գործերը հասել են մեզ որպես հայ բժշկական մտքի անմահ մասունքներ։ Եվ, պատահական չէ, որ միջնադարի հայ ան-*

վանի բժիշկ Մխիթար Հերացու ծննդյան 850-ամյակի տոնակատարությունը դուրս եկավ բժշկական նեղ շրջանակներից, ստանալով համաժողովրդական-պետական նշանակություն:

Անցյալում Ռուսաստանի բժշկագիտական կենտրոններում կրթություն են ստացել հայ շատ անվանի բժիշկներ, որոնք աչքի են ընկել հարազատ ժողովրդին անսահման նվիրվածությամբ, ժողովրդի հոգսերով ապրելու վառ օրինակ հանդիսացել: Նրանցից էր բժիշկ Մարգար Առուստամյանը, որին ռուս ականավոր գրող Կորոլենկոն դարձրեց իր հայտնի պատմվածքի հերոսը, նրա հակախոլերային պայքարը որակելով որպես «իսկական հերոսություն»:

Մի քանի տարի առաջ նշվեց հայ անվանի գուսան Սայաթ-Նովայի հոբելյանը, որի գործերը, Թումանյանի խոսքերով ասած՝ ժամանակի ամենակուլ բերանից փրկեց բժիշկ Գևորգ Ախվերդյանը, որն իր գիտելիքների շնորհիվ հասավ մինչև Ռուսաստանի ռազմական մինիստրի անձնական բժշկի աստիճանին: Սակայն մինիստրի «Ինչո՞վ վարձահատույց լինեմ Ձեզ» հարցին Ախվերդյանը պատասխանեց՝ «Թույլ տվեք մեկնել Կովկաս և ծառայել իմ հարազատ խալխին»: Եվ թողնելով արքունիքը, անձնվիրաբար ծառայեց իր հարազատ ժողովրդին:

Սակայն, չնայած այսպիսի ականավոր ու հայրենասեր բժիշկների առկայությանը, մինչև սովետական իշխանությունը Հայաստանի բնակչությունը փաստորեն զրկված էր բժշկական քիչ թե շատ պատշաճ օգնությունից: 1913 թ. Հայաստանի ներկա տերիտորիայում եղել են ընդամենը 70 բժիշկ և մոտ 220 հիվանդանոցային մահճակալ: Տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը նպաստավոր պայմաններ էր ստեղծել համաճարակների, սոցիալական հիվանդությունների տարածման համար: Վիճակն անմխիթար էր, հատկապես, 1918—1920 թթ.: «էջմիածնի գավառում այս տարի երեք անգամ ավելի շատ մարդ է մահացել, քան ծնվել է»,— 1919 թ. իր զեկուցագրում գրել է գավառի միակ բժիշկը:

Հայաստանում հատկապես տարածված էր մալարիան. լինում էին տարիներ, երբ Արարատյան դաշտում ամռանը և աշնանը շատ գյուղերի համարյա բոլոր բնակիչներն անկողին էին ընկնում և բերքը մնում էր դաշտում, ձյան տակ:

Ինչպես դեղին տենդն ստիպեց տարիներ շարունակ հետաձգել Պանամայի ջրանցքի կառուցումը, այնպես էլ, ինչպես նշում է դեկաբրիստ Լաչինովն իր հուշերում, Հայաստանում մոլեգնող մալարիան ստիպեց ռուսական զորքերին միառժամանակ դադարեցնել Երևանի բերդի պաշարումը:

Սովետական իշխանության տարիներին փաստորեն դատարկ տեղում սկսվեց առողջապահության գործը:

Դեռևս 1920—21 թթ. Սովետական Հայաստանի կառավարությունն իր առաջին դեկրետներով միջոցներ ձեռնարկեց առողջապահական օրգանների ստեղծման, մոր ու մանկան առողջության պահպանության, սանիտարական գործի բարելավման ուղղությամբ: Նորաստեղծ սովետական իշխանությունը, առողջապահության օրգանները մեծ ջանքեր գործադրեցին հանրապետությունում այն ժամանակ մոլեգնող բազում համաճարակների՝ անցյալի այդ անիծված «ժառանգության» դեմ պայքարելու համար: Վաղուց է, ինչ Հայաստանի առողջապահության մինիստրության հաշվետվության «մալարիա» սյունակում գրվում է՝ 0: Համաժողովրդական նշանակություն ունեցող շատ



կարևոր հաղթանակ էր այդ, հանրապետությունում սոցիալ-տնտեսական արմատական փոփոխությունների, սովետական իշխանության տարիներին կատարված կուլտուրական հեղափոխության, ինչպես և ժողովրդական առողջապահության օրգանների նպատակասլաց, հետամուտ աշխատանքի արգասիք: Ռեալ նախադրյալներ են ստեղծվում դիֆթերիայի, բրուցելյոզի և այլ հիվանդությունների վերացման համար:

Այս բոլորը մեր նոր սերնդին սովորական, բնական երևույթ է թվում: Բայց աշխարհում դեռևս քիչ չեն այնպիսի երկրներ, ուր այսօր, քաղաքակրթության մեր դարում, համաճարակները տարածված են այնպես, ինչպես, ասենք, Հայաստանում սրանից կես կամ մեկ դար առաջ: Առողջապահության միջազգային կազմակերպության անցյալ տարվա տվյալներով աշխարհում մալարիայով տառապում էին 400 միլիոն մարդ:

Սակայն կյանքը նորանոր խնդիրներ է առաջադրում, հիվանդությունների տարածման երեկվա «նորմալ» թվացող մակարդակն այսօր արդեն անհանդուրժելի է: Օրակարգի հարց են դառնում դիֆթերիայի, տուբերկուլյոզի, բրուցելյոզի, որովայնային տիֆի և այլ հիվանդությունների նվազեցումը, ապա՝ իսպառ վերացումը: Իսկ այդ մեծ նպատակների իրագործման համար մեզ մոտ ստեղծվում են տնտեսական, կուլտուրական, ժողովրդական առողջապահության ռեալ հնարավորություններ:

Ծավալուն աշխատանք է տարվում Հայաստանի քաղաքներն ու շրջանները բժշկական կադրերով լիովին ապահովելու նպատակով: Այժմ մեր հանրապետությունում բժիշկների թիվն անցնում է 6,5 հազարից (յուրաքանչյուր 380 մարդուն ընկնում է մեկ բժիշկ): Բժիշկների ապահովվածությամբ Հայաստանն այժմ առաջնակարգ տեղ է գրավում աշխարհում:

Մեր քաղաքներում ու գյուղերում կան մոտ 20 հազար հիվանդանոցային մահճակալ: Այժմ չկա որևէ շրջան, ուր բոլոր հիմնական մասնագիտությունների գծով բժիշկներ չլինեն: Շրջանային հիվանդանոցներն այժմ դարձել են գյուղական բնակչության մասնագիտացված բժշկական օգնության կազմակերպման կենտրոններ: Այլևս մարդիկ կարիք չունեն վիրաբուժական բարդ վիրահատությունների համար ամենահեռավոր շրջաններից անգամ Երևան գալ, քանի որ բարձրորակ բուժօգնություն նրանք կարող են ստանալ տեղում: Վերջին տարիներս շահագործման հանձնված Նոյեմբերյանի, Արարատի, Շամշադինի, Մարտունու, Բասարգեչարի և այլ շրջանների հիվանդանոցներն իրենց հարմարություններով չեն զիջում մայրաքաղաքի առաջնակարգ հիվանդանոցներին:

Տարեցտարի աճում են ժողովրդական առողջապահությանը հատկացվող պետական ներդրումները: Այսպես՝ 1957 թ. հանրապետությունում առողջապահության կարիքների համար ծախսվել է 28 միլիոն, 1961-ին՝ 40, 1964-ին՝ 47, իսկ 1967-ին 65 միլիոն ռուբլի: Մեծանում է նաև մասնագիտացված բուժհիմնարկների թիվը: Վերջին ժամանակներում մեզ մոտ ըստեղծվել են ռադիոբիոլոգիայի սեկտոր, փորձարարական կենսաբանության, բժիշկների կատարելագործման, բիոքիմիայի ինստիտուտներ, մի շարք լաբորատորիաներ: Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտում (որի համար վերջերս կառուցվել է հետազոտական, ինչպես և դեղորայքի արտադրական շենքերի հսկայական կոմպլեքս) սինթեզվել է զգալի քանակությամբ արդյունավետ դեղորայք, որոնք լայնորեն կիրառվում են ո՛չ միայն մեր հան-

բապետության բուժհիմնարկություններում, այլև նրա սահմաններից դուրս։

Սովետական Միության սահմաններից դուրս հայտնի են ակադեմիկոս Արմենակ Մնջոյանի ղեկավարությամբ գործող նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի հայտնագործած դիտիլին, գանգլերոն, քվատերոն և այլ դեղանյութեր։

Անտարակույս, որքան էլ մեծ լինեն մեր հաջողությունները ժողովրդական առողջապահության բարելավման բնագավառում, բնակչության բժշկասանիտարական սպասարկման վիճակը, հիվանդությունների հաղթահարման ներկա տեմպերը դեռևս անբավարար են։ Առանց երկբայության կարելի է ասել, որ չօգտագործվող հնարավորություններ շատ կան։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում բժշկական աշխատողների կարևորագույն խնդիրն է համարվում բնակչության դիսպանսերային սպասարկումը։ Ստեղծվել են ռեալ հնարավորություններ մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացու, առավել ևս նյութական բարիքներ ստեղծող բանվորների ու կոլտնտեսականների առողջությանը դիսպանսերային ձևով հետևելու համար, որպեսզի մասսայական կանխարգելիչ ստուգումների միջոցով ժամանակին հայտնաբերվեն նոր սկսվող, դեռևս ֆունկցիոնալ վիճակում գտնվող հիվանդությունները։ Այդ հնարավորություն կընձեռի ժամանակին և արդյունավետ կազմակերպելու բուժումը, աշխատանքի, հանգստի առողջարանային բուժման անհրաժեշտ պայմաններ ստեղծելու հիվանդների համար, ակտիվ պայքարելու հանուն մարդկանց առողջության պահպանման։

Չափազանց կարևոր է հատկապես այնպիսի հիվանդությունների ժամանակին ախտորոշումը, ինչպիսիք են՝ տուբերկուլյոզը, ստամոքսի խոցը, հիպերտոնիան, քաղցկեղը և այլն, քանի որ ժամանակին սկսված բուժումը անհամեմատ արդյունավետ է։ Մինչդեռ պատահում է, որ հիվանդությունը հայտաբերվում է այն ատիճանում, երբ բժշկությունը, ինչպես ասում են, այլևս անելիք չունի, այնինչ ախտորոշման համար մենք ունենք զորեղ հնարավորություններ (բանվորների ու ծառայողների մասսայական պրոֆիլակտիկ ստուգումները, կանխարգելիչ միջոցառումները և այլն, և այլն)։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ոչ մի բանվոր աշխատանքի չընդունվի առանց բժշկական ստուգման. դրանից հետո ևս այդպիսի ստուգումները պետք է լինեն պարբերաբար։

Ինչպես մեր ողջ Միությունում, այնպես էլ Հայաստանում զարգանում, առաջ է ընթանում բժշկագիտությունը. վաստակաշատ գիտնականներին փոխարինելու է գալիս երիտասարդների նոր սերունդ։ Վերջին տարիներս հանրապետությունում բուռն զարգանում է բժշկագիտության այնպիսի մասնաճյուղ, ինչպիսին է սրտային, թոքային, դիմա-ծնոտային վիրաբուժությունը։ Հայաստանում արդեն կատարվել են 500 սրտային վիրահատություն։

Հայաստանի անվանի գիտնականներ Լևոն Հովհաննիսյանի, Արտո Ալեքսանյանի, Հրաչյա Բունիաթյանի, Սեդրակ Շարիմանյանի, Անդրանիկ Մեհրաբյանի, Սիմոն Միրզոյանի, Լևոն Հարությունյանի, Իվան Գևորգյանի և շատ ուրիշների ուսումնասիրությունները հայտնի են միութենական և միջազգային գիտական շրջաններում։ Մեր գիտնականները զեկուցումներով հանդես են գալիս աշխարհի տարբեր երկրներում հրավիրվող միջազգային գիտաժողովներում, նրանց աշխատությունները տպագրվում են Մոսկվայում, արտասահմանում։

Չարորակ նորագոյացությունների պատճառների ուսումնասիրման



բնագավառում մեծարժեք աշխատանք է կատարվում Երևանի ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտում։ Ինստիտուտի դիրեկտոր, ակադեմիկոս Բարթուղիմեոս Ֆանարջյանի աշխատությունները հրատարակվել են աշխարհի տարբեր լեզուներով, սեղանի գիրք դարձել մեր երկրի բժշկական ինստիտուտների ուսանողների համար։

Ամեն տարի շահագործման են հանձնվում պոլիկլինիկաների նորակառույց հարմարավետ շենքեր, ուր տեղադրվում են ախտորոշիչ ու բուժիչ նորագույն սարքավորումներ։

Գնալով ընդլայնվում է Հայաստանի դեղատնային ցանցը։ Լեռնային ամենահեռավոր բնակավայրերում ապրողն անգամ անհրաժեշտ դեղորայք կարող է ձեռք բերել գյուղական դեղատանը կամ դեղատնային կրպակում, որոնց ընդհանուր թիվը հանրապետությունում 700-ի է հասնում։

Հատկապես վերջին տարիներս զգալիորեն բարելավվել է բնակչության մասնագիտական բուժօգնության կազմակերպումը։ Բացվել են դեռահաս ծնվածների առանձին բաժանմունքներ, մանկական վիրաբուժության ստացիոնարներ, ախտորոշիչ և բուժման այլ կաբինետներ։

Բանվորների առողջապահության գործը միշտ եղել է առողջապահական օրգանների ամենօրյա հոգսը։ Այդ նպատակով բժշկա-սանիտարական հատուկ հիմնարկություններ են գործում Երևանի Կիրովի անվան և ալյումինի գործարաններում, Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում և արդյունաբերական այլ օբյեկտներում։ Աշխատանքի պաշտպանության, հիվանդությունների կանխման բնագավառում չափազանց կարևոր է գործարանային բժշկի դերը։ Այդ ուղղությամբ հանրապետությունում զգալի գործ է կատարում աշխատանքի պաշտպանության և պրոֆեսիոնալ հիվանդությունների Հրազդանի գիտահետազոտական ինստիտուտը։

Հայաստանում չկա մի բնակավայր, ուր առողջապահական որևէ հիմնարկություն չլինի։ Պոլիկլինիկաները, դիսպանսերները, կոլտնտեսային ծննդատները, բուժակա-մանկաբարձական կայանները ծառայում են բնակչության առողջության պահպանման նվիրական գործին։

Ղափանի հանքափորներին առկայանի բժշկից բացի, երբ հարկ է լինում, սանիտարական ավիացիայի միջոցով այցելում են հանրապետության անվանի մասնագետները։ Գնալով ընդլայնվում է մայրաքաղաքի գիտական կենտրոնների կողմից շրջաններին ցույց տրվող օգնությունը։

Առողջարանային շինարարությունը Հայաստանում սկսվեց միայն սովետական կարգերում։ Դիլիջանը և Արզնին դրանց առաջնեկներն էին, որից հետո առողջարանների և հանգստյան տների շինարարությունը լայն թափ ստացավ Ջերմուկում, Ծաղկաձորում, Աղավնաձորում, Հանքավանում, Ախթալայում, Գյուլագարակում...

Հանքային բուժիչ ջրերի նոր աղբյուրներ են հայտնաբերվում հանրապետության ամենատարբեր վայրերում և երբեք չպետք է անքաթող անել այդ վայրերը, այլ ինչպես հարկն է օգտագործել դրանք, վերցնել բնությունից այն ամենը, ինչ այն կարող է տալ մարդու առողջության համար։



## ԿՅԱՆՔԸ ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐՈՒՄ

# ՄԱՄՈՒԼԸ ԿՅԱՆՔԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## (ԿՈՒՍԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՐՑԵՐԻՑ)

Քառասունութ տարի է անցել այն օրերից, երբ Հայաստան լեռնաշխարհում, հինավուրց այս հողի վրա և մարդկանց հոգիներում սկիզբ առավ պատմական մի նոր ընթացք, որի ամեն մի քայլն ու հանգրվանը դարերի խորհուրդ էին բերում իրենց հետ՝ հազարամյակների միջով անցած ժողովրդի համար:

Նոր կյանքի կառուցումը նշանավորում էր արմատական բեկում մարդկանց մտածումների, հնօրյա ըմբռնումների, հոգեկան ողջ աշխարհի մեջ, մերժում, բացասում էր հնից եկող հոգևոր կաշկանդումների բեռը՝ եսամոլությունը, անհատապաշտությունը, հոռի ու մոլի կրքերը, նոր թևեր ու սլացք տալիս մարդկային ազնիվ մղումներին, նշում երազանքի ու իրականի ներդաշնակության ճշմարիտ ուղիները...

Եվ կոմունիստների կուսակցությունը, որն իր ձեռքն էր վերցրել ժողովրդի պատմական առաջընթացի ղեկը, գործի դրեց հասարակական ներգործության բոլոր շարժափոկերը, այդ թվում և այնպիսի զորավոր միջոց, ինչպիսին պարբերական մամուլն է: Այսօր, երբ թերթում ենք սոցիալիստական տարեգրության առաջին էջերը, մեր առջև հառնում են դժվարին, բայց հախուռն ու հերոսական պայքարի դրվագներ, որ դրոշմվել ու սերունդներին են ավանդվել սովետահայ առաջին պարբերականների էջերում: Մենք հասու ենք լինում մամուլի ծավալած ագիտացիոն-պրոպագանդիստական, կազմակերպչական նշանակալից աշխատանքին՝ նոր հասարակարգի կառուցման դժվարին պայմաններում:

Սովետահայ պարբերական մամուլը կյանքի խորքերից էր քաղում իր նյութերը, շնչում սոցիալիստական վերաշինության պաթոսով, կենսական խնդիրներ արծարծում, ոգեշնչվում ու ոգեշնչում մեծ ու փոքր հաջողություններով, այպանում խորթն ու խոտելին, անխոնջ պայքարում նորի հաստատման ու վերջնական հաղթանակի համար: Հարուստ ու հետաքրքրական է սովետահայ մամուլի անցած ուղին, նաև ուսանելի՝ նոր կյանքի հետ ունեցած իր սերտ կապի հազարավոր թելերով, սկզբունքային պայքարով, կուսակցությանն ու ժողովրդին ծառայելու մղումներով:

Ստորև կանդրադառնանք սովետահայ առաջին պարբերականների գործունեության մի քանի կողմերին, մասնավորապես՝ կուսակցական շինարարության և կոմունիստական ագիտացիայի ու պրոպագանդայի գործնականության խնդիրների քննարկմանը 20-ական թվականների առաջին տարիներին:

* * *

Սովետական իշխանության հաստատումից հետո, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել էր կառավարող, առանձնապես հրատապ էր կուսակցական բջիջների, գավառային ու գավառակային կազմակերպությունների ու կենտրոնի միջև սերտ կապ ստեղծելու, կուսակցական ինֆորմացիան կանոնավորելու խնդիրը, որն արծարծվում էր թե՛ բջիջների ժողովներում ու գավառային կոնֆերանսներում, թե՛ ՀԿ(բ)Կ Կենտկոմի շրջաբերականներում ու հրահանգներում և թե՛ Հայաստանի կոմկուսի՝ վերականգնման տարիներին հրավիրած չորս համագումարներում: Այդ խնդրի լուծման կարևոր և ամենաարդյունավետ միջոցներից մեկը պարբերական մամուլի, մասնավորապես կուսակցական տպագիր խոսքի լայն օգտագործումն էր: Այդ շրջանի պարբերականներում, տեղական կուսբջիջների աշխուժացմանը զուգընթաց՝ ամենայն սրությամբ հարուցվում են կենտրոնի հետ կապերն ամրապնդելու, հաղորդակցության միջոցները կանոնավորելու, կուսակցական աշխատանքի ռիթմիկ ընթացքն ապահովելու հարցերը: Այս առնչությամբ անդրադառնալով ՀԿ(բ)Կ II համագումարում եղած այն ելույթներին, որոնց մեջ դառնությամբ ընդգծվեց տեղերի ու կենտրոնի կապի և փոխադարձ ազդեցության թուլությունը», «Խորհրդային Հայաստան»-ը նշում էր, որ գավառներում աշխատող կուսակցական ընկերները, դժբախտաբար, զլանում են իրենց չափազանց կարևոր գործնական փորձը պարզաբանել մամուլի էջերում, մինչդեռ այդպես վարվելու դեպքում «կուսակցությունն իր ամբողջությամբ հնարավորություն կունենար անմիջապես ընդհանրացնել տեղերի փորձը, և ոչ թե համագումարից համագումար սպասել այդ անհրաժեշտ աշխատանքը կատարելու» («Խ. Հ.», 1923, № 53):

Բջիջների կազմակերպական-գաղափարական ամրապնդման, փոփոխված իրադրությանը համապատասխան աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների որոնման, կուսակցական կարգապահության և բազմաթիվ այլ խնդիրներ կենտրոնական տեղ են գրավում ինչպես Կենտկոմի օրգաններում («Խորհրդային Հայաստան», «Աղքատ գյուղացի», «Коммунист»), այնպես էլ գավառական թերթերում («Կարմիր Լոռի», «Բանչպար», «Կարմիր Շիրակ», «Մուրճ ու Մաճ», «Կարմիր ռաշպար»): Իհարկե, հոդվածագիրները միշտ չէ, որ ճշգրիտ, ընդունելի տեսակետներ են հայտնել. սպրդել են նաև սխալ, պարզապես անընդունելի մտքեր ու կարծիքներ: Այսպես, օրինակ, Զմռռանենք կուսակցությունը վերնագրով հոդվածում (տե՛ս «Խ. Հ.», 1921, № 177) Ե. Զուբարը, որ մեր հանրապետության առաջին տասնամյակի ականավոր ժուռնալիստ-հրապարակախոսներից էր, մի շարք ճշմարիտ ու հրատապ հարցադրումների հետ միասին թույլ է տվել նաև մի վրիպում: Իրավացի էր նա, երբ առաջարկում էր բազմակողմանի ու հանգամանորեն զբաղվել կուսակցական շինարարության խնդիրներով, չբավարարվել ձեռք բերած հաջողություններով՝ շեշտը դնելով աշխատավորների ինքնագործունեության լուսաբանման վրա: Իրավացի էր նա, երբ գրում էր, թե այդ կարևորագույն խնդրի կենսագործման համար «ամեն մի կոմունիստից պահանջվում է ունենալ և հայտաբերել նախաձեռնության ոգի»: Բայց մոլորության մեջ էր հեղինակը, երբ կարծում էր, թե նոր կյանքի շինարարության միակ ռեզերվը իրենք՝ կոմունիստներն են:

Ընդգծենք, սակայն, որ մամուլի գործունեության այդ շրջանի համար բնորոշը կուսշինարարության խնդիրների քննարկումն էր՝ սկզբունքորեն ճիշտ ելակետերից, իրականության ռեալ զգացողության և համակուսակցական հրատապ խնդիրների խոր գիտակցության վրա խարսխված դաստիարակչական-կազմակերպչական ակտիվ աշխատանքը:

Վերոհիշյալ հարցերի արծարծումը մամուլում բխում էր կուսկազմակերպությունները ՀԿ(բ)Կ I և II համագումարներին նախապատրաստելու պրակտիկ անհրաժեշտությունից: Գավառական կոնֆերանսներն ի հայտ էին բերում մի շարք բացեր, որոնք, առաջին հերթին, կապված էին կուսակցական շինարարության կարևորագույն, գործնական խնդիրների անբավարար դրվածքի հետ: Աշխատավոր զանգվածներին երկրի քայքայված տնտեսության վերականգնման ոլորտը ակտիվ ներգրավելու համար անհրաժեշտ էր խորապես ըմբռնել ու հստակ պատկերացնել կուսակցության տնտեսական քաղաքականության և մղած գաղափարական պայքարի սկզբունքները: Մամուլը լուրջ թերություն էր համարում այն իրողությունը, որ որոշ կազմակերպություններ չեն կարողանում մասսայական-կազմակերպչական աշխատանքի մեթոդները համապատասխանեցնել կյանքի առաջադրած նոր պայմաններին, դրանով իսկ ո՛չ միայն թուլացնելով մասսաների վրա իրենց ներգործությունը, այլև, ըստ էության, խախտելով կուսակցական կարգապահությունը, որի աղբյուրը պետք է փնտրել ոչ թե հրամանների ու հրահանգների, այլ «կուսակցական դաստիարակչական, կուլտուր-կրթական անշեղ աշխատանքների, մեր նոր տնտեսական քաղաքականության կատարյալ ըմբռնման ու նրա կիրառման մեջ»: «Մեր գավառական ընկերներից ոմանք ժառանգել և յուրացրել են «զինվորական կոմունիզմի» «ֆորման», անտես առնելով նրան պայմանավորող բովանդակությունը»: Այդ է պատճառը, որ նրանք շարունակում են նույն մեթոդներով գործել նաև այժմ, «քաղաքացիական կռվից հետո էլ, երբ մենք թևակոխել ենք շինարար կոմունիզմի շրջանը՝ իր նոր ներքին բովանդակությամբ, որը միակ աղբյուրը պիտի լինի կուսակցության դիսցիպլինայի» («Խ. Հ.», 1922, № 5):

* * *

Կոմբջիջների աշխուժացման, գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպման անհրաժեշտությունը պարբերական մամուլի համար օրակարգի հարց դարձրեց փոփոխված իրադրությանը համապատասխան ձևեր ու մեթոդներ մշակելու պահանջը:

Կոմունիստական ագիտացիան ու պրոպագանդան համարելով աշխատավորության կազմակերպման ու դաստիարակության, սովետական իշխանության շուրջը նրանց համախմբման գործոններից մեկը, «Կոմունիստ»-ն առաջին իսկ համարներից մեծ ուշադրություն նվիրեց կուսակցության գաղափարական աշխատանքի այդ կարևոր բնագավառին: 1920 թ. դեկտեմբերից 1921 թ. փետրվարն ընկած ժամանակամիջոցում ագիտացիոն-պրոպագանդիստական գործի կազմակերպման ու բարելավման խնդիրներին նվիրվել են ավելի քան հարյուր նյութ, այդ թվում՝ բազմաթիվ առաջնորդողներ, տեսական-բացատրական և բանավիճային հոդվածներ, դիտողություններ:

Այդ ամենի մեջ, ինչպես և հետագայում տպա-

գրված նյութերում, կարմիր թելի պես անցնում է ագիտացիայի ուժեղացման պահանջը: Քաղաքական ագիտացիան, բացատրում էր թերթը, չպետք է հանգեցնել անվերջ միտինգային ճառերի, այն իր արտահայտությունը պիտի գտնի կոմունիստական շինարարության հերթական խնդիրները պարզաբանող զեկուցումներում ու հոդվածներում: Թերթը դատապարտում էր վերացական, անարյուն ճառաբանությունները, դրանք համարելով «միտինգոմանիայի» արդյունք: «...Խորհրդային իշխանությունը ապրում է «ոչ միայն բանիվն կոմունիստի», այլև հացիվ: Իսկ կոմունիստական կուսակցության հացը, որ սպասում է նրանից աշխատավորությունը, դա կարգավորումն է ու կանոնավորումը կյանքի բոլոր ճյուղերում՝ հօգուտ բանվորների և գյուղացիների» («Կոմունիստ», 1920, № 5):

Սովետահայ մամուլը միշտ էլ անքակտելի միասնության մեջ է դիտել կոմունիստական ընդհանուր գաղափարների, կոմունիստական կուսակցության քաղաքական-տնտեսական կոնկրետ գործելակերպի պրոպագանդման և ագիտացիոն-մասսայական աշխատանքի գործնականության խնդիրները: Վերջին հաշվով գաղափարական-պրոպագանդիստական, տեսական ողջ գործունեությունը, ինչպես և կոնկրետ, գործնական ագիտացիան սոցիալիզմի կառուցման կուսակցական ծրագրի կենսագործման համար մղված պայքարի օղակներից էին: Գաղափարական աշխատանքում կենսական նշանակություն ուներ մասսաներին մերձենալու խնդիրը: «Հայաստանի աշխատավոր բնակչության հոծ մեծամասնության կատարյալ անգրագիտության և բուրժուազիայի ու կուլակների կողմից ցույց տրված հակագործությունների պայմաններում,— գրում էր «Խորհրդային Հայաստան»-ը,— անհրաժեշտ է բոլոր ուժերի լարումն, օգտագործումն բոլոր հնարավորությունների՝ լայն, անդադրում ագիտացիայի ու պրոպագանդայի համար» (1921, № 86):

Հանդես գալով ագիտացիոն աշխատանքները խորացնելու և արգասավոր դարձնելու կոչով, պարբերական մամուլը միաժամանակ քննադատում էր ագիտացիայի նշանակության ու դերի գնահատման՝ անընդունելի, թյուր ըմբռնումների զանազան դրսևորումները, որոնք կարելի է հանգեցնել երկու հիմնական տենդենցների: Դրանցից մեկի ելակետը հետևյալն էր. քանի դեռ չի վերացված աշխատավորության, մասնավորապես գյուղացիության ընդհանուր անգրագիտությունը, չի կարելի մտածել նրա քաղաքական հասունության մասին, ուրեմն, դեռևս վաղաժամ է ագիտացիայի ծավալման խնդիր առաջադրելը, որովհետև այն՝ վերոհիշյալ պատճառով, ի սկզբանե դատապարտված կլինի ձախողման: Այդպես մտածել, գրում էր «Խորհրդային Հայաստան»-ը, նշանակում է «չարաչար սխալվել». անգրագիտության վերացումը և քաղաքական հասունությանը նպաստող միջոցառումները հակադրել միմյանց, այդ միևնույն է, թե «յոթ տարեկան երեխային համեմատել քառասուն տարեկան մարդու հետ և միանգամայն անտես առնել վերջինիս կյանքի փորձառությունը»: «Այդ երկու աշխատանքները,— շարունակում էր թերթը,— մեկ մեկու չեն խանգարում և կարելի է երկուսն էլ միաժամանակ տանել. այդ տեսակետից պետք է մենք օրինակ վերցնենք Ռուսաստանից («Խ. Հ.», 1922, № 5):

Երկրորդ տենդենցի կողմնակիցները ագիտացիան չէին դիտում իբրև վաղահաս մի պտուղ, նրանք նույնիսկ գտնում էին, թե այն հսկայական գործ է կատարել և մեծ ծառայություններ ունի հեղափոխական հաղթարշավում... Բայց այդ ամենի մասին նրանք խոսում էին իբրև անցած-գնացած մի բան. իսկ այժմ, երբ ավարտվել է հեղափոխության առաջին շրջանը, վերջացել են քաղաքացիական կռիվները, դատում էին նրանք, եկել է «կոմունիզմի պետական պրոպագանդայի» ժամանակը և այլևս «ագիտացիա անելու» կարիք չկա, «ագիտացիոն աշխատանքը այլևս խաղալիք դեր չունի»: Նման կարծիքները գնահատելով իբրև աշխատավորների քաղաքական դաստիարակության կարևորության անտեսում և կուսակցության ագիտացիոն գործունեության մերժում, «Խորհրդային Հայաստան»-ը գրում էր. «Խոսել ագիտացիայի իսպառ վերացման մասին, նշանակում է խաչ քաշել աշխատավորության կուլտուր-քաղաքական զարգացման վրա և այս ասպարեզը թողնել պատահական անձանց և հոսանքների վնասակար ազդեցության»: Իրադրության փոփոխությունը, երկրի առջև ծառացած նոր խնդիրները պահանջում են նոր բովանդակություն հաղորդել ագիտացիային, առավել նպատակասլաց դարձնել այն, գտնել մասսաների վրա ներգործելու նոր մեթոդներ ու ձևեր: Ավելին, շարունակում էր թերթը, ամեն անգամ, երբ փոխվում են պայմանները, ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ են հառնում կոմունիստական ագիտացիայի առջև (տե՛ս «Խ. Հ.», 1923, № 163):

Այս ամենը վկայում է, իհարկե, պարբերական մամուլի ջանքերի նպատակասլացության մասին: Այդուհանդերձ, ճիշտ չէր լինի անտեսել, որ իր իսկ՝ մամուլի էջերում ևս, հատկապես տեղական պարբերականներում, երբեմն սպրդում էին ագիտացիայի նշանակության ու դերի սխալ, սխոլաստիկ ըմբռնումներ, որոնք ըստ էության, համընկնում էին նույն այն տեսակետներին, որոնց դեմ հանդես էր գալիս մամուլը: Գաղափարական աշխատանքը տնտեսական շինարարության խնդիրներից անջատ դիտելու, ագիտացիան որպես ինքնամփոփ գործոն ներկայացնելու տենդենց էր նկատվում, օրինակ, «Կարմիր Շիրակ» թերթի առաջին համարներում: Մեր հերթական խնդիրները խմբագրականում գերագնահատվում, պարզապես բացարձակացվում էր ագիտացիայի դերը. «Ներկա պայմաններում,— գրում էր թերթը,— ուղիղ, ճշմարիտ, հետևողական տարված խոսքն ամենամեծ գործն է...» («Կարմիր Շիրակ», 1921, № 3):

Նման սայթաքումները, իհարկե, էական արժեք չունեին այն նշանակալից դերի համեմատությամբ, որ խաղաց մեր պարբերական մամուլը ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքները նպատակասլաց դարձնելու գործում:

* * *

Կուսակցական աշխատանքի մեթոդների կատարելագործումը, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի ծավալման շահերը սովետական իշխանության առաջին տարիներին համընդհանուր անհրաժեշտություն էին դարձրել հետևողական պայքարը ֆրազամոլության դեմ՝ դրան ուղեկցող բազմաթիվ մերժելի աշխատանքային ոճերի ու մեթոդների հետ մեկտեղ: Այդ շրջանում սուր ու կրքոտ ելույթներ էր ունենում հատկապես «Правда»-ն, որին հետևում էին ազգային լեզուներով լույս տեսնող կուսակցական պարբերականները: «Правда»-ն հանդես էր գալիս, մասնավորապես, նոր հասարակական կյանքի կազմակերպմանը խոչընդոտող, ստեղծագործ աշխատանքը կաշկանդող այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք էին՝ ժողովամոլությունը, ֆորմալիզմը, արտաքին ռեկլամը: «Ոչ թե ֆրազա, այլ գործ»,— գրում էր «Խորհրդային Հայաստան»-ը, արձագանքելով Վ. Ի. Լենինի՝ Մենք կոչ ենք անում գործողության, գործնական աշխատանքի պատգամին: Վնասից բացի ոչինչ չի կարող տալ իրադրության բարդ ու հակասական հարցերի, դժվարությունների, չլուծված խնդիրների անտեսումը, հապճեպ, ամեն ինչ խոսքով «լուծելու» մոլորությունը:

Անդրադառնալով մեր հանրապետության առանձին ժողկոմատների գործունեության մեջ տեղ գտած թերություններին, թերթն իր 1921 թ. № 209-ի «Կենդանի գործ» խորագրով խմբագրականում գրում էր. «Ծրագրերն ինքնին լավ բան են: Ծրագրերն անհրաժեշտ են լայն ու շինարար գործունեության ժամանակ, բայց այդ ծրագրերի էությունը պիտի բխի տվյալ երկրի օբյեկտիվ պայմանների, աշխատավոր ժողովրդի իրական շահերի բնույթից: Ամեն մի ծրագիր, որ չի համապատասխանելու այս պահանջներին, կկորցնի իր արժանիքը, կդառնա երկրի օբյեկտիվ պայմաններին անծանոթ ինտելիգենտական մարզանքների արդյունք»:

Ֆրազամոլության, «ծրագրացավի» դեմ ուղղելով իր խոսքը, թերթը կոչ էր անում.

«Շատ ավելի քի՛չ կաբինետային աշխատանք, շատ ավելի քի՛չ կանցելյարշչինա... Սրա հանդեպ՝ շա՛տ ավելի սերտ կապ մեր երկրի զանազան մասերի հետ, շա՛տ ավելի գիտակություն տեղական փորձին, շա՛տ ավելի կենդանի շինարար աշխատանք... Ահա թե ինչ է պահանջում մեր ավերված երկիրը, ահա թե ինչ է հարկավոր մեր բազմատանջ, երիցս բազմատանջ աշխատավորության տընտեսական բարեկեցությունը բարձրացնելու համար»:

Ֆրազամոլության դեմ մղվող պայքարում պարբերական մամուլի հիմնական կռվանը խոսքի ու գործի համապատասխանության լենինյան պահանջն էր: «Մեզ հարկավոր են... գործին կպչող ու գործի մեջ եփվող աշխատողներ,— գրում էր «Խորհրդային Հայաստան»-ը Ուժերի բաշխումը վերնագրով առաջնորդողում (1922, № 16), որն ամենայն հավանականությամբ պատկանում է Ա. Մյասնիկյանի գրչին:— Լավ կլիներ, եթե մենք մեկընդմիշտ ընտելանայինք այն մտքին, որ աշխատողը— ճոռոմաբանը կամ շարունակ խոսողը չէ... այլ իր ճառի հետ միաժամանակ գործ անողն է»: Միմիայն գործով, «անմիջական, չոր ու սև աշխատանքով» մենք կհասնենք մեր հանրապետության տնտեսական վիճակի, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, կկարողանանք «նորմալ դրության հասցնել նրա ողջ կարգն ու սարքը»: Ուստի և, եզրակացնում էր թերթը, կյանքի բոլոր ասպարեզներում մենք պիտի ջանանք «տարբերել իրարից՝ պոռոտախոսին ու գործնական մարդուն, պետք է, որ մենք զատենք իսկական, կյանքի, իրական մարտնչողին ու աշխատողին՝ խոսքի, բառի ու սոսկ մտքի, ծեծված, ծանծաղ մտքի սպասավորներից»:

Գործնականության, խոսքի ու գործի համապատասխանության պահանջը փորձաքար էր համարվում ո՛չ միայն գեղեցիկ ֆրազներ արտասանողի, այլև նրա համար, ով «թունդ կերպով քննադատում է մեր այս կամ այն քայլը, շինարարությունը». եթե քննադատողը լավ ու նվիրված աշխատող չէ իրեն հատկացված բնագավառում, նրա խոսքը ևս, անկախ իր գեղեցիկ պաճուճանքներից ու արտաքին չքմեղությունից, կհնչի իբրև սնամեջ ֆրազ և նույնքան անպտուղ ու վնասակար կլինի, որքան այն մարդու խոսքը, որն զբաղված է «մեզ փառաբանելով», «մեծ-մեծ ծրագրերից» շաղակրատելով՝ առանց իր աշխատանքով մի քար, մի աղյուս ավելացնելու մեր ընդհանուր առաջընթացին: «Մեզ պետք են գործնական, պատասխանատու մարդիկ»,— եզրակացնում էր թերթը:

Ֆրազամոլության դեմ՝ հանուն կոնկրետ ու

գործնական աշխատանքի՝ մեծ կրքով հանդես էր գալիս Ալ. Մյասնիկյանը. նրա հոդվածներն ու ելույթները սովետահայ մամուլում և խմբագրություններին ցույց տված օգնությունը՝ կարևոր դեր խաղացին մամուլի օրգաններում գործնականության սկզբունքներն արմատավորելու տեսակետից։ Գործնականությունն էր կուսակցական ու պետական այդ ականավոր գործչի հրապարակախոսության ամենաբնորոշ կողմերից մեկը։

Կոմունիստական ագիտացիայի գործնականության, խոսքի ու գործի համապատասխանությանը Ալ. Մյասնիկյանը հանգամանորեն անդրադարձավ Կոմունիստների աշխատանքը Հայաստանում փայլուն հոդվածում (տե՛ս «Խ. Հ.» 1922, № 81), գրված Դ. Դղնունու Քաղաքական լուսավորության մասին ընդարձակ ելույթի առթիվ (տե՛ս «Խ. Հ.», 1922, №№ 74, 75)։ Սուր կերպով դնելով «շոշափելի ագիտացիայի», խորհրդային Ռուսաստանի փորձը ստեղծագործաբար յուրացնելու խնդիրը, Ալ. Մյասնիկյանն ամենայն խստությամբ քննադատում էր ֆրազամոլներին, «ծրագրացավով» տառապողներին։

«Խուսափենք անդադար պլաններ, ծրագրեր կազմելուց. դա էլ է անօգուտ ու վնասակար... Խոսք չկա, առանց ծրագրերի գործ չի կարելի կատարել, բայց թույլ տվեք նկատել, որ շարունակ ծրագրելը, անվերջ պլանները իրենց հերթին ոչ մի գործ գլուխ չեն բերում»։ Մի խոսքով,— *եզրակացնում էր նա*,— ֆրազան մի կողմ, տվեք հիմքը, գործը, որ առանց *սոսկ* ցուցանակի կանի կրկնապատիկ, եռապատիկ ավելի, քան *սոսկ* խոսքը, հաճախ անըմբռնելի, փքուն, առանց բովանդակության...»։

*Ալ. Մյասնիկյանն այսպիսով ժխտում-մերժում էր թալմուդիզմը՝ հանուն մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման։*

«Հայաստանի աշխատավորության առաջապահ գունդը իր ձեռքում ունի այնպիսի մի անգնահատելի զենք, որպիսին *մարքսիզմն* է,— *ընդգծում էր նա*։— Իսկ մարքսիզմի հիմնական սկզբունքն ասում է, որ չկա մեկընդմիշտ տրված, ձևված ու չափված ֆորմա, դրույթ, որ իրա՝ մարքսիզմի հիմունքները պետք է իմանալ կիրառել յուրաքանչյուր շրջապատում, տվյալ պայմաններում և յուրաքանչյուր ժամանակ։ Եվ սխալվում է այն գործիչը, որ իրան համարելով մարքսիստ, տեղի-անտեղի հոլովում է մարքսիզմի լեքսիկոնից վերցրած բառեր՝ անկախ տեղից ու ժամանակից...»։

*Կոմունիստական կուսակցության, պարբերական մամուլի պայքարը ֆրազամոլության և քաղաքական շաղակրատության դեմ՝ հանուն սոցիալիստական շինարարության խնդիրների գործնական-ստեղծարար քննարկման, ստիճանաբար տալիս էր իր դրական արդյունքները։ 1922 թ. ամռանը տեղի էին ունենում կուսակցական գավառային կոնֆերանսներ։ Երբ ավարտվեցին Երևանի, Էջմիածնի, Ալեքսանդրապոլի, Նոր-Բայազետի կոնֆերանսները, «Խորհրդային Հայաստան»-ը հատուկ առաջնորդող հոդվածով անդրադառնալով նրանց արդյունքներին, ուրախությամբ արձանագրում էր այն փաստը*, «...որ կազմակերպությունները բավականաչափ հասունացել են, մարսել, յուրացրել կոմունիստական առողջ գործնական տակտիկան։ Կոնֆերանսներում չէր նկատվում ֆրազյորության և ոչ էլ ճառախոսության հիվանդություն, ընդհակառակը՝ կոնկրետ, գործնական տեսակետից էին մոտենում գավառական մեր ընկերները առաջադրված խնդիրներին և տեղական աշխատանքի հաջողության շահերի տեսակետից լուսաբանում կամ քննադատական խոսք ասում»։ «Մեր կուսակցական ընթացիկ աշխատանքի այս գործնականացումը,— *եզրակացնում էր թերթը*,— ամենից ուշագրավ և ամենից կարևոր այն հիմնական փաստն է, որ կուսակցության հասունությունը և ուժը հոյակապ կերպով ցուցահանում է» («Խ. Հ.», 1922, № 138)։

*Ինչպես սովետական իշխանության առաջին տարիներին, մեր օրերում էլ մամուլը մնում է, հետայսու ևս կլինի գաղափարական մեր ամենաբանուկ զենքը, որից միշտ էլ պահանջվել և պահանջվում է պայքար ֆրազամոլության դեմ, խոսքի ու գործի սերտ միասնություն, համապատասխանություն, թերությունների ձաղկում, նորի, առաջավորի դրվատում, նվաճումների, հաջողությունների լայն պրոպագանդում։*

ՖԵԼԵՔՅԱՆ Հ. Հ.

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ԴՊՐՈՑԸ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ

**ՀԿԿ Կենտկոմի 1968 թ. փետրվարյան պլենումը քննության առավ հանրակրթական դպրոցներում ուսումնա-դաստիարակչական գործի բարելավման հարցը։ Անցած ութ ամիսներում ինչպես հանրապետական, նույնպես և շրջանային մամուլը անմիջականորեն արձագանքեց պլենումի որոշումներին։ Շրջանային թերթերն այժմ ավելի հաճախ և առավել համակողմանի են լուսաբանում մատաղ սերնդի ուսուցման ու դաստիարակության հարցերը։**

**Ստորև հրապարակում ենք 1968 թ. «Ծաղկունք», «Լոռի» և «Արտաշատ» թերթերի ութ ամսվա համարներում զետեղված հոդվածների տեսությունը։**

ԾԱՂԿՈՒՆՔ
«ЦАХКУНК»

*Դպրոցն այն դարբնոցն է, ուր ձևավորվում ու կոփվում է ապագա մարդը. այստեղ են պատանիներն ու աղջիկները զինվում գիտելիքներով, նախապատրաստվում ինքնուրույն կյանքի, ըստանում աշխատանքային դաստիարակություն, կողմնորոշվում՝ ինչպիսի մասնագիտություն ընտրել, այստեղ է զարգանում նրանց գեղագիտական ճաշակը։*

*Մեր մամուլը, հանրապետական, շրջանային թերթերը մեծ աներքներ ունեն մատաղ սերնդի դաստիարակության այդ ամենահիմնական ու կարևոր օջախի դրական, լավագույն փորձի պրոպագանդման, ցավոտ հարցերի վերհանման ուղղությամբ։*

*Պատանիների ու աղջիկների՝ երազներով լի այդ եակների կյանքի ճանապարհը ցույց տալու, դաստիարակելու է կոչված ողջ հասարակությունը։ Այս իմաստով հետաքրքրական է Ապարանի ՀԿԿ շրջանային կոմիտեի և աշխատավորների դեպուտատների շրջսովետի «Ծաղկունք» թերթի գործունեությունը։ Հենարան ունենալով դպրոցը, շեշտը դնելով ուսումնա-արտադրական հարցերի, կուսակցական, կոմերիտական, պիոներական կազմակերպությունների, ինչպես և արտադրական խմբակների վրա՝ «Ծաղկունքը» ջանում է դաստիարակչական աշխատանքը շաղկապել կյանքի հետ։*

*Խորամուխ լինելով մեր բարդ ու փոթորկալի կյանքի մեջ, նա այսօրվա շունչ է հաղորդում իր հոդվածներին, ակնարկներին, ինֆորմացիաներին՝ ողջ թեմատիկային, դրանով իսկ մեծապես նպաստում պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակությանը։ Վեհ գաղափարներով են տոգորված թերթի գրեթե բոլոր հոդվածները։ Նրա հիմնական թեմատիկան, մի կողմից՝ ինտերնացիոնալիզմի խոր զգացմունքն ու հայրենասիրությունն է, քաղաքացիականությունը, մյուս կողմից՝ աշխատանքային ընդհանուր ոգևորության համապատկերի վրա՝ ժամանակակից մարդու խոհերն ու ապրումները։ Այս ակունքից են սերվում նրա հերոսները և, պատահական չէ, որ ունեն աներեր, կայուն բնավորություն, կարողանում են հաղթահարել ան-*

են աշակերտների կոմունիստական դաստիարակությանը, բարձրացնում նրանց գեղագիտական ճաշակը։ Կոմերիտական կազմակերպության ջանքերով կազմակերպվել են լեկտորիումներ, բանավեճեր, հարց ու պատասխանի երեկոներ։

Մեր օրերում կարևորագույն նշանակություն ունի պատանիներին ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելը։ Այս հանգամանքը ևս չի վրիպել թերթի ուշադրությունից. ահա Ս. Իվանիչի՝ Որպեսզի ուսման որակն ավելի բարձր լինի (№ 27) հոդվածը։ Լորուտի միջնակարգ դպրոցում հաճախ հանդիպումներ են կազմակերպվում Հայրենական մեծ պատերազմի, քաղաքացիական կռիվների մասնակիցների, հին բոլշևիկների հետ։

Սայաթ-Նովայի անվան դպրոցի ուսմասվար Ա. Հարությունյանը հիացմունքով է գրում իրենց դպրոցի ռուսաց լեզվի ուսուցչուհի Վալենտինա Տիտարենկոյի մասին (Մի ազնիվ նվիրումով, № 72)։ Առաջին օրերին նա մեծ դժվարությունների հանդիպեց։ Աշակերտները նրան չէին հասկանում, նա՝ աշակերտներին։ Շուտով Տիտարենկոն «գտավ իր աշակերտների հոգու բանալին, և բոլորը սիրեցին նրան»։ Նրա ջանքերը զուր չանցան։ Քննությունների ժամանակ նրա աշակերտների մեծ մասն ստացավ բարձր գնահատական։ Ինքը ևս մեկ տարվա ընթացքում սովորեց և խոսում է հայերեն։

Թերթում արտացոլվում են նաև դպրոցում կատարված ստուգումների արդյունքները։ Երկու դպրոց, երկու դաս հոդվածում (№ 112) Գ. Արգարյանը պատմում է, թե ինչպես է հասարակագիտության առարկան դասավանդվում Շնողի և Ախթալայի միջնակարգ դպրոցներում։ Նա գոհ է Շնողի դպրոցի X դասարանցիների պատասխաններից (ուսուցիչ Հ. Կարապետյան)։ Մինչդեռ Ախթալայի դպրոցի ուսուցչուհի Ա. Պյադշևայի դասը հետաքրքրազուրկ է, որովհետև նա կառչում է կոնսպեկտից, իսկ աշակերտները՝ գրքից։ Ուսուցչուհու կցկտուր պատասխանները չեն բավարարում աշակերտներին։

Առաջավոր փորձի փոխանակման լավ ձև է ամեն տարի կազմակերպվող մանկավարժական ընթերցումները (Ուսուցիչները փոխանակում են առաջավոր փորձը, № 45), ուր զեկուցումներով հանդես են գալիս տարբեր առարկաների ուսուցիչները։

Ժողկրթբաժինը հաճախ կազմակերպում է ծնողների հավաքներ։ Հավաքներում զեկուցումներ են կարդում ժողկրթբաժնի աշխատողները։ Այդ հավաքների մասին ևս հետաքրքրական հաղորդումներ է տպագրում թերթը, ուր հանդիպում ենք նաև ծնողական կոմիտեի անդամների թղթակցություններին՝ նվիրված դաստիարակության այս կամ այն հարցին։

Հետաքրքրական է Թումանյանի բանավանի միջնակարգ դպրոցի ուսուցիչ Վ. Քոչարյանի Դաստիարակության մի քանի հարցերի մասին հոդվածը (№ 67)։ Նրան անհանգստացնում է նաև տղաների ու աղջիկների դաստիարակության գործում նկատվող ծնողների որոշ հին, նահապետական մոտեցումը։ Աղջիկներին ծանրաբեռնել տնային բոլոր տեսակի աշխատանքներով, տղաների համար ապահովելով արտոնյալ վիճակ։ Այդպես էլ նրանք դաստիարակվում, կյանք են մտնում. թերևս դրա արդյունք է, որ մեր կոլտնտեսություններում և սովխոզներում դաշտային ծանր աշխատանքները հաճախ մեծ մասամբ կատարում են կանայք, իսկ տղամարդիկ գրավում են բրիգադավարների, գրասենյակային աշխատողների տեղեր։

Ընթերցող աշակերտության հետ իր կապերն ավելի սերտ դարձնելու նպատակով թերթը կազմակերպել է հարցազրույց՝ նրանց նպատակների, ապագա անելիքների մասին և հրապարակել դրանց պատասխանները։

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք




Դպրոցական կյանքի լուսաբանմանը պատշաճ տեղ է հատկացվում «Արտաշատ» շրջանային թերթի էջերում։ Հաճախակի նյութեր են տպագրվում ուսումնա-դաստիարակչական աշխատանքի տարբեր հարցերի վերաբերյալ։ Այսպես, Արևշատի միջնակարգ դպրոցի դիրեկտորի տեղակալ Ջ. Նիկողոսյանի ելույթը՝ նվիրված է ուսումնական պրոցեսի կազմակերպմանը։ Խոսելով այդ ուղղությամբ դպրոցում ձեռնարկված միջոցների մասին, նա, հատկապես, ընդգծում է, որ աշակերտների արտադպրոցական և արտադասարանային ժամանակի նպատակային օգտագործումն ունի դաստիարակչական մեծ նշանակություն։

Ուշագրավ է Երաժշտությունը դպրոցում հոդվածը (№ 44)։ Այգեզարդի դպրոցի երգ-երաժշտության ուսուցիչ Ա. Կոստանյանը գտնում է, որ պետք է ցածր դասարաններից նպաստել աշակերտների երաժշտական հակման զարգացմանը, այդ նպատակով ծանոթացնել նոտաներին, ուսուցանել երգեցողության ճիշտ կանոնները, կազմակերպել երգչախմբեր, որոնք «երգեցողության և երաժշտական լսողության զարգացման հիմքն են»։

Թերթը ուշադրություն է նվիրում նաև դպրոցի կոմերիտական, պիոներական կազմակերպությունների գործունեությանը, այն համարելով դպրոցական կյանքի կարևոր օղակներից



մեկը։ Աշխատել պարտքի զգացումով հոդվածում (№ 20) բացահայտված են Մխչյանի միջնակարգ դպրոցի ԼԿԵՄ աշխատանքում տեղ գտած թերությունները։ Բերված փաստերը վկայում են, որ անցած ուսումնական տարում ցածր էր կոմերիտականների առաջադիմությունը։ Այս հանգամանքը քիչ է անհանգստացրել դպրոցի կոմերիտական կազմակերպությանը, մինչդեռ նրա շարքերում կան կոմերիտական ուսուցիչներ, որոնց ավանդած առարկաներից անբավարար գնահատական ստացող աշակերտների թիվը մեծ է։ Հեղինակն իրավամբ նշում է, որ ԼԿԵՄ կազմակերպության գործունեությունը միակողմանի է, ԼԿԵՄ բյուրոն սահմանափակվել է միայն զանազան հավաքույթներ, երեկոներ կազմակերպելով, մինչդեռ նրա առաջնահերթ խնդիրն է հասնել այն բանին, որ ամեն մի կոմերիտական օրինակելի լինի ոչ միայն իր բարոյական հատկանիշներով, այլև ունենա կայուն, խոր գիտելիքներ։

«Արտաշատ»-ի 56-րդ համարում մի ամբողջ էջ է նվիրված շրջանի պիոներական կազմակերպությունների առօրյայի պատկերմանը։ Շրջանային պիոներական տան վարիչ Ֆ. Բագրատյանը պատմում է առանձին դպրոցներում անցկացվող այն միջոցառումների մասին, որոնք նպաստում են պատանի լենինյանների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությանը. տեղեկանում ենք, որ շրջանի շատ դպրոցների պիոներներ բարեկամական կապեր են հաստատել ո՛չ միայն Միության, այլև աշխարհի շատ երկրների՝ իրենց հասակակից երեխաների հետ։ Իսկ նույն էջի Բարեկամության երեկո հոդվածում նկարագրվում է սփյուռքահայ և վիետնամցի երիտասարդների ջերմ հանդիպումը Այգեզարդի պիոներ-դպրոցականների հետ։ Մի այլ հաղորդումից իմանում ենք, որ Արտաշատ քաղաքի № 3 դպրոցի պիոներներն իրենց նախաձեռնությամբ ստեղծել են գավառագիտական թանգարան, որտեղ կան ցուցանմուշների ուշագրավ հավաքածուներ։

Ուսուցիչը գյուղական մտավորականության ներկայացուցիչն է։ Ո՛չ միայն մանկավարժ, այլև հասարակական գործիչ է նա։ Ահա թե ինչու թերթը երբեմն էլ անդրադառնում է առանձին ուսուցիչների արտադպրոցական գործունեությանը։ Այսպիսի մի ուսուցչի՝ Մխչյանի միջնակարգ դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ Վ. Բունիաթյանի մասին է գրում Լ. Ասլանյանը թերթի 14-րդ համարում։ Ո՛չ միայն հմուտ մանկավարժ, այլև տասնյակ տարիների պրոպագանդիստ է նա. բովանդակալից զեկուցումներով հանդես է գալիս շրջանի աշխատավորության առջև, գոհացուցիչ պատասխաններ տալիս ունկնդիրներին հուզող հարցերին։

Թերթը հրապարակել է ժողկրթության բնագավառի աշխատողների սոցիալիստական պարտավորությունները և հաջորդ համարներում անդրադարձել դրանց կատարման ընթացքին, ահազանգել, որ առանձին դպրոցներ վատ են նախապատրաստվել նոր ուսումնական տարվան։

Հետաքրքրությամբ է ընթերցվում Հ. Բեջանյանի Խոհեր, մտորումներ հոդվածը (№ 65), ուր հակիրճ վերլուծված է Արևշատի միջնակարգ դպրոցի X դասարանի ավարտական քննությունների ընթացքը։ Հոդվածագիրը նկատում է, որ որոշ դեպքերում աշակերտների գիտելիքները գնահատելիս ուսուցիչները ցուցաբերում են անհարկի բարեհոգություն՝ արհեստականորեն բարձրացնելով աշակերտների գնահատականը։

Ուրախալի է, որ թերթի խմբագրությունը ձգտում է բազմակողմանի լուսաբանել դպրոցական կյանքը, այդ նպատակով օգտագործում է նաև ինֆորմացիան, պարբերաբար հաղորդումներ զետեղում շրջանի դպրոցներում անցկացվող ուշագրավ միջոցառումների մասին։

Ուսումնա-դաստիարակչական աշխատանքը համարելով նաև ընտանիքի, հասարակական մյուս կազմակերպությունների կարևոր խնդիրը, թերթը հաճախ անդրադառնում է առողջ սերնդի ընտանեկան դաստիարակության հարցի լուսաբանմանը, տպագրելով հոդվածներ բարոյական թեմաներով։ Այսպես, Ծնողը զավակի վատը չի ցանկանա ընդարձակ հոդվածում բացահայտված են անչափահաս երեխաների մոտ նկատվող հակահասարակական արարքների պատճառները։ Շրջանի կյանքից վերցված կոնկրետ փաստերի համոզիչ վերլուծությամբ շրջանային դատախազության քննիչ Ռ. Գրիգորյանը հանգում է այն ճիշտ հետևության, որ անչափահասի վատ արարքը, արատավոր վարքագիծը «ծնողների կողմից իրենց երեխաների դաստիարակության գործում թույլ տված մի շարք վրիպումների ու սխալների հետևանք են» (№ 4)։

Թերթի էջերում զետեղվում են և շրջանի լավագույն մարդկանց, բոլշևիկների, Հայրենական պատերազմի հերոսների, աշխատանքի վետերանների կյանքն ու գործն արտացոլող ակնարկներ, որոնք դաստիարակչական նշանակություն ունեն բոլոր տարիքի մարդկանց համար։ Միաժամանակ զայրույթով թերթը դատապարտում է այն ծնողների հանցավոր վարքագիծը, որոնց պատճառով խաթարվում է դպրոցահասակ երեխայի մտավոր ու ֆիզիկական զարգացումը։ Նման տխուր պատմություն է բովանդակում Աղջկա պատիվը... 500 ռուբլով հոդվածը (№5)։

Ցանկալի է, որ «Արտաշատ» թերթի խմբագրությունն այսուհետև ևս շարունակի բազմակողմանի լուսաբանել հասարակական կյանքի

այս կարևոր բնագավառի՝ դպրոցի հարուստ ու բազմաբովանդակ առօրյան, շոշափելն ուսուցման ու դաստիարակության հետ կապված հուզող պրոբլեմներ. անհրաժեշտ է վերհանել սակավ լուսաբանվող այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ դպրոցի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, լավագույն մանկավարժների աշխատանքային փորձը։

Շրջանային թերթի կարևոր խնդիրներից են աշակերտների աշխատանքային դաստիարակության ըստ ամենայնի լուսաբանումը, դըպրոցի շրջանավարտներին արտադրության մեջ ներգրավելու հետ կապված հարցերի արծարծումը, ցույց տրվի, թե ի՛նչ է արվում դպրոցներում, որպեսզի աշակերտը սիրի ֆիզիկական աշխատանքը, հարգի ու մեծարի բերք ու բարիք պարգևող մարդուն, ինքը ևս պատրաստվի այդպիսին դառնալու։

Հուսանք, որ մեր շրջանային թերթերը պատշաճ ուշադրություն նվիրելով դպրոցական կյանքին, այսուհետև ավելի բազմակողմանի կարտացոլեն այն, ավելի հանգամանորեն կանդրադառնան ուսումնա-արտադրական հարցերին. հաճախակի իրենց էջերը տրամադրելով այս կամ այն մասնագետի գործարար խորհուրդներին, կնպաստեն դպրոցականների մասնագիտական կողմնորոշմանը, այդպիսով օգնելով դպրոցին՝ նախապատրաստելու պատանիներին ու աղջիկներին կյանք մտնելու, մասնակցելու մեր երկրի կոմունիստական շինարարության ընթացքին։

ԽՈՒԴՈՅԱՆ Լ. Ս.
ԱՍԱՏՐՅԱՆ Ջ. Մ.
ՅԱՎՐՅԱՆ Ա. Գ.

---

## ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի 9-րդ համարի 62-րդ էջի ներքևից 3-րդ տողում պետք է կարդալ «...հանրապետության կոմունիստների 27, իսկ Երևանի կազմակերպությունում՝ 39,6 տոկոսը...», 65-րդ էջի վերևից առաջին տողում՝ «...կուսկազմակերպությունների 1/3-ը...», 107-րդ էջի առաջին սյունակի վերևից 2-րդ տողում՝ «Շուշանիկ Կուրղինյանից առաջ շատ...», նույն էջի երկրորդ սյունակի ներքևից 7-րդ տողում՝ «...հիմնադրի կարսավարը...», 108-րդ էջի առաջին սյունակի վերևից 10-րդ տողում՝ «...վրանների տակ դարսված ծխախոտի հակերի...», 109-րդ էջի առաջին սյունակի վերևից 12-րդ տողում՝ «կին՝ Ալեքսանդրա Ջաղուրինան...», նույն սյունակի վերևից 27-րդ տողում՝ «կաբինետների, ողջ բուժկայանի...», նույն էջի երկրորդ սյունակի վերևից 2-րդ տողում՝ «...տնտեսելով ազատ ժամանակը», նույն սյունակի ներքևից 30-րդ տողում՝ «...բուժկայանի 8 կետանոց...» ու այնուհետև ինչպես տեքստում։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԴԱԲԻՐՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ. պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 11/XII— 1968 թ.։

ՎՖ 05892 Պատվեր 548 Թղթի չափսը՝ 70×108/16 Տպաքանակ 10.900 Գինը 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փողոց № 28։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ. և ԼԵՆԻՆ Վ. Ի.*— Դիալեկտիկական մատերիալիզմի մասին, *Մ., քաղհրատ, 1968, 431 էջ։*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.*— Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ, *Երևան, «Հայաստան» հրատ., 1968 217 էջ։*

Բոլշևիկյան կուսակցության ստրատեգիայի և տակտիկայի մի քանի հարցեր Հոկտեմբերյան հեղափոխության մեջ, *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 444 էջ։*

*ՍՈԲՈԼԵՎԱ Պ. Ի.*— Հոկտեմբերյան հեղափոխությունը և սոցիալ-համաձայնողականների կործանումը, *Մ., Մոսկվայի համալսարանի հրատ., 1968, 351 էջ։*

ՍՄԿԿ կոմունիզմի կառուցման ծրագրի իրագործման համար մղած պայքարում։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 292 էջ։*

*ԱՇԱՆԻՆ Վ. ՅԱ.*— Կուսակցության լենինյան գաղափարական և կազմակերպչական հիմքերը, կուսակցական կյանքի նորմերը, կուսակցական ղեկավարության սկզբունքները, «Мысль» *հրատ., 1968, 95 էջ։*

Կուսակցական-կազմակերպչական աշխատանքների հիմունքները, *Գորկի, 1968, 367 էջ։*

Կուսակցական-քաղաքական աշխատանքը սովետական զինված ուժերում, *Մ., Զինհրատ., 1968, 350 էջ։*

*ՌՈՒԲԱՆ Ն. Վ.*— Հոկտեմբերյան հեղափոխությունը և մենշևիզմի կրախը։ (1917 մարտ—1918 թթ.), *Մ., քաղհրատ, 1968, 400 էջ։*

*ԻԼԻՆ Մ. Ա. և ՌԱԲԻՆՈՎԻՉ Մ. Ա.*— Կապիտալիզմի քաղաքատնտեսությունը հարցերով և պատասխաններով, *Մ., Քաղհրատ, 1968, 224 էջ։*

Միջին Ասիայի հանրապետություններում սոցիալիզմի կառուցման պատմական փորձը, *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 343 էջ։*

*ԳՐՈՄԻԿՈ Ա. Ա.*— Պրեզիդենտ Քենեդիի 1036 օրերը (Արևմուտքը մեր օրերում), *Մ., քաղհրատ, 1968, 279 էջ։*

Քրեստոմատիա քաղաքական հիմունքների պարապմունքների։ *Կուսակցական ուսուցման սիստեմի սկզբնական քաղդպրոցների պարապողների համար, Մ., 1968, 432 էջ։*

Պատանեկություն իմ՝ կոմերիտմիություն։ *Երկու հատորով, հրատ. I, Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1968, 304 էջ։*

ՍՍՀՄ բանվոր դասակարգի պատմությունից։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 199 էջ։*

Աթեիստի սեղանի գիրքը։ *Մ., քաղհրատ, 1968, 512 էջ։*

*ՄԵՐԵՑԿՈՎ Կ. Ա.*— Հանուն ժողովրդի ծառայության (հուշեր), *Մ., քաղհրատ, 1968, 464 էջ։*

*ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ Ջ. Գ.*— Կարլ Մարքս։ *Կյանքը և գործը։ Եր., «Հայաստան» հրատ., 1968, 273 էջ։*

*ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ.*— Ստեփան Շահումյան։ *Կյանքի և գործունեության վավերագրական տարեգրությունը (1878—1918)։ Ա. Ի. Միկոյանի առաջաբանով, Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 637 էջ։*

*ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ Վ. Հ.*—Տիեզերքի էվոլյուցիայի պրոբլեմները։ *Եր., ԳԱ հրատ., 1968, 293 էջ։*

*ՖՈՅԵՐԲԱԽ ԼՅՈՒԴՎԻԳ*— Քրիստոնեության էությունը։ *Եր., «Հայաստան» հրատ., 1968, 532 էջ։*

Ռազմաճակատային հուշեր։ *Եր., «Հայաստան» հրատ., 1968, 218 էջ։*

*ԾՈՎՅԱՆ* (ԽԵՐԱՆՅԱՆ) Վ. Կ.— Այն տարիներին։ *(Մարդիկ, միայն մարդիկ)։ Եր., «Հայաստան» հրատ., 1968, 159 էջ։*

---

ԳԻՆԸ 25 Կ.

77783

### ՈՒԼՏՐԱՁԱՅՆԱՅԻՆ ՇՉԱԿ ՄՇՈՒՇԻ ՑՐՄԱՆ ՀԱՄԱՐ

Օդանավակայաններում, նավերի երթուղիներում մշուշապատության դեմ պայքարելու համար դյուրին ու շահավետ միջոց են առաջարկում լեհական ինժեներները: Վաղուց հայտնի է, որ ուլտրաձայնային տատանումները հեղուկի գոլորշին խտացնելու հատկություն ունեն: Այդ նպատակով ուլտրաձայնի կիրառումը դժվարանում է նրանով, որ բաց տարածության մեջ անհրաժեշտ ամպլիտուդայի և երկարության տատանումներ ստեղծելու համար հարկավոր են մեծ հզորության ճառագայթիչներ:

Լեհական կոնստրուկտորները ստեղծել են «ուլտրաձայնային շչակ»: Քսան կիլոգրամանոց այդ սարքը ցրում է խիտ մշուշը 300—400 մետր տարածության վրա:

### ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ԱՐԱԳՈՒԹՅՈՒՆ

Մինչև վերջին ժամանակներս ակումուլյատորային ավտոմեքենաները համարվում էին դանդաղընթաց: Այժմ դրանք կարող են ժամում անցնել 90—100 կիլոմետր ճանապարհ: Բայց երևի հեռու չէ այն օրը, երբ էլեկտրամեքենաները դուրս կգան երթուղի մրցարշավային ավտոկայանից: «Սիտդուրի» ճապոնական ընկերությունն ստեղծել է ավտոմեքենա՝ նոր տիպի էլեկտրաշարժիչով: Գյուտարարների վկայությամբ շարժիչը կարող է զարգացնել 750 կմ/ժամ արագություն:

### ՍԱԼԱՔԱՐՆ ԱՎԵԼԻ ԼԱՎ Է

Տեխնիկական առաջադիմության վկայություն է համարվում ասֆալտե խճուղին, իսկ սալահատակվածը՝ հետադիմության: Բայց հոլանդական ճանապարհաշինարար ինժեներները համաձայն չեն այդ մտքին: Նրանք գտնում են, որ ապագան պատկանում է ոչ թե ասֆալտին, այլ սալաքարին, ավելի ճիշտ՝ չորսուպատ սալարկին՝ ոչ մեծ «բետոնաքարերից»: Այդպիսի ճանապարհը չի փչանում ավտոմեքենայի յուղից ու բենզինից, ինչպես ասֆալտը, այն կառուցելը հեշտ է ու էժան: Բացի այդ, նոր ճանապարհը նաև անվտանգ է, որովհետև ասֆալտի համեմատ, անվադողերի շփումը բետոնե բլոկների հետ շատ է: Այժմ Հոլանդիայում կառուցվել է 2500 կիլոմետր այդպիսի ավտոճանապարհ:

### ՏՆԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒՀԻՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Խոհանոցում տնային տնտեսուհիների համար իդեալական պայմաններ ստեղծելու, մաքրության, վայելչության համար չեխոսլովակյան կոնստրուկտորները խոհանոցային սարքավորումը պատրաստել են էմալապատ մետաղից: Նման խոհանոցը ջերմակայուն է, հեշտ է լվանալը և մաքրելը: Սարքավորումը էմալապատ սառնարանի կամ էլեկտրական պլիտայի հետ կազմում են մի ներդաշնակ անսամբըլ:

### ՄԱՔՐՎԱԾ ՍՊԻՏԱԿԵՂԵՆԸ ՏԵՍԱԿԱՎՈՐՈՒՄ Է ՄԵՔԵՆԱՆ

Ըստ պատկանելության սպիտակեղենի տեսակավորման պրոցեսը մաքրման ֆաբրիկայում երկար ժամանակ դժվարլուծելի էր: Միայն վերջերս գտնվեց ելքը. հալոցքային արտադրության նախագծային-կոնստրուկտորական համամիութենական ինստիտուտում ստեղծվեց կոմպլեքս սարքավորում, որը հնարավորություն ընձեռեց մեքենայացնել և ավտոմատացնել սպիտակեղենի մշակման բոլոր աշխատատար պրոցեսները: Այդ նպատակին են ծառայում ПК—69 մակնիշի ագրեգատը և ПК 60—1 կիսաավտոմատը:

### ԱՅՐՎԱԾՔՆԵՐԻ ԲՈՒԺՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

Ջանալով փրկել ածխաթթու գազով խիստ թունավորված մի հանքափորի կյանք, Կալիֆոռնիայի համալսարանի մի խումբ գիտնականներ փորձարկեցին բուժման նոր եղանակ: Հիվանդին տեղավորեցին բարձր ճնշմամբ թթվածնով հագեցած կոմպրեսիոնային խցիկում: Պատահականորեն նկատեցին, որ այդ մեթոդը պակաս արդյունավետ չէ ծանր այրվածքներ բուժելու համար, որ միաժամանակ ստացել էր այդ հանքափորը:

Գիտնականները ենթադրում են, որ ավելցուկ թթվածինը արգելակում է մաշկի հյուսվածքների քայքայումը: Քիմիական այդ տարրի պատճառով և կասեցնում վնասակար բակտերիաների բազմացումը:

(ԱՄՆ)